

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 · 1978

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անգրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքներ, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ՝ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՖԵԴԵՐԱՏԻՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցի ընթացքում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատանքին և այդ քաղաքականապես կարևոր այցի արդյունքներին: Եվրոպական ու միջազգային պրոբլեմների լայն շրջանակի և երկկողմ հարաբերությունների հարցերի շուրջը ԳՖՀ-ի պետական ու հասարակական ղեկավար գործիչների հետ վարված բանակցությունները, Լ. Ի. Բրեժնևի այցի շնորհիվ ընդունված փաստաթղթերը խոշոր քայլ են լարվածության թուլացման, բարիդրացիության և խաղաղության ամրապնդման գործի առաջընթացում:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը վստահություն են հայտնում, որ համատեղ դեկլարացիան և էկոնոմիկայի ու արդյունաբերության բնագավառում ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի երկարաժամկետ համագործակցության զարգացման ու խորացման համաձայնագիրը ավելի մեծ կայունություն և ավելի մեծ թափ կտան Սովետական Միության և Ֆեդերատիվ Հանրապետության հարաբերություններին և որ դրանց շնորհիվ կամրապնդվեն ու կխորացվեն այն դրական պրոցեսները, որոնք սկսվել են միջազգային հարաբերություններում, հատկապես ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև 1970 թվականի օգոստոսի 12-ի պայմանագրի կնքման շնորհիվ: Այդ պայմանագիրը պահպանում է իր ամբողջ հիմնարար նշանակությունը երկու պետությունների հարաբերությունների համար, եղել է և մնում է լարվածության թուլացումն ապահովելու, Եվրոպայի անվտանգությունն ամրապնդելու որոշիչ գործոններից մեկը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը գոհունակությամբ նշում են, որ այցի ընթացքում հաստատվեց և փաստականորեն վավերագրվեց այն բանի երկուստեք ըմբռնումը, որ խաղաղությունը այն մեծագույն արժեքն է, դեպի որը պետք է կողմնորոշված լինեն երկու պետությունների քաղաքական գործողությունները, ինչպես նաև մյուս պետությունների ջանքերը:

Այցի ժամանակ կատարված բեղմնավոր աշխատանքը ուղղված էր մի նպատակի՝ բոլոր ամենայնի աջակցել այն կոնկրետ, արդյունավետ ջանքերին, որոնք ինչպես միակողմանի և երկկողմանի, այնպես էլ բազմակողմանի կարգով պետք է ձեռնարկվեն լարվածության թուլացման պրոցեսը խորացնելու համար Հելսինկիի խորհրդակցության եզրափակիչ ակտին լիովին համապա-

տասխան, այն բանի համար, որ բոլոր հնարավորություններն ու միջոցները օգտագործվեն դադարեցնելու ինչպես միջուկային, այնպես էլ սովորական սպառազինությունների մրցավազքը, սահմանափակելու սպառազինությունները, իրականացնելու զինաթափման կոնկրետ միջոցառումներ: Այդ բնագավառում ռեալ տեղաշարժի հասնելը կհամապատասխաներ բոլոր ժողովուրդների կենսական շահերին:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը կարևոր նշանակություն են տալիս Լ. Ի. Բրեժնևի այցի արդյունքներին տնտեսական ոլորտում: Ստորագրված փաստաթղթերի հիման վրա ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև առևտրական, արդյունաբերական, տեխնիկական՝ համագործակցության ընդլայնումը էականորեն կամրապնդի լարվածության թուլացման նյութական հիմքը, կնպաստի բարիդրացիական կապերի սիստեմատիկ հաստատուն և փոխշահավետ ուժեղացմանը՝ հօգուտ ժողովուրդների, ի բարօրություն երկու երկրների աշխատավորների: Սովետական համապատասխան կազմակերպությունները պետք է իրենցից կախված ամեն բան անեն, որպեսզի փոխշահավետ համաձայնագիրը լցնեն կոնկրետ բովանդակությամբ, ճշտորեն, ժամանակին և նախաձեռնողաբար կատարեն պարտավորությունները, ձգտելով հասնել ապրանքաշրջանառության զգալի ավելացման և համատեղ խոշոր մասշտաբի նախագծերի իրականացման: Իհարկե, այստեղ դրական արդյունքների կարելի է հասնել, եթե նույն կերպ գործի նաև արևմտագերմանական կողմը:

Սովետական ղեկավարությունը, քննարկելով փոխըմբռնման, անկեղծության և անող վստահության ոգով անցած այցի արդյունքները, արտահայտում է իր հաստատուն կամքը՝ **այդ** ոգով գործելու նաև առաջիկայում, նպատակ ունենալով այսուհետև ևս բարձրացնել երկկողմ հարաբերությունների որակն ու մակարդակը, դրանք դարձնել Եվրոպայում և ամբողջությամբ վերցրած՝ միջազգային ասպարեզում կայունության ու բարիդրացիության գործոն:

Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցը միջազգային մասշտաբի խոշոր իրադարձություն էր, ևս մի նշանակալի ավանդ ՍՄԿԿ XXV համագումարի արտաքին քաղաքական կուրսի, մեր կուսակցության և պետության լենինյան խաղաղասիրական քաղաքականության իրականացման գործում: Նա մի էտապ է նշանավորում քաղաքական լարվածության թուլացումը զարգացնելու գործում, այն ռազմական բնագավառի վրա տարածելու նախադրյալների ստեղծման գործում: Խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման համար այցի արդյունքների մեջ ամփոփված բոլոր հնարավորությունների իրականացումը կպահանջի երկու կողմերի հետագա հաստատակամ ջանքերը:

Սովետական մարդիկ ջերմորեն պաշտպանում են Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարված այցի արդյունքները, բարձր են գնահատում այն հսկայական աշխատանքը, որ կատարել է Լ. Ի. Բրեժնևը այցի հաջողությունն ապահովելու համար: Այցը արժանացավ ամբողջ աշխարհի առաջադեմ, խաղաղասեր ուժերի հավանությանը և երախտագիտությանը:

---

# ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋՆԵՐԸ

*ՄԵՐ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԻՔԻ աշխատավորները, կենսագործելով հարազատ կուսակցության XXV համագումարի պատմական որոշումները, նորանոր հաջողությունների հասան տնտեսական ու սոցիալական զարգացման ասպարեզում:*

*Կուսակցության մշակած տնտեսական ստրատեգիան տոգորված է խոր ռեալիզմով, բազմակողմանիորեն հաշվի է առնում երկրի ընթացիկ կարիքներն ու պահանջմունքները, միաժամանակ ընդգրկելով գալիքի հեռանկարը, գիտականորեն սահմանում մեր արմատական, ծրագրային, սոցիալ-տնտեսական նպատակների իրականացման ուղիներն ու միջոցները:*

*Զարգացման արդի փուլում երկրի տնտեսական հզորության, ժողովրդի բարեկեցության հետագա անշեղ աճի գլխավոր ուղղությունն արտադրության արդյունավետության շեշտակի բարձրացումն է, աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավումը: «Մեր հայրենիքի այսօրվա կարևորագույն բնորոշ հատկանիշներից մեկը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVIII համագումարում արտասանած ճառում,— պայքարն է արդյունավետության և որակի համար: Դա ժամանակավոր կամպանիա չէ: Դա կուսակցության կուրսն է, որը, ինչպես ասվում է, վերցված է լրջորեն և երկար ժամանակի համար: Դա ոչ միայն ընթացիկ հնգամյակի հիմնական խնդիրն է, այլև մեր տնտեսական ու սոցիալական զարգացման որոշիչ գործոնը երկար տարիների ընդգրկումով: Դա, եթե ուզում եք, նաև սովետական մարդկանց մի ամբողջ սերնդի դաստիարակության ծրագիր է»:*

*Մեր երկրի առջև մեծ և բարդ խնդիրներ են դրված հնգամյակի ընթացիկ տարում: Մեր էկոնոմիկայի վիթխարի մասշտաբները, նրա անշեղ վերելքը պահանջում են մեքենաների ու սարքավորումների, հումքի ու նյութերի, աշխատանքային ռեսուրսների առավել լիակատար ու ռացիոնալ օգտագործում: Հրամայական խնդիր է՝ տնտեսվարել խելացիորեն, հաշվենկատ կերպով, բարեխղճորեն պահել փողի հաշիվը, խնայողություն անել մեծ ու փոքր գործերում, նպաստել գիտության ու տեխնիկայի առաջընթացին:*

*Մշտական հոգատարություն ցուցաբերելով արդյունաբերության, նրա բազային ճյուղերի՝ մետաղի, վառելիքի, էներգիայի, մեքենաների, քիմիական պրոդուկտների արտադրության աճի նկատմամբ, կուսակցությունը խնդիր է դնում առավել բարձրացնել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակն ու որակը, բարելավել արտադրակարողությունների օգտագործումը:*

*Երկրի ժողովրդական տնտեսությունն այսօր ապահովված է բնական հումքի բոլոր հիմնական պաշարներով, սակայն դրանք անսպառ չեն, այստեղ նույնպես պահանջվում է հոգատար վերաբերմունք: Անհրաժեշտ է հաշվի առնել նաև այն, որ տնտեսական նոր շրջաններում հումքային ճյուղերի առաջընթացը դժվարին է և բնակության համար դեռևս չյուրացված, որն զգալիորեն ավելացնում է ծախսերը: Հետևաբար, հույժ կենսական է հումքի մեկ միավորից վերջնական արտադրանքի ստացման աճը, վառելիքի կամ հանքաքարի յուրաքանչյուր տոննայի, շինանյութերի կամ շինափայտի ամեն մի խորանարդ մետրի լրիվ ու համակողմանի օգտագործումը: Հետևողական աշխատանք է տարվում*

նյութերի նոր տեսակների ստեղծման և արտադրության մեջ դրանց արմատավորման նպատակով:

Կենսագործելով կուսակցության ագրարային քաղաքականությունը, գյուղատնտեսության աշխատավորներն ակտիվորեն պայքարում են դաշտերի բերրիությունը և հողագործության կուլտուրան բարձրացնելու, հողատարածությունները, տեխնիկան, հանքային և օրգանական պարարտանյութերն ավելի լրիվ և ռացիոնալ օգտագործելու համար, սելեկցիայի և սերմնաբուծության զարգացման, արդյունավետ մելիորացիայի, բարձր ու կայուն բերք ստանալու համար:

Այսօր հրատապ է այն ճյուղերի արագ զարգացումը, որոնք ապահովում են գյուղատնտեսական մթերքների ժամանակին հավաքումը, փոխադրումը և վերամշակումը: Անհրաժեշտ է աճեցրած բերքն ամբողջությամբ հանձնել սպառողին: Անասնապահության բնագավառում գլխավոր ջանքերը նպատակամղված են դրա արդյունավետության բարձրացմանը՝ կերի կայուն բազա ստեղծելու, այն ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու միջոցով: Միաժամանակ հարկավոր է հետևողական աշխատանք կատարել՝ հաղթահարելու բնակչությանն անասնապահական մթերքներով, նախ և առաջ մսով ապահովելու գործում եղած դժվարությունները, ավելի լրիվ բավարարելու այդ մթերքների աճող պահանջմունքը: Երկրի էկոնոմիկայում գյուղատնտեսությունը բարձր զարգացած ճյուղ դարձնելու խնդրի հաջող լուծմանը վճռական գրավական է միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը խորացնելու՝ կուսակցության կուրսը:

Հասուն սոցիալիզմի զարգացման ներկա փուլը հնարավորություն է ընձեռում գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքն ավելի սերտորեն շաղկապելու աշխատանքի բնույթի մեջ խոր վերափոխումների իրականացման՝ դրա կոմպլեքսային մեքենայացմամբ, գյուղում կյանքի կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմամբ հանդերձ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի դեկտեմբերյան պլենումում հատկապես շեշտվեց, որ արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար պահանջվում է էապես բարելավել կապիտալ շինարարության գործերի վիճակը: Այստեղ գործունեության լայն ասպարեզ կա: Կուսակցությունը պահանջում է ճիշտ բաշխել կապիտալ ներդրումները, դրանք համակենտրոնացնել գլխավոր ուղղություններում, ժամանակին գործարկել նախագծված բոլոր օբյեկտները, կառույցներում բարելավել աշխատանքի կազմակերպումը: Անհրաժեշտ է, որպեսզի նախագծերը ժամանակին վերածվեն ռեալ մեքենաների, սարքավորումների, գործարանների և ֆաբրիկաների նոր մասնաշենքերի: Հույժ կարևոր է, որ նախագծային լուծումներն արտացոլեն գիտության ու տեխնիկայի վերջին խոսքը, որ պլանային, տնտեսական մարմինների աշխատողները, բոլոր նրանք, ումից կախված է գործի հաջողությունը, ոչինչ չխնայեն ոչ միայն արտադրության այսօրվա, այլև վաղվա բարձր զարգացման համար:

Ժողովրդատնտեսական պլանների իրականացման գործում առաջնակարգ նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, որը Լենինը համարում էր կոմունիզմի հաղթանակի վճռական պայմանը: Այստեղ գլխավոր ուղին գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումն է, անմիջական արտադրական ուժ դարձած գիտության նվաճումների առավել լրիվ օգտագործումը ժողովրդական տնտեսության մեջ: Մեր օրերում առանց գիտության անհնար է լուծել տնտեսական առանցքային պրոբլեմները: Կուսակցությունն ամեն կերպ նպաստում է սովետական գիտության առաջընթացին, գիտական կոլեկտիվների ջանքերը նպատակամղում հիմնարար և կիրառական գիտությունների հետագա զարգացմանը, արտադրության մեջ դրանց արդյունքների արագ արմատավորմանը:

Այժմ առանձնապես կարևորվում է արտադրապրոցեսների, արտադրամասերի և ձեռնարկությունների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման լիակատար իրականացումը, նոր տիպի մեքենաների և սարքավորում-



ների կատարելագործումը, յուրացումը և թողարկումը: Այս բոլորը որակապես փոխում է մարդու աշխատանքը, ապահովում ձեռքի աշխատանքի առավել լրիվ փոխարինումը մեքենայականով:

Անտարակույս, աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացումը լուրջ ու բարդ խնդիր է: Այն պահանջում է միավորել գիտնականների, ինժեներատեխնիկական ծառայողների, բանվորների և կոլտնտեսականների ջանքերը, լայնորեն կիրառել տնտեսվարման ամենաառաջավոր մեթոդները, ստեղծագործաբար մոտենալ արտադրությանը, նրա բոլոր ռեզերվների օգտագործմանը: Այս առնչությամբ խիստ հրատապ է դառնում կառավարման կազմակերպման հետագա կատարելագործումը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում միավորումների ստեղծումը, արտադրության պլանավորման և տնտեսական խթանման բարելավումը:

Առաջադրված խնդիրների լուծման համար, ինչպես շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում, հարկավոր է բարձրացնել կազմակերպվածությունը, ամրապնդել կարգուկանոնը և կարգապահությունը վարչա-տնտեսական աշխատանքի բոլոր տեղամասերում: Անհրաժեշտ է գտնել և օգտագործել ռեզերվները բոլոր ճյուղերում, սիստեմատիկ, ամենօրյա աշխատանք կատարել այդ ուղղությամբ:

Հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ XXV և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարների որոշումները, անհրաժեշտ հետևություններ անելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ սովետական ժողովրդին ուղղված նամակում առաջ քաշած դրույթներից, հանրապետության աշխատավորները հնգամյակի երրորդ տարվա սկզբից սոցիալիստական լայն մրցություն ծավալեցին պետական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու համար:

Հանրապետության արդյունաբերության աշխատողները հաջողությամբ են կատարել արտադրանքի իրացման և կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի հինգ ամսվա պլանը: Զգալի աշխատանք է կատարվել արտադրանքի որակի բարձրացման ասպարեզում: Այժմ ավելի քան 1.300 արտադրատեսակ թողարկվում է պետական որականիշով, որոնց տեսակարար կշիռն արտադրության ծավալի մեջ կազմում է գրեթե 11 տոկոս: Հնգամյակի հարվածային տարում ակներև են նաև գյուղի աշխատավորների հասումները:

Ժողովրդական տնտեսության հաջող զարգացման համար հանրապետության աշխատավորները երկու տարի անընդմեջ հաղթող են ճանաչվել համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Ոգևորված այդ բարձր պարգևով, Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը բարձր կպարզեն արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման ու գերակատարման համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության դրոշը, 1978 թվականը կավարտեն աշխատանքային նոր մեծագործություններով:

Հանրապետության աշխատավորների ընթացիկ տարվա պլանների կատարման ու գերակատարման, արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման համար ստանձնած պարտավորությունները լարված են և պահանջում են մոբիլիզացնել մեր բոլոր ուժերն ու հնարավորությունները: Սակայն այդ հանձնառությունները ռեալ են, որոնք ներկայացնում են այն պարտավորությունների միագումարը, որն ընդունվել է աշխատավորական կոլեկտիվներում: Ընթացիկ տարվա պետական պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անպայման կատարումն ու գերակատարումը կապահովեն, ամբողջությամբ վերցված, հնգամյակի հաջող կենսագործումը: Այս հանգամանքը յուրաքանչյուր աշխատողի, ամեն մի արտադրական կոլեկտիվի պարտավորեցնում է աշխատել լիակատար պատասխանատվու-

թյամբ ու ստեղծագործական նվիրումով, քաղաքացիական պարտքի խոր ըմբռնումով։ Դրան հասնելու ռեալ երաշխիքներն են՝ աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, հիմնական արտադրաճյուղերի առավելագույն օգտագործումը, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը, արտադրանքի բարելավումը, խնայողության ռեժիմի խստիվ պահպանումը։

Անհրաժեշտ է ավելի բարձրացնել սոցիալիստական մրցության ներգործությունը, բարելավել նրա կազմակերպումը։ Լավ կազմակերպել մրցությունը՝ նշանակում է աշխատավորներին մոբիլիզացնել կոնկրետ, գործնական արդյունքների հասնելու համար, մրցության մասնակիցներին վստահություն ներշնչել, որ յուրաքանչյուրի աշխատանքը կգնահատվի ըստ արժանվույն, որ հաջողություններն աննկատ չեն մնա։

Հարկավոր է գաղափարական ներգործման բոլոր միջոցներով աշխատավորությանը պարզաբանել, որ մեր հաջողություններն անվիճելի են, ակներև, սակայն մեզ սպասում են մեծ գործեր։ Անցած տարիների համեմատությամբ, հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման տեմպային ցուցանիշները շատ ավելի բարձր են պլանավորված։ Այստեղից էլ օրվա հրամայական պահանջը. աշխատել ավելի լավ, քան երեկ, առավել արդյունավետությամբ և օգտավետությամբ, որի համար ստեղծված են բոլոր պայմանները։

Հանրապետության արտադրական, գիտական և տեխնիկական առկա պոտենցիալը, կադրային, աշխատանքային և նյութական ռեսուրսները հնարավորություն են ընձեռում լրիվ կատարելու մեր առջև կանգնած բարդ և մասշտաբային խնդիրները։ Մեր առջև ծառացած խնդիրների լուծման ապահովումն այժմ մեծապես կախված է նրանից, թե մենք ինչպես կօգտագործենք այդ հնարավորությունը, ինչպես կաշխատենք, կարո՞ղ ենք արդյոք Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ ցուցաբերել «... ավելի հաստատակամություն, ավելի համառություն, ավելի սիստեմատիկություն աշխատանքում, ավելի մեծ կազմակերպչական ու վարչական հմտություն մեծ մասշտաբով»։ (Երկեր, հ. 30, էջ 513)։

Հանրապետության ընթացիկ ու հեռանկարային սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծմանը մեծապես նպաստում է այն անդուլ հոգատարությունը, որ կուսակցության Կենտկոմը և միութենական կառավարությունը ցուցաբերում են Սովետական Հայաստանի էկոնոմիկայի արագընթաց զարգացման, հանրապետության աշխատավորների բարօրության նկատմամբ։

Սովետական ժողովրդի ազատ, հայրենանվեր աշխատանքի արգասիքը եղավ զարգացած սոցիալիստական հասարակությունը։ Այդ, հիրավի, համաշխարհային պատմական նվաճումը օրենսդրականորեն վավերացրեց ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, որը տոգորված է սոցիալիզմ և կոմունիզմ կառուցողների, հեղափոխական նորարարության ոգով։ Դրանում իր մարմնացումը գտավ աշխարհում առաջին համաժողովրդական պետության կառուցման փորձը, որը նոր պայմաններում շարունակում է պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծաբար միսիան։

Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի տոնակատարությունը, ՍՍՀՄ նոր Հիմնական օրենքի համաժողովրդական քննարկումն ու ընդունումն առաջ բերեցին մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվություն, նրանց ստեղծագործական նախաձեռնության բացառիկ դրսևորում։ Սովետական դեմոկրատիայի զարգացման ու կատարելագործման վառ վկայությունն են միութենական հանրապետությունների նոր Սահմանադրությունները։

Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի արտահերթ յոթերորդ նստաշրջանը միահամուռ ընդունեց Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Սահմանադրությունը, որն, անշուշտ, խոշոր նշանակություն ունեցող քաղաքական ու պետական բարձրագույն ակտ է։ Այդ կարևորագույն փաստաթղթի համաժողովրդական քննարկումը վերստին դրսևորեց սոցիալիստական դեմոկրատիայի իսկական էությունը, վկայեց հանրապետության աշխատավորների քաղաքական հասունությունը, նրանց ակտիվ շահագրգռվածությունը մեր մեծ հայրենիքի այսօրվա և վաղվա նկատմամբ։



Աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվությունը հանդես եկավ ոչ միայն հանրապետության Հիմնական օրենքը կատարյալ դարձնելու իրենց առաջարկությունների մեջ, այլև գործով նպաստելու այն խնդիրների առավել արագ իրականացմանը, որ առաջադրել է կուսակցության XXV համագումարը։ Հիրավի, սոցիալիստական դեմոկրատիայի դրսևորման արտահայտությունն են այդ ընթացքում համապատասխան կազմակերպություններից ստացած բազմաթիվ նամակները, խելացի, գործնական առաջարկություններն ու դիտողությունները, ինչպես և աշխատանքային զեկույցները՝ ամսվա, տարվա, հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար հանդես բերած հայրենասիրական նոր նախաձեռնությունները։

Իրավամբ, Հայկ. ՍՍՀ նոր Սահմանադրությունը համապատասխանում է մեր հանրապետության զարգացման արդի փուլին, հասուն սոցիալիստական հասարակության պահանջներին, տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական առաջընթացի այն բարձունքներին, որոնց հայ ժողովուրդը հասել է կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ՍՍՀՄ ժողովուրդների ինտերնացիոնալ միասնական ընտանիքում։

Նոր կյանքի հիմնադրման առաջին քայլերից մինչև հասուն սոցիալիզմի հասարակության կառուցումը եղավ պայքարի, հասարակական առաջընթացի և սոցիալիստական արմատական վերափոխությունների ուղի, նշանավորվեց հանրապետության պետականության հաստատման ու զարգացման փառավոր փուլերով։

Կոմունիստական հասարակարգի կառուցման արդի խնդիրները, հասուն սոցիալիզմի պայմաններում հասարակական և պետական կարգի կազմակերպման առավել բարձր մակարդակը, ՍՍՀՄ Սահմանադրությունից բխող քաղաքական և տեսական հիմքը մարմնավորվել են հանրապետության նոր Հիմնական օրենքում։

ՍՍՀՄ Սահմանադրության 6-րդ հոդվածում մասնավորապես ասված է. «Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է։ ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին։

Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կոմունիստական կուսակցությունը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի մեծ, ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար նրա պայքարին։

Բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ Սահմանադրության շրջանակներում»։

Սովետական մարդիկ գոհունակությամբ են ընդունում սահմանադրական այդ դրույթը, քանզի պատմական փորձով են համոզվել, որ կուսակցության միակ նպատակը ժողովրդի հարաճուն բարօրությունն է։

Ինչպես ՍՍՀՄ, այնպես և հանրապետական նոր Սահմանադրություններում լիակատար դրսևորված է սովետական հասարակության իրական դեմոկրատիզմը։ Սովետական հասարակությունը բաղկացած է միայն աշխատավոր դասակարգերից և սոցիալական խմբերից։ Մեր պետության տնտեսական հիմքը՝ արտադրամիջոցների սոցիալիստական սեփականությունը, աշխատանքը դարձել է համընդհանուր։ Յուրաքանչյուր մարդու համար երաշխավորված է աշխատանքի իրավունք, յուրաքանչյուրի պարտքն ու պարտականությունն է բարեխղճորեն աշխատել։ Միայն հանրօգուտ աշխատանքով, նրա արդյունքներով է որոշվում մարդու դիրքը սոցիալիստական հասարակության մեջ։

ՍՍՀՄ Սահմանադրությունը հաստատում է աշխատանքային կոլեկտիվի տեղը՝ որպես մեր հասարակության սոցիալական օրգանիզմի սկզբնական բջջի։ Այն համոզիչ վկայում է, թե մեր պետության մեջ ինչքան է աճել աշխատավոր մարդու դերը՝ որպես բոլոր նյութական և հոգևոր արժեքները ստեղծողի։ Աշխատավորական կոլեկտիվում,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— նրա կուսակ-

ցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում արտացոլվում է հասարակության ամբողջ կյանքը՝ թե՛ տնտեսական, թե՛ հոգևոր, և մեր սոցիալական օրգանիզմի այդ սկզբնական բջջում ծնվում և զարգանում են ամբողջ երկրի կյանքի վրա ներազդող նախաձեռնությունները։

Միութենական Հիմնական օրենքին համապատասխան՝ հանրապետության Սահմանադրության 171 հոդվածներից 37-ը նվիրված են պետության և անհատի փոխհարաբերություններին։ Այդ դրույթները միտում են անհատի իրավական դրության ամրապնդմանը, նրա իրավունքների և ազատությունների ընդլայնմանը, օրենսդրության կատարելագործմանը, այնպիսի համակարգի մշակմանը, որը հուսալի երաշխիքներ ապահովի քաղաքացիների իրավունքների որևէ խախտման և բյուրոկրատական խեղաթյուրման դեմ։ Սահմանադրությամբ ընդլայնվել են պետության ստանձնած պարտականությունները՝ սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքների բավարարման, նրանց կենսամակարդակի ու կուլտուրայի բարձրացման համար։ Իսկական դեմոկրատիզմը բոլոր քաղաքացիների կողմից իրենց սահմանադրական իրավունքների իրականացման համար առավելագույն երաշխիքների ստեղծումն է և, դրա հետ մեկտեղ, քաղաքացիական բարձր գիտակցությունը, յուրաքանչյուր մարդու կարգապահությունը և պատասխանատվությունն իր արարքների, հասարակական շահերի պաշտպանման համար։

Սահմանադրության մեջ ամրակայված են հասուն սոցիալիստական հասարակության իսկական դեմոկրատիան, քաղաքական սիստեմը, որն ապահովում է բոլոր հասարակական գործերի արդյունավետ կառավարումը, պետական կյանքին աշխատավորների ակտիվ մասնակցությունը, քաղաքացիների իսկական իրավունքների և ազատությունների զուգորդումը հասարակության հանդեպ նրանց պարտականությունների և պատասխանատվության հետ։ Սկզբունքային նշանակություն ունի պետական ու հասարակական գործերի կառավարմանը մասնակցելու, պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեության բարելավման վերաբերյալ առաջարկություններ անելու, աշխատանքի թերությունները քննադատելու իրավունքի սահմանադրական վավերագրումը։

Սոցիալիզմը ռեալ հումանիզմի մարմնավորումն է։ Սահմանադրության մեջ պատշաճ ձևով շարադրված են քաղաքացիների կենսական՝ աշխատանքի, հանգստի, առողջության պահպանման, սոցիալական ապահովության, կրթության, կուլտուրայի նվաճումներից օգտվելու, գիտական, տեխնիկական ու գեղարվեստական ստեղծագործության ազատության իրավունքները։ Սահմանադրորեն օրինականացված են քաղաքացիների բնակարանային իրավունքը, յուրաքանչյուր անհատի կարողություններին ու հնարավորություններին համապատասխան և հասարակական պահանջմունքների հաշվառումով մասնագիտության ազատ ընտրության իրավունքը։

Սահմանադրության մեջ Հայկական ՍՍՀ-ն բնորոշված է որպես սուվերեն սովետական սոցիալիստական պետություն, որը կոմունիստական հասարակարգի հաջող կառուցման, երկրի անվտանգության ու պաշտպանության ապահովման նպատակով իր ժողովրդի ազատ ինքնորոշման, կամավորության և իրավահավասարության հիման վրա սովետական սոցիալիստական հանրապետությունների հետ միավորվել է միասնական միութենական բազմազգ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ։

Վերջերս՝ մայիսի 16-ին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում քննարկվեց միութենական հանրապետությունների նոր սահմանադրությունների նախապատրաստման և ընդունման աշխատանքի արդյունքների մասին հարցը։ Նախագահությունը բարձր գնահատեց միութենական հանրապետությունների սահմանադրությունների քննարկումը և ընդունումը, որը կուսակցության շուրջը ժողովրդի համախմբվածության ևս մի փայլուն վկայություն է։

Իր ելույթում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ այդպիսի կարևոր գործին միլիոնավոր սովետական մարդկանց մասնակցությունը թույլ տվեց



ճշգրտել և լրացնել Հիմնական օրենքները, դրանք հարստացնել ժողովրդական փորձով, հաշվի առնել յուրաքանչյուր հանրապետության առանձնահատկությունները։ Սովետական մարդիկ քննարկման ընթացքում կրկին առաջին պլանի վրա էին դնում այն հարցերը, որոնք առնչված են իր աշխատանքի համար, ընդհանուր գործի մեջ իր ավանդի համար քաղաքացու ունեցած պատասխանատվության հետ։

Սովետական մարդն ամենուրեք իրեն դրսևորում է որպես պահանջկոտ մարդ, որը չի կարող հաշտվել թերությունների հետ, դրանք սրտին մոտ է ընդունում, ցավում է գործի համար, որպես մի մարդ, որի համար հայրենիքի ճակատագիրն անբաժանելի է իր սեփական ճակատագրից։

Հայ ժողովուրդը, կանգնելով լենինյան գաղափարների դրոշի ներքո, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, ռուս ժողովրդի, սովետական բոլոր ժողովուրդների հետ միասնական ընտանիքում, հասավ իր ստեղծարար ուժերի աննախադեպ զարգացմանը, կառուցեց իր այսօրվա ծաղկուն սոցիալիստական հայրենիքը։ Խորհրդանշական է, որ հանրապետության աշխատավորները նոր Սահմանադրությունն ընդունեցին Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման՝ այդ նշանավոր իրադարձության, 150-ամյակի տոնակատարության նախօրյակին։ Իրադարձություն, որը նոր դարաշրջան սկզբնավորեց մեր ժողովրդի տարեգրության մեջ։ Եղբայրական բարեկամությունը ռուս մեծ ժողովրդի և Ռուսաստանի մյուս ժողովուրդների հետ, նրանց համատեղ պայքարը սոցիալական ու ազգային կեղեքման դեմ հայ ժողովրդի առաջ բացեցին միակ ճիշտ ճանապարհը դեպի ազատություն, ազգային վերածնունդ և սոցիալիստական պետականություն, որոնք իրականություն դարձան մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ։ Այդ փառապանծ հոբելյանը մեր ժողովուրդը նշելու է որպես ինտերնացիոնալիզմի, հայ և ռուս ժողովուրդների, Սովետական Միության բոլոր ժողովուրդների եղբայրության ու բարեկամության մեծ տոն։

Կուսակցության առաջադրած խնդիրների լուծման համար կոմունիստների և ողջ աշխատավորության ուժերի մոբիլիզացմանը մեծապես խթանում է մեր աշխատանքների տարբեր բնագավառներում գործերի վիճակը բարելավելուն նպատակամղված այն խորհուրդների և ցուցումների իրականացումը, որոնք արվեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի կողմից՝ երկրի Արևելյան մարզերը շրջագայելիս, աշխատավորական կոլեկտիվներում և մի շարք երկրամասերի կուսակցական-տնտեսական ակտիվներում ունեցած զրույցների և ելույթների ժամանակ։ Աշխատավորությանն ուղղված կուսակցության և սովետական պետության ղեկավարի խոսքը կրկին անգամ հաստատում է այն մեծ ու հետևողական աշխատանքի մասին, որ իրականացնում է լենինյան կուսակցությունը երկրի տնտեսական զարգացման, պաշտպանունակության ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության, մեր մեծ հայրենիքի միջազգային հեղինակության հետագա բարձրացման ուղղությամբ։

Մեր երկրի հասարակական-քաղաքական, հոգևոր ու կուլտուրական կյանքում կարևոր իրադարձություն է ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Մալայա Զեմլյա» և «Վերածնունդ» հուշապատումների լույս ընծայումը։ Այդ գրքերը սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմում ցուցաբերած անօրինակ արիության ու տոկունության պերճախոս վկայություն են, ճշմարտացի ու հուզիչ վավերագիր թշնամու կողմից ավերված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու մասին։ Այստեղ ընթերցողի առջև հառնում է սովետական մարդու վսեմ կերպարը, որը կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում։ Սովետական մարդը ջերմագին հայրենասեր է, հետևողական ինտերնացիոնալիստ։

Ընկեր Բրեժնևի հուշապատումները խոշոր ավանդ են սովետական ժողովրդի պայքարի ու ստեղծագործական հերոսական տարեգրության մեջ, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության նվիրական գործում, լայն հնարավորություն են ընձեռում սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության հետագա կատարելագործման համար։

... Ընկեր Բրեժնևի ստեղծագործությունները կուսակցական աշխատանքի փորձի գանձարան են, քաղաքական իմաստնության ձեռնարկ, բովանդակում են գաղափարական հզոր լիցք: Հուշագրությունների հեղինակն արդիականության ականավոր քաղաքական ու պետական գործիչ է, որը կյանքի մեծ դպրոց է անցել՝ բանվորից մինչև կուսակցության ու պետության ղեկավար:

«Երբեք պատերազմ չպետք է լինի». Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի այս խոսքերը, որոնք հսկայական հուզականությամբ ու համոզչությամբ հնչեցին հուշագրերում, արտացոլում են սովետական մարդկանց ամենանվիրական խոհերն ու իղձերը: Այժմ սոցիալիզմի տնտեսական ընդհանուր հզորությունն առավել արդյունավետությամբ ծառայում է խաղաղության գործին: Շրջադարձը դեպի լարվածության թուլացումը, միջազգային հարաբերություններում տեղի ունեցած մյուս դրական փոփոխությունները զգալի չափով ձեռք են բերվել Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության բոլոր երկրների համակողմանի առաջընթացի շնորհիվ:

Միջազգային ասպարեզում լարվածության թուլացումը բարենպաստ պայմաններ է ստեղծել տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների փոխշահավետ հարաբերությունների զարգացման համար: Սովետական Միությունը կայուն, բազմակողմանի կապեր է հաստատել մի ամբողջ շարք կապիտալիստական երկրների հետ: Հաջողությամբ ավարտվեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի բանակցությունները ԳՖՀ-ի ղեկավարների հետ վերջերս Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցի ժամանակ: Մասնավորապես ստորագրվեց համատեղ դեկլարացիա լարվածության թուլացման, բարիդրացիության և խաղաղության ամրապնդման գործն առաջ տանելու մասին:

Հաջողությամբ են կատարվում տասներորդ հնգամյակի երրորդ տարվա պլանային առաջադրանքները, ստեղծված են բոլոր նախադրյալները, որպեսզի հանրապետությունը բոլոր բնագավառներում նվաճի նախանշած բնագծերը:

---

# ԼԵՆԻՆԱԲԱՐ ԱՇԽԱՏԵԼ ՈՒ ԱՊՐԵԼ ՈՒՍՈՒՑՈՂ ԳՐՔԵՐ

Մեր ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ լենինյան հիանալի ավանդույթն է հոգատար վերաբերմունքը նոր հասարակության կառուցման ընթացքում կուտակված փորձի նկատմամբ, փորձ, որն անընդհատ հարստանում է ու կատարելագործվում:

Անցյալի դասերի, ներկայի և ապագայի խնդիրների նկատմամբ հենց այսպիսի մոտեցման լավագույն օրինակ են ՍՄԿԿ XXV համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի զեկուցումներն ու աշխատությունները:

Կոմունիստական կուսակցության, մեր երկրի հասարակական-քաղաքական և հոգևոր կյանքում խոշոր իրադարձություն է ընկեր Լ. Ի. Բրեժնևի Մալայա զեմլյա և Վոզրոժդենիե գրքերի հրատարակումը: Դրանք, որ մեծ ավանդ են սովետական ժողովրդի պայքարի ու աշխատանքի, մեր երկրում սոցիալիստական ու կոմունիստական շինարարության հերոսական տարեգրության մեջ, խոր հետաքրքրություն են հարուցել ոչ միայն սովետական ընթերցողների, այլև աշխարհի ողջ առաջադեմ հասարակայնության շրջաններում: Սովետական միլիոնավոր մարդիկ հոգեկան մեծ բավականությամբ ու սրտագին երախտագիտությամբ են կարդում և ուսումնասիրում այդ հուզիչ ստեղծագործությունները, որոնց էջերում վարպետորեն բացահայտված են լենինյան կուսակցության ղեկավարությամբ՝ սովետական ժողովրդի բազում սխրանքների վեհությունն ու անանց նշանակությունը: Ամենուրեք, մեր լայնածավալ երկրի տարբեր անկյուններում այդ գրքերը այս օրերին քննարկվում են բանվորական ժողովներում, կուսակցական ակտիվներում, ընթերցողների կոնֆերանսներում: Այդպիսի քննարկումներ են տեղի ունենում նաև մեր հանրապետության քաղաքներում ու շրջաններում: Մայիսի 12-ին տեղի ունեցավ հանրապետության կուսակցական ակտիվի ժողովը՝ նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Բրեժնևի Մալայա զեմլյա և Վոզրոժդենիե ստեղծագործություններին և աշխատավորների գաղափարաքաղաքական ու հայրենասիրական դաստիարակության բնագավառում կուսակցական կազմակերպությունների առջև ծառացած խնդիրներին: Ժողովում զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը: Բնութագրելով ընկեր Բրեժնևի հուշագրությունները որպես կարևորագույն ավանդ սովետական հայրենիքի պատմությանը նվիրված մեմուարային գրականության մեջ, որպես կուսակցական աշխատանքի փորձի հարուստ գանձարան, շեշտելով դրանց մոբիլիզացնող հսկայական դերը, ժողովի մասնակիցներն այդ ստեղծագործությունների լույսի ներքո, մեծ խանդավառությամբ ընդունեցին հանձնարարականներ՝ աշխատավորների գաղափարաքաղաքական, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ոճի ու մեթոդների կատարելագործման նպատակով:

Մալայա զեմլյա և Վոզրոժդենիե գրքերն արժեքավոր պատմական փաստա-

թղթեր են, աչքի ընկնող իրադարձությունների ականատեսի և անմիջական մասնակցի վառ վկայություններ։ Դրանցում ճշմարտացի և կրքոտ վերարտադրված են մեր հայրենիքի պատմության հերոսական էջերը, ցույց են տրված սովետական ժողովրդի հոգևոր և բարոյական ուժը, սովետական մարդկանց արիությունն ու տոկունությունը, նրանց անսահման սերն ու հավատը լենինյան կուսակցության նկատմամբ, նրանց հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը։ Դրանք խոր ու համոզիչ արտացոլում են կոմունիստների կուսակցության՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողի ու կազմակերպչի, կենսահաստատ գործունեությունը։ Այդ փաստաթղթերի յուրաքանչյուր էջում, յուրաքանչյուր տողում անվեհեր կոմիսարի, պատերազմի դաժան ու դժվարին ճանապարհներով անցած հերոսի փորձն է, վերականգնման ժամանակաշրջանի աշխատանքային շարժման անմիջական մասնակցի փորձը, ականավոր քաղաքական ու պետական գործչի բանականությունն ու իմաստությունը։

Ժամանակագրական տեսակետից ընկ. Լ. Ի. Բրեժնևի ստեղծագործություններն ընդգրկում են մեր երկրի կյանքի պատմական երկու փուլ՝ Հայրենական մեծ պատերազմը և հետպատերազմյան տարիները։ Դրանք խիստ ինքնատիպ, վստահությամբ լի տոնով գրված, սրտաբաց և անկեղծ հիշողություններ են, կուսակցականության ոգով տոգորված վավերագրություններ։ Բայց, դրա հետ մեկտեղ, իրենց մասշտաբայնությամբ, նշանակությամբ, պրոբլեմների արծարծման խորությամբ այս գրքերը դուրս են գալիս սովորական հուշերի սահմաններից։ Մալայա զեմլյայի պաշտպանների հերոսապատմանը, Զապորոժիեի և Դնեպրոպետրովսկի մարզերի ժողովրդական տնտեսության վերականգնման աշխատանքային հերոիկային նվիրված պատմություններն ընթերցողների կողմից ընկալվում են ոչ թե որպես տեղական նշանակության փաստեր, այլ որպես ողջ սովետական ժողովրդի հիանալի մեծագործությունների բաղկացուցիչ մասը։ Ընկ. Բրեժնևը յուրաքանչյուր էպիզոդում բացահայտում է սովետական իրականության տիպիկ գծերը։ Գրքերի վառ էջերը մեր ամբողջ երկրի, ամբողջ սովետական ժողովրդի, Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմությունն են՝ խտացված կոնկրետ իրադարձություններում և կերպարներում։

Բոլշևիկյան սկզբունքայնությամբ, բարձր գաղափարայնությամբ հագեցված այդ ստեղծագործություններն իրենց ամբողջ բովանդակությամբ, կուսակցության գաղափարների հաստատման պաթոսով համահնչուն են մեր օրերին, շոշափում են այնպիսի պրոբլեմներ, որոնք կարևոր նշանակություն ունեն սովետական հասարակության զարգացման նաև այսօրվա խնդիրների լուծման համար, օգնում են ավելի խորությամբ թափանցելու այն երևույթների և պրոցեսների մեջ, որոնք բնորոշում են ժամանակակից զարգացումը։

Մալայա զեմլյան տպավորիչ ու հուզիչ մի պատմություն է հայրենի հողի նկատմամբ մեր ժողովրդի տածած անսահման սիրո մասին, մեծ Լենինի կուսակցության դաստիարակած սովետական մարդկանց հոգևոր հարստության ու սխրագործությունների մասին։ Դա թանկագին գանձ է Հայրենական պատերազմի տարեգրության մեջ, ողջ և մեռած հերոսներին արժանի փառապսակ։ Մալայա զեմլյայում բացահայտված է պատերազմի հոգեբանությունը, պատերազմի՝ ոչ ընդհանրապես, այլ մեր հայրենականի, ազատագրականի։ Սովետական փոքր հողակտորի պաշտպանների հերոսապատման ֆոնի վրա Լեոնիդ Իլյիչը խոր հուզմունքով բնութագրում է իր հայրենիքի ազատության համար ոտքի ելած սովետական մարդկանց բնավորության գծերը, նրանց անօրինակ սխրագործությունների, աննկուն ոգու և հոգու գեղեցկության ակունքները։

Բանակի հրամանատար Կ. Լեսելիձեն, ծովային հետևակայինների բրիգադի կոմերիտական կազմակերպիչ, շիկահեր Մարիա Պեդենկոն, հատուկ նշանակման դեսանտային ջոկատի հրամանատար, մայոր Ց. Կունիկովը, մարտերում մահացու վերք ստացած անանուն լեյտենանտը, որը խնդրում է ընկ. գնդապետին միայն մի բան՝ «... միջնորդեցեք, որ եթե չմեռնեմ, ինձ ուղարկեն իմ զորամասը», քաղբաժնի պետի տեղակալ Ս. Պախոմովը, դասախոս-պրոպագանդիստ-



ներ Ա. Արզումանյանը, Ի. Շչերբակը, Գ. Յուրկինը, ժուռնալիստներ Վ. Վերխովսկին, Ս. Բորզենկոն և այլ բազմաթիվ մարդիկ հիշվում են իրենց կենդանի, անհատական խառնվածքներով։ Եվ միաժամանակ բնավորության տարբեր գծերից և գծիկներից ստեղծվում է հայրենիքի պաշտպանների միասնական, կոլեկտիվ դիմանկարը, որում դրսևորվում են և հեղինակի հատկանիշները։

Մալայա զեմլյայի էջերում պատկերվում է քաղաքական աշխատողի տպավորիչ կերպարը։ Նրան էր վստահված պատերազմի տարիներին ամենասուր զենքը՝ «...կուսակցական կրքոտ խոսքը՝ ամրապնդված գործով, մարտում ցույց տրված անձնական օրինակով»։ Հեղինակը խոր հավատով է գրում, որ կոմունիստի, քաղաշխատողի տեղը, ըստ քաղաքացիական կռիվների ժամանակից մնացած ավանդույթի, առաջավոր գծում է, նրա ամենավտանգավոր մասում, ամենավճռական սահմանագծում։ Միայն այդպիսի արտոնություն կարող է տալ կուսակցությունը կոմունիստին մահաբեր մարտից առաջ. «Միայն մեկ անձնաշնորհում, միայն մեկ իրավունք, միայն մեկ պարտականություն՝ առաջինը լինել գրոհի, առաջինն ընդառաջ նետվել կրակին»։ Եվ կոմունիստ Բրեժնևը օգտվել է այդ իրավունքից վերադիրով։ Նա միշտ եղել է առաջին շարքերում, բոցաշունչ խոսքով գաղափարապես զինել մարտիկներին՝ նրանց ոգևորելով ու ոգեշնչելով նոր սխրագործության։ «Երկու քայլ գնալ առջևից», երբ վտանգն է սպառնում և միշտ լինել մարտիկների հետ ամենածանր պահերին. ահա նրա սկզբունքը։ Եվ ոչ միայն այդ։ Նրան հատուկ է եղել մարտիկների հետ բաց, հոգեհարազատ, պարզ խոսակցություն վարելու ունակությունը, զրույցի համար անհրաժեշտ տոն գտնելը, միշտ իրեն հանգիստ ու հանդարտ պահելը։ Պարզաբանելը, բացատրելն ու համոզելը նա համարում է գլխավորը քաղաշխատողի ամենօրյա աշխատանքում։ Եվ առնչելով դա մեր ներկա աշխատաոճին, գրում է. «Եթե նույնիսկ մարդը սխալվել է, ոչ ոք իրավունք չունի նրան վիրավորել բղավոցով։ Ինձ համար խորապես զզվելի է թեկուզ տարածում չգտած, բայց ոմանց մեջ դեռ պահպանվող սովորությունը՝ ձայնը բարձրացնել մարդկանց վրա։ Ո՛չ տնտեսական, ո՛չ էլ կուսակցական ղեկավարը չպետք է մոռանա, որ իր ենթակաները ենթականեր են միայն ի պաշտոնե, որ նրանք ծառայում են ոչ թե դիրեկտորին կամ վարիչին, այլ կուսակցության և պետության գործին»։

Մալայա զեմլյայում այդպես օրգանապես միահյուսվում են կուսակցական և պետական նշանավոր գործչի, քաղաքական և տնտեսական ընդհանրացումներն ու եզրակացությունները, պարզ, անմիջական և էմոցիոնալ համոզվածությամբ տրվում է սովետական մարդու հայրենասիրական սխրանքի բնույթի և համաշխարհային պատմության վրա մեր հաղթանակի հետագա ազդեցության խոր վերլուծությունը։ Գրքում տրվում են նաև պրակտիկ հանձնարարականներ, կոնկրետ խորհուրդներ, որոնք օգնում են կատարելագործելու կուսակցական աշխատանքի ոճը։ Այդ գիրքը, որն ակնառու ավանդ է Հայրենական մեծ պատերազմի տարիներին կատարված կուսակցական-քաղաքական աշխատանքի փորձի ստեղծագործական ընդհանրացման մեջ, լայն հնարավորություններ է բացում սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության, հատկապես մատաղ սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակության բարելավման համար։

Ընթերցողները խոր գոհունակությամբ են ընկալում և միահամուռ հավանություն տալիս հուշապատման մեջ ընկ. Բրեժնևի արած գլխավոր հետևությանը՝ Երբեք պատերազմ չպետք է լինի։ Սա ահեղ ճակատամարտերի բովում թրծված, պատերազմի արհավիրքներն ու ավերածությունները տեսած, ինչպես նաև խաղաղ աշխատանքի բերկրանքն ապրած, մեծ կենսափորձով իմաստնացած մարդու, կոմունիստի ու ղեկավարի եզրահանգումն է։ Եվ բնական է, որ միջազգային ասպարեզում նա ուժգին կրքոտությամբ է պաշտպանում համաշխարհային սոցիալիզմի շահերը, խիստ հետևողականությամբ է մարտնչում ՍՄԿԿ խաղաղության ծրագրի պրակտիկ իրականացման, աշխարհում կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովման համար։ Լարվածության թուլացման, Եվրոպայում խաղաղության, բոլոր պետությունների բարիդրացիական հարաբերությունների ամրապնդման ճանապարհին նոր քայլ եղավ

նաև վերջերս ընկ. Բրեժնևի՝ ԳԴՀ կատարած պաշտոնական այցը։ Սովետական մարդիկ անձնվեր աշխատանքով, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության բարձրացմամբ են պաշտպանում ՍՄԿԿ-ի և սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսը, խոր երախտագիտություն հայտնում ընկ. Լ. Ի. Բրեժնևին նրա անխոնջ ու եռանդուն գործունեության համար։

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի **Վերածնունդ** գիրքը Հայրենական մեծ պատերազմի հերոսական օրերին նվիրված հուշերի տրամաբանական շարունակությունն է, որտեղ պատմվում է հետպատերազմյան տարիներին թշնամու կողմից ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման, մեր երկիրը խաղաղ շինարարության ռելսերին փոխադրելու մասին։ Կարդալով այն, ընթերցողը շոշափելիորեն պատկերացնում է, թե ինչպես, սովետական ժողովրդի հերոսական ջանքերով, աննախընթաց կարճ ժամկետում ավերակներից նորից և է՛լ ավելի հոյակապ վեր են հառնել առաջին հնգամյակների լեգենդար հսկաները՝ «Զապորոժստալը» և Դնեպրոգէսը, վերածնվել քաղաքներն ու գյուղերը։ Եվ այդ ամենում, ինչպես շեշտում է ընկ. Բրեժնևը, հատուկ ուժով են դրսևորվում սովետական ժողովրդի հոգու վեհությունը, նրա անսահման հավատը կոմունիստական իդեալների հաղթանակի նկատմամբ, մեր հայրենիքի հզորությունն ամրապնդելու համար ամեն տեսակ սխրանքներ գործելու նրա պատրաստակամությունը։ Վերականգնման տարիներին վերստին ցուցադրվեցին սոցիալիստական հասարակարգի, մեր էկոնոմիկայի պլանային սիստեմի ռեալ առավելությունները, իրենց ամբողջ կորովով վերստին դրսևորվեցին սովետական ժողովուրդների անխախտ լենինյան բարեկամությունը, նրանց եղբայրական փոխօգնությունը և համագործակցությունը։

Ընկեր Բրեժնևն իր գրքում համոզիչ կերպով բացահայտում է կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերը, հանգամանորեն անդրադառնում կուսակցական աշխատանքի հարցերին, կազմակերպական-քաղաքական և գաղափարադաստիարակչական աշխատանքի ճկունության ու արդյունավետության բարձրացմանը, կուսակցական կազմակերպությունների հրատապ խնդիրներին։ Պատմելով կուսակցության Զապորոժիեի, իսկ այնուհետև Դնեպրոպետրովսկի մարզկոմների առաջին քարտուղարի պոստում իր վարած գործունեության մասին, ընկ. Բրեժնևը վերարտադրում է պատերազմի հետևանքով ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման դժվարին տարիներին մասսաներին մոբիլիզացնելու ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների կատարած դժվարին ու նպատակասլաց աշխատանքի կենդանի էջերը։ Յուրաքանչյուր կուսակցական աշխատողի համար **Վերածնունդը** իսկական ձեռնարկ է մասսաների կուսակցական ղեկավարման արվեստի, կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների մասին։

Ինչպես **Մալայա զեմլյայում**, այնպես էլ այս գրքում ընկեր Բրեժնևը կուսակցական բոլոր ղեկավարներին տալիս է խորհուրդներ ու հանձնարարականներ, որոնք հույժ էական նշանակություն ունեն այսօրվա պրակտիկ աշխատանքում։ Նա քանիցս շեշտում է կուսակցական աշխատանքի սկզբունքների միասնությունը, կուսակցական ղեկավարման մեթոդների ու խնդիրների ընդհանրությունը։ Վկայակոչելով Լենինի օրինակը, նրա ղեկավարման ոճն ու մեթոդները, բոլորի ուշադրությունը հրավիրում է այսօրվա հրատապ խնդիրների վրա, սովորեցնում միշտ հաշվի առնել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հարստագույն պրակտիկան, բոլոր պայմաններում չփոշիացնել ռեսուրսները և դրանք ժամանակին կենտրոնացնել գլխավոր ուղղություններում, ճիշտ որոշել պրոբլեմների լուծումները՝ ժողովրդական տնտեսության համար նրանց ունեցած նշանակությանը համապատասխան։

Կոմունիստական շինարարության ներկա փուլում լուծվող սոցիալ-տնտեսական խնդիրների աճող մասշտաբներն ու դրանց բարդությունը, զարգացման որակական գործոնների ուղղությամբ կատարվող շրջադարձը ենթադրում են սոցիալ-տնտեսական կյանքի բոլոր տեղամասերում ղեկավարման մակարդակի մշտական բարելավում։ Իսկ դա, նշում է ընկ. Բրեժնևը, մեծ պարտականու-



թյուն է դնում բոլոր նրանց վրա, ում վստահված է ղեկավարել։ Նրանք պետք է կարողանան կազմակերպել աշխատանքը, միավորեն տնտեսական և հասարակական կազմակերպությունների ջանքերը, հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր աշխատող հստակորեն կատարի իր ֆունկցիաները։ Կուսակցական ղեկավարը, սովորեցնում է ընկ. Բրեժնևը, պետք է զբաղվի կազմակերպչական աշխատանքով, վերահսկի սովետական-տնտեսական և հասարակական կազմակերպությունների կողմից կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման ընթացքը, բնավ չփոխարինելով նրանց։ Նա պետք է զուգակցի քաղաքական բարձր հասունությունն ու մասնագիտական պատրաստականությունը, կառավարման ժամանակակից մեթոդներից ու հնարներից օգտվելու հմտությունը և նորը, առաջավորը կանխազգալու կարողությունը, կազմակերպչից բացի նաև դաստիարակ լինելու շնորհը։

Կարդալով **Վերածնունդը**, ընթերցողը տեսնում է, թե ինչպես են ընկեր Բրեժնևը, կուսակցության նրա գլխավորած մարզային կոմիտեները կենսագործել այդ պահանջները։ Նրա առջև բացվում է կուսակցական աշխատանքի իսկական լաբորատորիա։ Կուսակցական փորձված ղեկավարը բացառիկ վարպետությամբ ու արվեստով ամենաբարդ պայմաններում, հմտորեն հենվելով տնտեսական կադրերի վրա, գտնում է արմատական հարցերի ճիշտ լուծումները։

Ընկեր Բրեժնևը բացառիկ ջերմությամբ է գրում աշխատանքային ճակատում սխրագործություններ կատարող մարդկանց՝ շինարարների, տնտեսական, կուսակցական աշխատողների, ագիտատորների, պրոպագանդիստների, ժուռնալիստների մասին։ Ամեն տողից զգացվում է, թե ինչպիսի ամուր թելերով է նա կապված եղել մասսաների հետ, թե որքան խորն է իմացել և հասկացել նրանց կարիքներն ու շահերը։ Հիրավի, մարդկանց հետ մշտապես շփվելու պահանջը Լեոնիդ Իլյիչի հիանալի հատկությունն է։ Դա են վկայում նրա ամբողջ կյանքը, մեր կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղարի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահի պոստում նրա պրակտիկ գործունեությունը։ Ահա նաև վերջերս Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջաններ կատարած նրա ուղևորությունը, կուսակցական և սովետական աշխատողների, բանվորների ու ռազմիկների, գիտնականների ու գյուղի աշխատավորների հետ հանդիպումներն ու զրույցները դարձան կուսակցության և ժողովրդի անխախտ միասնության լենինյան սկզբունքի մի նոր վառ հաստատումը, մասսաների հետ ղեկավարի շփման գործում իսկական կուսակցականություն դրսևորելու ևս մի փայլուն արտահայտություն։ Չէ՞ որ ժողովրդի կյանքի ռեալ ու կոնկրետ պրոբլեմները, մարդկանց ձգտումներն ու երազանքը գիտենալու համար պետք է միշտ հաղորդակցվել նրանց հետ, ապրել նրանց հոգսերով ու իղձերով։

Ընկեր Բրեժնևը նշում է, որ կուսակցական աշխատողների հատկանիշներից, պրոֆեսիոնալ պարտականություններից անբաժանելի են նաև մարդկայնությունը, հումանիզմը։ Կյանքից վերցված օրինակներով նա ցույց է տալիս, որ հենց մարդկայնությունն է այն հիմքը, որի վրա խարսխվում է մասսաների շրջանում կատարվող կուսակցական-քաղաքական ամբողջ աշխատանքը։ Հենց մարդկայնությունն ու դրանից բխող հոգատարությունը, իր շուրջը մարդկանց համախմբելու կարողությունը, նրանց պատվի, արժանապատվության հարգումը, անկեղծությունը, հոգեհարազատությունը, հանդարտ, առանց կոպտության ու վիրավորանքի ասված խոսքերը, սիրալիր վերաբերմունքն են ընկած կուսակցական-քաղաքական աշխատանքի հիմքում, և դա հենց բնորոշում է հիշողությունների հեղինակին։ Սակայն մնալով պարզ, զարմանալիորեն մատչելի, զարմանալիորեն ուշադիր և հոգատար մարդ, Լեոնիդ Իլյիչը կուսակցական դիրքերը, սոցիալիզմի դասակարգային շահերը, երկրի ու ժողովրդի շահերը պաշտպանելիս հանդիսանում է սկզբունքայնության, պահանջկոտության և վճռականության տիպար։

**Վերածնունդ** գրքում բացահայտված է կուսակցական-քաղաքական աշխատանքի ձևերի ու միջոցների հարուստ զինանոցը։ Կուսակցական յուրաքանչյուր

աշխատողի, որպես քաղաքական ղեկավարի, խնդիրն է՝ այդ զինանոցը հմտո-
րեն օգտագործել մարդկանց դաստիարակության նպատակով։ Միայն այդ պայ-
մանով կարելի է հույս դնել տնտեսական խնդիրների հաջող լուծման վրա։ Ուս-
տի ընկեր Բրեժնևը կուսակցական աշխատողներին խորհուրդ է տալիս չլինել
մանրախնդիր գործամոլներ, չհրապուրվել տնտեսական մանր հարցերով, միշտ
տեսնել և տեսադաշտում պահել գլխավորը՝ աշխատանքը մարդկանց հետ։
Ժխտելով ղեկավարման կոպիտ, կամայական մեթոդը, նա տալիս է իսկական
լենինյան, կուսակցական աշխատանքի ոճի մի ամբողջ ծրագիր, խոսում կու-
սակցական էթիկայի, ինքնակարգապահության, քննադատությանը ճիշտ ար-
ձագանքելու, անձնական հարաբերություններին, վիրավորված ինքնասիրու-
թյան զգացմունքին տեղի չտալու անհրաժեշտության մասին։ Գիրքը սովորեց-
նում է, թե ինչպես ավելի լավ, ավելի արդյունավետ օգտագործել գաղափարա-
կան ներգործության բազմապիսի միջոցները, շեշտում հատկապես դիտողա-
կան ագիտացիայի և տպագիր խոսքի դերը։ Դիտողական ագիտացիայի կազ-
մակերպման փորձը, որի մասին պատմում է ընկեր Բրեժնևը, իսկական դպրոց
է կուսակցական կազմակերպությունների համար։ Անհրաժեշտ է հասնել այն
բանին, որ այժմ նույնպես հրատապ մարտական լոզունգները, պլակատները,
թերթիկները դրվատեն հարվածայիններին, քննադատեն ետ մնացողներին,
մոբիլիզացնեն մարդկանց՝ կոնկրետ խնդիրների հաջող լուծման համար, ավելի
հումկու թափ հաղորդեն ու մարտական բնույթ տան սոցմրցությանը։
Վերածնունդ գրքի մեջ շատ խորհուրդներ կան կադրերի ընտրության և տե-
ղաբաշխման, նրանց հետ աշխատելու, աշխատանքային սկզբունքային փոխ-
հարաբերություններ հաստատելու բարդ և կարևոր արվեստի մասին։ Ընկեր
Բրեժնևը շեշտում է, որ մարդկանց պետք է որքան կարելի է լավ ճանաչել, նրանց
հետ շիտակ լինել։ «Կուսակցական ղեկավարը,— գրում է նա,— պետք է իր
գործընկերներին ճանաչի այնպես, ինչպես նրանք կան, պետք է անպայման
իմանա նրանց թերությունները, սակայն տեսնի և նրանց լավ կողմերը ու ծա-
ռայեցնի գործին»։ Կուսկոմիտեներն ու կուսկազմակերպությունները պետք է
հատուկ ուշադրություն դարձնեն այն բանին, որ ղեկավար աշխատանքի առաջ
քաշվեն բանիմաց, պատասխանատվության բարձր զգացում և կազմակերպչա-
կան ունակություններ ունեցող մարդիկ։ Նրանց աշխատանքը պետք է գնա-
հատվի՝ ելնելով բացառապես գործի արդյունքներից։
Հստակորեն շարադրելով կադրերի հետ տարվող աշխատանքում կուսակ-
ցական և տնտեսական ղեկավարներին, կուսկազմակերպություններին ներկա-
յացվող պահանջները, շեշտելով հատկապես հոգատար ու սիրալիր վերաբեր-
մունքի անհրաժեշտությունը, ընկեր Բրեժնևը միաժամանակ զգուշացնում է
կուսակցական ղեկավարներին՝ հեռու մնալ կադրերի խնամակալությունից, նր-
անց նկատմամբ վստահությունը, հարգանք ցուցաբերելը զուգակցել սկզբուն-
քային պահանջկոտության հետ, բարձրացնել նրանց պատասխանատվությունը
հանձնարարված գործի համար, մարդկանց դաստիարակել իրենց ունակու-
թյուններն ավելի լրիվ դրսևորելու, առավել արդյունավետ աշխատելու ոգով,
զարգացնել նրանց ստեղծագործական ու ձեռներեցության հակումները։
Այս պահանջների կատարումն առանձնապես կարևոր է արդի փուլում, երբ
բոլոր սոցիալ-տնտեսական խնդիրների լուծումը պահանջում է արմատական
շրջադարձ դեպի զարգացման որակական գործոնները, բոլոր տեղամասերում
ղեկավարման մշտական բարելավում։ Հարկավոր է ձգտել այն բանին, որ կադ-
րերն իրենց մեջ զուգակցեն բարձր քաղաքական գիտակցականությունը լավ,
պրոֆեսիոնալ պատրաստության հետ, կարողանան օգտվել կառավարման ժա-
մանակակից մեթոդներից, լինեն ոչ միայն մարդկանց կազմակերպիչներ, այլև
դաստիարակներ։
Ընկեր Բրեժնևը բազմիցս շեշտում է, որ գործը հաջողություն է ունենում
միայն այն դեպքում, երբ կուսակցական աշխատանքը զուգակցվում է տնտե-
սական գործունեության հետ։ Դրա համար էլ կարևոր է ղեկավարներին դաս-
տիարակել ընդունած որոշումների հետևանքները, դրանց քաղաքական իմաստն
ու նշանակությունը ընկալելու կարողության ոգով։ Խոսելով տնտեսական ղե-



կավարի արվեստի մասին, Լեոնիդ Իլյիչը դրա էությունն է համարում՝ նոր խըն-
դիրների հետ երկրի պատմության, սոցիալիզմի կառուցման, սովետական ժո-
ղովրդի ստեղծարար, հարուստ փորձի զուգակցումը, ուժերի պատշաճ օգտա-
գործումը, հիմնական ուղղություններում ժամանակին միջոցների կենտրոնա-
ցումը, ժողովրդատնտեսական բարդ խնդիրների լուծման գործում առաջնային
ճիշտ որոշման ընդունումը։ Գործի հաջողությունը պայմանավորված է հեռա-
նկարով աշխատելու, աշխատանքը հստակ պլանավորելու կարողությամբ, որո-
շումների կատարման խիստ վերահսկմամբ, առաջադրված խնդիրը մինչև վերջ
հասցնելու և լուծելու հաստատակամությամբ։ Ամփոփելով «Զապորոժստալի»
վերականգնման աշխատանքների արդյունքները, Լ. Ի. Բրեժնևը գրում է. «Կա-
րողանալ պարզել այն կոնկրետ օղակները, որտեղ կարելի է նվազագույն ծախ-
սումներով ստանալ առավելագույն և արագ արդյունք, կարողանալ յուրաքան-
չյուր խնդրի լուծմանը մոտենալ վերջնական արդյունքների տեսակետից՝ հենց
սա է պլանավորման, ասենք՝ առհասարակ տնտեսական ղեկավարման ար-
վեստը»։
Վերածնունդ գրքում առանձնակի ուշադրություն է հատկացված քննադա-
տությանը և ինքնաքննադատությանը՝ որպես թերությունները ժամանակին բա-
ցահայտելու և վերացնելու, կադրերին ճիշտ դաստիարակելու կարևորագույն
միջոցի։ Կուսակցական աշխատանքի իր հարուստ փորձից վերցրած կոնկրետ
օրինակներով Լ. Ի. Բրեժնևը համոզիչ ու փաստարկված ցույց է տալիս, որ քըն-
նադատությունը եղել և մնում է կուսակցական կազմակերպությունների աշխա-
տանքի կարևոր լծակը, որ դա օգտակար է ոչ միայն այն ժամանակ, երբ ար-
դեն առկա են բացահայտ վրիպումներն ու սխալները, այլ նաև պրոֆիլակտիկ
նկատառումներով, աշխատանքի բարելավման հնարավորությունների ոչ լրիվ
օգտագործման դեպքում։ «Եթե մենք այսօր ձգտում ենք հասնել բարձր, ես կա-
սեի, բարձրագույն կազմակերպվածության, ցանկանում ենք ամրապնդել կար-
գապահությունը բոլոր մակարդակներով՝ աշխատանքային կարգապահությունը,
տեխնոլոգիական կարգապահությունը, պլանային կարգապահությունը, ապա
մեզ հարկավոր է շահագրգռված, սևեռուն քննադատական հայացք գործերի վի-
ճակի նկատմամբ։ Դա կօգնի ապահովել դրա համար անհրաժեշտ հասարա-
կական-քաղաքական կլիմա։ Կլիմա, որը կառաջացներ ավելի արդյունավետ,
ավելի արտադրողաբար, ավելի լավ աշխատելու ձգտում, կստեղծեր անհան-
դուրժողականության մթնոլորտ գործալիքների ու ծույլերի նկատմամբ, ան-
փութության և անտնտեսվարության, աչքակապության և հավելագրումների
յուրաքանչյուր փաստի նկատմամբ»։ Ըստ որում, ինչպես նշում է ընկեր Բրեժ-
նևը, շատ կարևոր է, որ քննադատությունը լինի կոնստրուկտիվ, բարյացակամ,
մարդկանց օգնի վերացնելու թերությունները։ Առանձնապես անհրաժեշտ է
զարգացնել ներքևից եկող քննադատությունը, բոլոր պայմանները ստեղծել, որ
յուրաքանչյուրը կարողանա ժողովներում, մամուլի էջերում ազատ, բացեիբաց
խոսել թերությունների մասին, որ աշխատավորների քննադատական դիտո-
ղությունններն ու առաջարկները հանդիպեն ամենաակտիվ պաշտպանության։
Քննադատության և ինքնաքննադատության ճիշտ օգտագործումը կուսակցա-
կան աշխատանքի ոճի կատարելագործման, ՍՄԿԿ XXV համագումարի առաջա-
դրած խնդիրների հաջող լուծման կարևորագույն պայմաններից մեկն է։ Ահա թե
ինչու հանրապետության կուսակցական կազմակերպությունները պարտավոր
են այսուհետև ևս լայնորեն ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատու-
թյունը, հասնել այն բանին, որ ավելի համարձակորեն բացահայտվեն իրենց
կենսագործունեության մեջ տեղ գտած թերությունները, սխալներն ու վրիպում-
ները և, որ ամենագլխավորն է, կոնկրետ միջոցներ ձեռնարկվեն դրանք շուտա-
փույթ վերացնելու, այդ գործում բոլոր աշխատավորների պատասխանատվու-
թյունը բարձրացնելու համար։
Մալայա զեմլյա և Վերածնունդ գրքերը նվիրված են կոնկրետ իրադարձու-
թյունների, հարուստ են դիտարկումներով ու փաստերով, այսինքն՝ իրենց
սկզբնահիմքում վավերագրական են։ Ընկեր Բրեժնևը վերոհիշյալ երկերում
անդրադարձել է տասնամյակներ առաջ կատարված անցքերին, պատերազմի

դաժան կրակով խանձված ժամանակներին։ Սակայն խոսելով անցած-գնացածի մասին, վերհիշելով դրանք, նա միշտ խորհում է ներկայի և ապագայի մասին, անցած տարիների դասերն ի սպաս դնում արդիականությանը։ Կուսակցական հարուստ աշխատանքի փորձ ունեցող հմուտ ղեկավարը յուրաքանչյուր փաստ, յուրաքանչյուր փաստաթուղթ վերլուծում է այն հաշվով, որ նկարագրածից արված եզրակացություններն օգտագործվեն ներկայի, աշխատանքի կազմակերպման արդի պրակտիկայի համար, կառավարման մեթոդների և, որ գլխավորն է՝ մարդկանց հետ աշխատելու ոճի կատարելագործման նպատակով։

Ընկեր Բրեժնևի գրքերում քննարկվում են կարևոր հարցեր, որոնք հրատապ նշանակություն ունեն կուսկազմակերպությունների ամենօրյա գործունեության համար, սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի ղեկավարման մակարդակի բարձրացման համար։ Դրանցում ընդհանրացված է կուսակցական, քաղաքական աշխատանքի հսկայական ուսանելի փորձը, բացահայտված են ղեկավարման լենինյան ոճի ու արվեստի վառ կողմերը։ Դրանք, որ գաղափարական հզոր զենք են կուսկազմակերպությունների և բոլոր կոմունիստների համար, հարստագույն նյութ են տալիս աշխատավորների կոմունիստական դաստիարակության, կուսակցական-գաղափարական աշխատանքների առավել բարելավման համար։ Մալայա զեմլյա և Վերածնունդ գրքերը կուսակցական-քաղաքական աշխատանքի կենդանի փորձի գանձարան են, մոբիլիզացնող մեծ ուժի փաստաթղթեր։ Դրանցում ամփոփված հարուստ փորձի հմտորեն օգտագործումը մեծ օգնություն կլինի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին՝ ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումների իրականացման, հնգամյակի երրորդ տարվա և ամբողջապես տասներորդ հնգամյակի պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում։ Այդ ստեղծագործությունները, որոնք սկզբից մինչև վերջ տոգորված են գաղափարական պայծառ լավատեսությամբ, կոչ են անում հավատարիմ լինել սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներին, ոգեշնչված աշխատանքով բազմապատկել հայրենիքի պաշտպանական հզորությունը, սովորեցնում են ապրել, աշխատել և պայքարել լենինաբար։ Դրանք պարտավորեցնում են կուսակցական յուրաքանչյուր աշխատողի ուշադրությունը սևեռել կոմունիստական շինարարության հրատապ հարցերի, առօրյա խնդիրների լուծման վրա, պահանջում են անհաշտ վերաբերմունք ցուցաբերել թերությունների նկատմամբ, հասնել բոլոր ռեզերվների և հնարավորությունների առավել օգտագործմանը։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների, գաղափարական ճակատի բոլոր աշխատողների կարևորագույն խնդիրն է՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևի Մալայա զեմլյա և Վերածնունդ հուշագրությունների վսեմ գաղափարներով մարդկանց համակել կուսակցության և ժողովրդի ստեղծագործական ուժերի նկատմամբ այն անսահման հավատով, որոնցով այնպես տոգորված են այդ երկերը։

Ուսումնասիրելով ընկեր Լ. Ի. Բրեժնևի նշված ստեղծագործությունները, յուրաքանչյուր կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական աշխատող, գաղափարական ճակատի յուրաքանչյուր մարտիկ իր տեղամասում պետք է կենսագործի ընկ. Բրեժնևի ցուցումները, հասնի կազմակերպչական և գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման։ Իսկ դրա գնահատման գլխավոր չափանիշը մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվության հետագա բարձրացումն է, աշխատավորական կոլեկտիվների առջև դրված խնդիրների հաջող լուծումը։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ստեղծագործությունները, խորհուրդներն ու հանձնարարականները ընկալելով որպես գործողության մարտական ղեկավարություն, որպես կուսակցական աշխատանքի ծրագիր, մեր հանրապետության կուսկազմակերպությունները, բոլոր աշխատավորները ջանք չեն խնայում դրանք կյանքում հաջողությամբ իրագործելու, իրենց աշխատանքի ոճն ու մեթոդներն ավելի համառ հետևողականությամբ կատարելագործելու, ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները անթերի կատարելու համար։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԻ ԿԵՆՍԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Լ. Ա. ՍԼԵՊՈՎ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԸ պատմական նոր պայմաններում ստեղծեց ամբողջական ուսմունք կուսակցության՝ բանվոր դասակարգի հեղափոխական կազմակերպության բարձրագույն ձևի մասին, բազմակողմանիորեն մշակեց նրա տեսական ու կազմակերպական հիմունքները, բոլշևիկյան ստրատեգիան ու տակտիկան, կուսակցական կյանքի նորմերը, կուսակցական ղեկավարման սկզբունքները։

Անշեղորեն պաշտպանելով Մարքսի և Էնգելսի գաղափարն այն մասին, որ կապիտալիստական հասարակությունը սոցիալիստականի վերափոխելու համար պրոլետարիատը պետք է ունենա ինքնուրույն քաղաքական կուսակցություն, Վ. Ի. Լենինը հիմնավորեց այն հայտնի դրույթը, թե իմպերիալիզմի դարաշրջանում, երբ օրակարգում դրված է պրոլետարական հեղափոխությունը, երբ այն դարձել է անմիջական հեղափոխական պրակտիկայի խնդիր, բանվոր դասակարգին հարկավոր է նոր տիպի կուսակցություն, II ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական կուսակցություններից արմատապես տարբերվող կուսակցություն։

Լենինը նշում էր, որ II ինտերնացիոնալի կուսակցությունների տիպի է եղել «... այն կուսակցությունը, որն իր շարքերում հանդուրժել է օպորտունիզմը, որն ավելի ու ավելի է կուտակվում «խաղաղ» ժամանակաշրջանի տասնամյակների ընթացքում, բայց որը մնում է ծածուկ, հարմարվում է հեղափոխական բանվորներին, նրանցից ընդօրինակում է նրանց մարքսիստական տերմինոլոգիան, խուսափում է ամեն տեսակ պարզ սկզբունքային սահմանազատումից։ Այդ տիպն իր ժամանակն ապրել է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 127—128)։

Ի հակադրություն այդ կուսակցությունների, նկատել է Լենինը, պրոլետարիատին այժմ «... հարկավոր են նոր կուսակցություններ, ուրիշ կուսակցություններ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 285)։ Եվ պրոլետարիատի առաջնորդը ոչ միայն հիմնավորեց այդպիսի կուսակցության մասին ուսմունքը, այլև ստեղծեց այն։ Լենինի աճեցրած և դաստիարակած կոմունիստական կուսակցությունը մարմնավորում է բանվոր դասակարգի կուսակցության նկատմամբ մարքսիստական ավանդույթների և հայացքների շարունակությունն ու զարգացումը պատմական նոր պայմաններում։ Եվ հիմնազուրկ են բուրժուական այնպիսի կեղծարարների փորձերը, ինչպիսիք են Ռ. Դանիելսը, Վ. Վոլֆը և ժամանակակից ռևիզոնիստները (Ա. Ռոսսանդա, Ռ. Գարոդի, Է. Ֆիշեր և ուրիշներ), որոնք ճգնում են նոր տիպի կուսակցության մասին լենինյան ուսմունքը մեկնաբանել այն իմաստով, թե իբր այն հակասում է կուսակցության նկատմամբ մարքսիստական հայացքներին։

Վ. Ի. Լենինն ուսուցել է, որ նոր տիպի կուսակցությանը բնորոշ են հավա-

տարմությունը մարքսիստական ուսմունքին, հետևողական հեղափոխականությունը ստրատեգիայում ու տակտիկայում, կազմակերպական վարքագծում։ Սկզբից իսկ նրա կարևորագույն հատկանիշներն էին անհաշտելիությունը կապիտալիստական կարգերի և կեղեքման բոլոր ձևերի նկատմամբ, անձնվիրությունը բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերի հանդեպ, սոցիալիստական հեղափոխության ուղիով անշեղ ընթանալը, ստեղծագործական վերաբերմունքը հեղափոխական տեսության նկատմամբ, որի գործողության ուղեցույցն է դեմոկրատական կայուն սկզբունքներով և կուսակցական կյանքի նորմերով ապահովվող բարձր կազմակերպվածությունը։

Լենինյան կուսակցության համար բնորոշ է նրա անհաշտելիությունը բուրժուական գաղափարախոսության հատուկ օպորտունիզմի նկատմամբ, որը հրաժարվում է պայքարի հեղափոխական մեթոդներից, հասարակության արմատական վերափոխումներից։ Օպորտունիզմը, նշել է Լենինը, նահանջ է պրոլետարական դասակարգային տեսակետից, մոռացումն է այն բանի, որ «... դասակարգերի ամենաէական, «վճռական» շահերը բավարարվել կարող են միայն արմատական քաղաքական բարեփոխումներով ընդհանրապես. մասնավորապես, պրոլետարիատի հիմնական տնտեսական շահը բավարարվել կարող է միայն քաղաքական հեղափոխության միջոցով, որ բուրժուազիայի դիկտատուրան փոխարինում է պրոլետարիատի դիկտատուրայով» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 58—59)։

Կոմունիստական կուսակցությունն իր այս կարևորագույն հատկանիշներով արմատապես տարբերվում է ռեֆորմիստական կուսակցություններից, ինչպես նաև աղանդավորական կազմակերպություններից։ Դրանք լիովին համապատասխանում են կապիտալիզմի նոր, իմպերիալիստական փուլի դասակարգային պայքարի պահանջներին, համաշխարհային բանվորական շարժման այն օրինաչափություններին, որոնք բնորոշ են այդ դարաշրջանին։ Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի կուսակցության հարցը դիտում էր նոր դարաշրջանում մարդկության առջև ծառացած արմատական պրոբլեմների հետ սերտ կապի մեջ, դարաշրջան, որն իր հետ բերեց համաշխարհային ազատագրական շարժման բնույթի, տեմպերի ու մասշտաբների որակական փոփոխություններ։ Հաշվի առնելով սոցիալ-տնտեսական իրադրության մեջ կատարված փոփոխությունները՝ Վ. Ի. Լենինն է՛լ ավելի զարգացրեց մարքսիզմի հիմնական գաղափարները բանվոր դասակարգի կուսակցության մասին։

Կուսակցությունը դիտելով որպես բանվոր դասակարգի ձեռքին հուսալի զենք սոցիալիստական հեղափոխության, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում, Լենինն անխոնջ կերպով հոգում էր, որ այդ զենքը լինի առավել կատարյալ ու արդյունավետ, լիովին համապատասխանի հասարակական-պատմական զարգացման ընթացքում ծնունդ առած նոր պահանջներին։ Պրոլետարիատի առաջնորդը և ուսուցիչն անում էր ամեն բան, որպեսզի կուսակցական կազմակերպությունը հասցնի «կատարելության բարձրագույն աստիճանին» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 4, էջ 245)։

Ի տարբերություն բուրժուական ու մանրբուրժուական կուսակցությունների, պրոլետարական կուսակցությունը պետք է ունենա գաղափարախոսական ու տակտիկական հիմքեր, որոնք արտահայտված լինեն կուսակցության ծրագրում և, Լենինի բնորոշմամբ, նշանակեն «հիմնական գաղափարական հայացքների պարզություն», «գործողության այս կամ այն պրակտիկ եղանակների ճշգրիտ որոշակիություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 473)։ Առանց ծրագրի և տակտիկական հայացքների, կուսակցությունը չի կարող լինել որևէ չափով ամբողջական քաղաքական օրգանիզմ, որն ընդունակ լինի իրադարձությունների բոլոր և ամեն տեսակի շրջադարձի պայմաններում միշտ մնալ որպես մարտական կազմակերպություն։

Գաղափարախոսական ու քաղաքական (տակտիկական) հիմունքների հետ միասին բանվոր դասակարգի կուսակցությունը պետք է ունենա կազմակերպական որոշակի հայացքներ, տեսական այնպիսի դրույթներ, որոնք բնորոշում են կուսակցության հիմնական տիպը։ Կազմակերպական սկզբունքները ելակետային դրույթներն ու գաղափարներն են կուսակցության դասակարգային էության,



բանվորական շարժման մեջ նրա դերի, նրա կառուցվածքի ու գործունեության մասին։ Դրանք կուսակցության կազմակերպական հարաբերությունների վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի հիմնական հայացքներն են, որոնք ապահովում են կուսակցության բարձր կազմակերպվածությունը, նրա կողմից բանվոր դասակարգի, աշխատավորական լայն զանգվածների առաջնորդի և ղեկավարի դերի կատարումը։

Ի տարբերություն բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունների, որոնք չունեն որևէ չափով հաստատուն կազմակերպական սկզբունքներ, մարքս-լենինյան բանվորական կուսակցությունները, գաղափարական ու տակտիկական հիմունքների (սկզբունքների) հետ միասին հսկայական նշանակություն են տալիս նաև կազմակերպական սկզբունքներին։ Հակառակ դրան, ռեֆորմիստական մանրբուրժուական կուսակցությունները թերագնահատում են կազմակերպության նշանակությունը պայքարի համար, նրանք դուրս են նետում պրոլետարիատի դասակարգային կազմակերպությունների համակարգում կուսակցության ղեկավար դերի մասին թեզը, իսկ պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճումից հետո նրանք ժխտում են կուսակցության ղեկավար դերը սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմում։ Նրանք պնդում են, թե կուսակցության պարտականությունը լոկ այն է, որ «նըպաստի նրա դասակարգային ինքնուրույն կազմակերպությունների զարգացմանը», այլ ոչ թե այն, որ ուղղություն տա նրանց գործունեությանը, կոորդինացնի բոլոր կազմակերպությունների աշխատանքն առավել արդյունքի հասնելու համար։ Ռուսաստանում մենշևիկները, նրանց հետ միասին նաև տրոցկիստներն ասում էին, թե կազմակերպական հարցն առհասարակ արժանի չէ ուշադրության, քանի որ նրա ամենաանհետաձգելի խնդիրները «լուծվում են քաղաքական պայքարի պրոցեսին համընթաց»։ Կուսակցությունն ամենևին էլ չպետք է լինի կազմակերպված և ամբողջական, այլ կարող է, իբր, իրենից ներկայացնել «կուսակցական մտքի բոլոր երանգների ու հոսանքների հանրագումար»։

Վ. Ի. Լենինը, մեծ նշանակություն տալով կազմակերպական հարցին, իր աշխատություններում և, ամենից առաջ, Մի քայլ առաջ, Երկու քայլ ետ գրքում, հիմնավորեց նոր տիպի պրոլետարական կուսակցության կազմակերպական սկզբունքները. բոլշևիկների կուսակցությունը բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից մասն է, կազմակերպված ջոկատը, որը կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա, նա պրոլետարիատի կազմակերպման բարձրագույն ձևն է, սերտորեն կապված է մասսաների հետ, իր շարքերը մաքրում է օպորտունիստներից և համարվում է միաձույլ ամբողջություն։ Այս սկզբունքները կրում են օբյեկտիվ, գիտականորեն հիմնավորված, օրինաչափ բնույթ։ Բանվոր դասակարգի պատմական առաքելության բարձունքում լինելու համար կուսակցությունը պետք է կառուցված լինի իսկական հեղափոխական սկզբունքների վրա։

Կուսակցության, նրա կազմակերպական սկզբունքների մասին լենինյան ուսմունքը կենսական մեծ ուժ ունի, այն ստուգվել է, ամենից առաջ, Լենինի ստեղծած բոլշևիկյան կուսակցության գործունեությամբ։ Բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիության հետ դաշն կնքած, կուսակցության ղեկավարությամբ, կատարեց սոցիալիստական հեղափոխությունը, կառուցեց սոցիալիզմ և այժմ հաջողությամբ կառուցում է կոմունիստական հասարակություն։ Համապատասխանելով պատմական զարգացման հիմնական պահանջներին, բանվոր դասակարգի կուսակցության մասին լենինյան ուսմունքը պատմական բոլոր փուլերում օգնել է՝ փնտրելու գործունեության անհրաժեշտ կոնկրետ ձևեր ու մեթոդներ, որոնք առավելագույն չափով համապատասխանում են պայքարի այս կամ այն փուլին և այժմ անհրաժեշտ պայման են իրականացնելու կուսակցության ղեկավար դերը կոմունիզմի կառուցման գործում։

Ոչ միայն մեր երկրի պրակտիկան, այլև համաշխարհային-պատմական փորձը հաստատում են, որ կոմունիստական կուսակցությունն իր պատմական միսիան հաջող է կատարում ամենից առաջ նրա շնորհիվ, որ պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարի ընթացքում պահպանում է իր աներեր հավատարմությունը հասարակու-

թյան պրոգրեսիվ վերակառուցման գործում կուսակցության ղեկավար դերի մարքս-լենինյան ուսմունքին, հանդես է գալիս որպես մասսաների ղեկավար ու կազմակերպիչ։

Պրոլետարական կուսակցության, նրա մասին լենինյան ուսմունքի կենսական մեծ ուժը հաստատված է նրանով, որ ՍՄԿԿ-ի գաղափարական, տակտիկական ու կազմակերպական սկզբունքներով են կառուցվել աշխարհի շատ երկրներում մեծ Հոկտեմբերի հեղափոխական ալիքով առաջացած կոմունիստական ու բանվորական կուսակցությունները։ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո բոլշևիզմը դարձավ համաշխարհային երևույթ։ Նա միջազգային կոմունիստական շարժմանը տվեց «... գաղափար, տեսություն, ծրագիր, տակտիկա, որ կոնկրետորեն, պրակտիկ կերպով տարբեր է սոցիալ-շովինիզմից ու սոցիալ-պացիֆիզմից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 371)։

Ամբողջ աշխարհի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կողմից բանվոր դասակարգի լենինյան տիպի կուսակցության ընդունումը մի երկրի փորձի մեխանիկական փոխադրումը չէր մեկ այլ երկիր, առավել ևս՝ առանձին գաղափարական գործիչների քմահաճույքը չէր և, ինչպես պնդում են պատմության բուրժուական կեղծարարներն ու ժամանակակից ռևիզիոնիստները՝ սոցիալիզմի ռենեգատները, հետևանք այն բանի, թե իբր այլ երկրների կոմունիստական կուսակցությունները «ռուսական ուժի» ծնունդ են։ Մարքս-լենինյան տիպի կոմունիստական ու բանվորական կուսակցությունները աշխարհի շատ երկրներում ստեղծվել են օրինաչափորեն և հեղափոխական պայքարը հաջողությամբ ղեկավարում են իրենց երկրների սոցիալ-դասակարգային զարգացման հետևանքով։ Այն փաստը, որ այդ կուսակցությունների ծնունդն արագացավ Ռուսաստանի Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցությամբ, ամենևին էլ չի նշանակում, թե նրանք իրենց ժողովուրդների զավակը, իրենց բանվոր դասակարգի ավանգարդը չեն։ Եվրոպայի կոմունիստական կուսակցությունների բեռլինյան կոնֆերանսում (1976 թ. հունիս) արտասանած իր ճառում Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն ծնունդն է այն երկրի բանվորական շարժման, որտեղ նա գործում է»։

Ինչ վերաբերում է նոր տիպի կուսակցության կազմակերպական սկզբունքներին, ապա կոմունիստական կուսակցությունները դրանցով զինվել են բացառապես այն պատճառով, որ դա թելադրվում էր պատմական անհրաժեշտությամբ, հասարակական զարգացման և բանվորական շարժման ընդհանուր պատմական օրինաչափությունների ներգործությամբ։ Կուսակցության, նրա կազմակերպական ու գաղափարական սկզբունքների, կուսակցական կյանքի նորմերի մասին լենինյան ուսմունքն իր էությամբ ինտերնացիոնալ է, սակայն հաշվի է առնում տվյալ երկրի կոնկրետ պատմական և ազգային առանձնահատկությունները։ Բանվոր դասակարգի մարքս-լենինյան տիպի կուսակցությունները, առաջնորդվելով հեղափոխական ուսմունքով, ապահովեցին Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի (Կուբա) մի շարք երկրների անցումը սոցիալիզմի ուղին։ Կուսակցության մասին լենինյան ուսմունքի կենսականությունն իր մարմնավորումն է գտնում սոցիալիզմի համաշխարհային սիստեմում, միջազգային կոմունիստական շարժման աճի մեջ։

Կուսակցության, նրա գաղափարական ու կազմակերպական սկզբունքների մասին լենինյան ուսմունքը հաստատվում է ինչպես բանվոր դասակարգի բացահայտ թշնամիների, այնպես էլ բանվորական շարժման ներսում քողարկված թշնամիների դեմ մղվող պայքարում։ Վ. Ի. Լենինը, մարքսիստ-լենինյանները հանուն կուսակցության համառ պայքար էին մղում մենշևիկների, տրոցկիստների, Երկրորդ ինտերնացիոնալի լիդերների դեմ։ Աջ օպորտունիստները քամահրում են պատմության մատերիալիստական ըմբռնումը, անտեսելով այն գործոնը, ղեկավար և ուղղություն տվող դերը, որ «... կարող են և պետք է խաղան հեղաշրջման նյութական պայմանները գիտակցած և առաջավոր դասակարգերի գլուխ կանգնած կուսակցությունները» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 11, էջ 38)։ Իսկ «ձախ» օպորտունիստները, հեղափոխական ֆրազի կողմնակիցները, բացարձակացնելով սուբյեկտիվ գործոնը, կուսակցությանը վերածում են դավադրական, աղանդավորական կազմակերպության։ Թ՛ե մե-



կը, թե՛ մյուսը բանվոր դասակարգին խիստ բացասական ծառայություն են մատուցում. նրանք, Լենինի խոսքերով ասած, «... արգելակում են ամենակարևոր, ամենակենսական գործը՝ բանվորների միաձուլումը խոշոր, ուժեղ, լավ գործող, բոլոր տեսակի պայմաններում լավ գործող կազմակերպությունների մեջ, որոնք տոգորված են դասակարգային պայքարի ոգով, պարզ գիտակցում են իրենց նպատակները, դաստիարակվում են իրոք մարքսիստական աշխարհայեցողությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 16, էջ 456—457)։

Ժամանակակից ռևիզիոնիստները, նոր տիպի կուսակցության նկատմամբ շարունակելով օպորտունիստների բռնած խայտառակ գիծը, ձգտում են բոլոր միջոցներով և ուժերով վարկաբեկել կուսակցությանը՝ որպես դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևի։ Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև գաղափարախոսական պայքարի սրման պայմաններում, երբ բուրժուական գաղափարախոսները, հակակոմունիստները ճգնում են բանվոր դասակարգի ձեռքից խլել նրա հիմնական զենքը՝ քաղաքական կազմակերպություններն ի դեմս կոմունիստական կուսակցությունների, սոցիալիզմի ռենեգատները զրպարտում են կոմունիստական ու բանվորական կուսակցություններին, ձգտելով թուլացնել կոմունիստական շարժումը և ինչ-որ չափով ուժերի հարաբերակցությունն աշխարհում փոխել հօգուտ կապիտալիստների։

Բանվոր դասակարգի կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի նենգափոխման և խեղաթյուրման գլխավոր ուղղությունը լենինյան տիպի կուսակցության ժխտումն է, այն տարտամ, ամորֆ, բնակչության տարբեր խավերից, այդ թվում և մանրբուրժուական և նույնիսկ բուրժուական խավերից կազմված կուսակցությամբ փոխարինելը։ Ռևիզիոնիստները պրոպագանդում են իդեալիստական «սոցիալիզմի մոդելը» և դրան համապատասխան՝ բանվոր դասակարգի կուսակցության այնպիսի ձևեր, որոնք ամեն ինչով նման լինեն հին, վաղուց արդեն իրենց դարն ապրած II ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական կուսակցություններին։ Քննադատելով մարքս-լենինյան կուսակցություններին, դրանք ոչ պիտանի համարելով զարգացած կապիտալիզմի երկրների համար, նրանք հանդես են գալիս հօգուտ սահմաններ չունեցող կազմակերպության՝ այսպես կոչված «քաղաքական կոնֆեդերացիայի ձևով», որոնք իրենց մեջ ընդգրկում են դասակարգային տեսակետից խառնիճաղանջ տարրեր և մանրբուրժուական, նույնիսկ բուրժուական հեղհեղուկ տարրեր։

Այսպես, Ռոժե Գարոդին (Ֆրանսիա), Է. Ֆիշերը և Ֆ. Մարեկը (Ավստրիա) և ուրիշ ռենեգատներ առաջարկում են կազմակերպված, միասնական դասակարգային կուսակցությունները փոխարինել «ձախ» կոալիցիաներով, որտեղ ոչինչ չմնա մարտնչող կուսակցությունից, ղեկավար-կուսակցությունից։ Ռևիզիոնիստները պնդում են, թե Լենինը կուսակցությունն ստեղծել է Ռուսաստանում, չհենվելով ընդհանուր բնույթի որևէ օրինաչափության վրա, սոսկ ղեկավարվելով Ռուսաստանի յուրահատուկ ներքին պայմաններով։ Այդ պատճառով էլ, իբր, կուսակցության մասին նրա ուսմունքը պիտանի չէ այլ երկրների, հատկապես զարգացած կապիտալիզմի երկրների համար։ Լավագույն դեպքում, պնդում են նրանք, նոր տիպի կուսակցությունը պիտանի է թույլ զարգացած երկրների համար։ Դրանով իսկ ժամանակակակից ռևիզիոնիստները նոր տիպի կուսակցությունը, որ հիմնել էր Լենինը իմպերիալիստական նոր դարաշրջանին համապատասխան, հայտարարում են որպես հիմնականում ռուսական յուրահատուկ երևույթ՝ կապված Լենինի կողմից մարքսիզմի ինչ-որ հատուկ մեկնաբանության հետ։ Է. Ֆիշերը, նոր տիպի կուսակցությունը ոչ պիտանի համարելով արևմտա-եվրոպական երկրների համար, առաջարկում էր այն փոխարինել «ձախ» կոալիցիայով, հնարավոր համարում համախոհների և մարտիկների նոր միավորումների կազմավորումը մարքսիստներից և ոչ մարքսիստներից, կոմունիստներից ու սոցիալ-դեմոկրատներից, կաթոլիկներից և բողոքականներից...

Ֆիշերից հետո Ռ. Գարոդին փորձեց ապացուցել, որ կուսակցության մարքս-լենինյան տիպը իբր «գիտական չէ», որ այն պարտադրվել է մյուս եր-

Միայն այն ժամանակ, երբ մեր երկրում հաղթանակեց սոցիալիզմը և պայմաններ ստեղծվեցին, զարգացած սոցիալիստական հասարակության աստիճանին հասնելու համար, իրադրությունը փոխվեց։ Այժմ արդեն չէր կարելի հին հասկացություններով բացատրել նոր երևույթները, որոնք կյանքում առաջացել էին հասուն սոցիալիստական հասարակության և երկրում դասակարգային հարաբերությունների փոփոխման շնորհիվ։ Նոր պայմաններում խիստ շաբլոն կլիներ կուսակցությունը դիտել որպես միայն բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպություն։

Միաժամանակ, ինչպես նշվում էր կուսակցության որոշումներում, սխալ կլիներ չտեսնել և այն, որ կուսակցության դասակարգային, պրոլետարական բնույթը մնում է նույնը։ Կուսակցությունն ամենևին էլ չէր կորցրել պրոլետարական էությունն իր գաղափարախոսության, սկզբունքների, խնդիրների ու նպատակների տեսակետից, քանի որ հասարակության աշխատավորական խավերը սոցիալիստական վերափոխությունների ազդեցության ներքո անցել էին բանվոր դասակարգի դիրքերը և ոչ թե այս վերջինն էր անցել նրանց տեսակետին։ Բացահայտելով և հիմնավորելով բանվոր դասակարգի կուսակցության աստիճանական անցումն ամբողջ ժողովրդի կուսակցության, ՍՄԿԿ XXV համագումարը նշեց. «Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ կոմունիստական կուսակցությունը դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցություն, նա բնավ չի կորցնում իր դասակարգային բնույթը։ Իր էությամբ ՍՄԿԿ-ն եղել է և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 93)։

Կուսակցության նոր բնորոշման այս դիալեկտիկան արտացոլում է այն բնական-պատմական գործոնը, որ բանվոր դասակարգը կոմունիզմի կառուցման գործում ևս մնում է որպես առաջատար ուժ։

Կուսակցության զարգացումը ենթարկվում է դիալեկտիկական-մատերիալիստական օրինաչափություններին։ Նա սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարի բոլոր փուլերում շարունակ զարգացրել ու կատարելագործել է իր գործունեության կոնկրետ ձևերն ու մեթոդները, կուսակցության մասին լենինյան ուսմունքը ստեղծագործաբար կիրառել իրականության նկատմամբ, հաշվի առնելով այս կամ այն փուլի իրադրության յուրահատկությունը, քաղաքական խնդիրները։

Ներկայումս կոմունիստական շինարարության մասշտաբներն ու բարդությունը պահանջում են ուժեղացնել կուսակցության ղեկավար դերը։ Կուսակցության ղեկավար դերի մեծացումը օբյեկտիվ օրինաչափություն է, որը գործում է հեղափոխական պայքարի բոլոր փուլերում, բայց հատուկ նշանակություն է ստացել զարգացած սոցիալիզմի և կոմունիստական շինարարության փուլում։ Այս շրջանում առանձնապես մեծանում է կուսակցության վերափոխիչ գործունեությունը, բարձրանում է աշխատավորական մասսաների ակտիվությունը, ուժեղանում գիտական կոմունիզմի նշանակությունը, նրա ստեղծագործական զարգացման ու պրոպագանդման անհրաժեշտությունը։ Այս ամենը բարձրացնում է կուսակցության դերն ու նշանակությունը, նրա մեծ ուժը սովետական հասարակության կյանքում։ Եվ մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն՝ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի գլխավորությամբ հաջողությամբ կատարում է իր ղեկավար դերը, կանգնած է սովետական ժողովրդի առաջնորդի և ղեկավարի իր բարձունքում։

Կուսակցության ղեկավարությամբ բազմազգ սովետական ժողովուրդը եղբայրական համագործակցությամբ հաջողությամբ կառուցում է կոմունիստական հասարակություն։ Սովետական ժողովուրդն ու նրա մարտական ավանգարդը՝ ՍՄԿԿ-ն, դրանով իսկ իրենց գլխավոր ավանդն են ներդնում համաշխարհային հեղափոխական պրոցեսում, իմպերիալիզմի դեմ հանուն խաղաղության, ազգային անկախության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար բոլոր երկրների աշխատավորների մղած պայքարում։ Սովետական ժողովրդի, նրա լենինյան կուսակցության մեծ սխրանքը ոգեշնչող օրինակ է բոլոր նրանց համար, ովքեր ընտրել են առաջընթացի, երջանկության, սոցիալիզմի և կոմունիզմի ուղին։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱ-ՔԱՂԱ-ՔԱԿԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Դ. ԴԱՐԲԻՆՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ դաստիարակությունը մեր կուսակցությունը համարում է կոմունիստական շինարարության բաղկացուցիչ մասը։ Եվ դա հասկանալի է։ Կոմունիզմն անհնարին է ո՛չ միայն առանց համապատասխան նյութատեխնիկական բազայի, այլև առանց համակողմանի զարգացած, հոգևոր հարստությունը, բարոյական մաքրությունը և ֆիզիկական կատարելությունը ներդաշնակորեն զուգակցող անհատի։ Կուսակցության գաղափարական գործունեության արդյունավետության բարձրացման անհրաժեշտ պայմանը, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը, «կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ, այսինքն՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 111)։

Գաղափարաքաղաքական դաստիարակությունը, այսպիսով, նոր մարդու ձևավորման բարդ ու բազմակողմանի պրոբլեմի էական բաղադրամասն է։ Նրա խնդիրները փոփոխվում, ձևափոխվում և կոնկրետանում են՝ մեր հասարակության զարգացման տարբեր փուլերի պահանջներին և սոցիալական խմբերի առանձնահատկություններին համապատասխան։ Սակայն նոր մարդու գաղափարաքաղաքական համոզմունքների ձևավորումը ոչ թե տարերային, այլ կառավարվող պրոցես է։ Հաշվի առնելով կոմունիստական շինարարության օբյեկտիվ պահանջները, կուսակցությունը մշակում է գաղափարաքաղաքական աշխատանքի ստրատեգիան ու տակտիկան, առաջադրում երկրի զարգացման տվյալ փուլում գաղափարական դաստիարակության հիմնական խնդիրները և գլխավորում դրանց լուծումը։ ՀամԼԿԵՄ XVIII համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մեր հայրենիքի այսօրվա կարևորագույն հատկանիշներից մեկը պայքարն է արդյունավետության և որակի համար։ Դա, եթե ուզում եք, նաև սովետական մարդկանց մի ամբողջ սերնդի դաստիարակության ծրագիրն է»։

Դրա հետ միասին, գաղափարաքաղաքական դաստիարակությունը լուծում է նաև մի շարք այնպիսի հիմնական խնդիրներ, որոնցով պայմանավորված նրա բովանդակությունը պահպանվում է կոմունիստական հասարակարգի կառուցման ողջ ժամանակաշրջանում։ Կոմունիստական դաստիարակության պրոբլեմը հենց այդ ասպեկտով էլ քննարկվում է սույն հոդվածում։

***

Սոցիալիստական հասարակության անդամների գաղափարաքաղաքական դաստիարակության խնդիրները և բովանդակությունն օբյեկտիվորեն բխում են արդի ժամանակաշրջանի պահանջներից, պայմանավորված են մեր դարաշրջանի սոցիալ-դասակարգային ու քաղաքական կառուցվածքով։ Մեր դարաշրջանը կապիտալիզմի և սոցիալիզմի միջև մղվող սուր, անզիջում պայքարի, համաշխարհային մասշտաբով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարա-

շրջան է։ Կապիտալի և աշխատանքի միջև մղվող այդ գոյամարտն իր խոր դրոշմն է դնում հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա։ Ուստի հասարակական կյանքի ոչ մի երևույթ հնարավոր չէ քննարկել և գնահատել առանց նկատի ունենալու այդ վիթխարի հեղափոխական պրոցեսը, որը հասարակական առաջընթացի գլխավոր բովանդակությունն է մարդկության պատմության արդի փուլում։ Կապիտալիստական և սոցիալիստական հասարակական-տնտեսական սիստեմների միջև մղվող պայքարն ըստ էության դասակարգային հակամարտության դրսևորումն է՝ կապիտալի և աշխատանքի միջև համաշխարհային ասպարեզում։ Պետականորեն կազմակերպված հակամարտ դասակարգերի, հետևաբար նաև՝ նրանց միջև միջազգային ասպարեզում հակամարտ հակասությունների առկայության հենց այդ օբյեկտիվ իրավիճակն էլ գաղափարաքաղաքական դաստիարակության անհրաժեշտությունը, բովանդակությունը և խնդիրները որոշող կարևոր գործոններից է։

Մյուս կողմից, աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության անհրաժեշտությունը պայմանավորված է նաև սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության ներքին խնդիրներով ու օրինաչափություններով։ Ավելին, կոմունիստական հասարակարգի կառուցման ընդհանուր նպատակը և դրան հասնելու ճանապարհին հասարակության առջև ծառացող կոնկրետ խնդիրները պայմանավորում են գաղափարաքաղաքական աշխատանքի բովանդակությունը։

Դասակարգային հասարակության մեջ սոցիալական նպատակներն ապադասակարգային լինել չեն կարող, դրանք անխուսափելիորեն ստանում են քաղաքական բնույթ և, որպես այդպիսիք, վիթխարի ազդեցություն են ունենում մարդկանց գործունեության բոլոր կողմերի վրա։ Կոմունիզմն անդասակարգ հասարակություն է, բայց որպես տեսություն հանդիսանում է աշխատավոր դասակարգերի շահերն արտացոլող հայացքների գիտականորեն հիմնավորված համակարգ։ Ահա թե ինչու կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարը Վ. Ի. Լենինը համարում է դասակարգային այն չափանիշը, որից ելնելով պետք է գնահատել հասարակության հոգևոր կյանքի երևույթները և մարդկանց պրակտիկ գործունեությունը սոցիալիզմի ժամանակ։ Նա նշել է. «... բարոյականությունն այն է, որ ծառայում է հին շահագործողական հասարակության խորտակմանը և բոլոր աշխատավորներին միավորում է կոմունիստների նոր հասարակություն ստեղծող պրոլետարիատի շուրջը։... Կոմունիստական բարոյականության հիմքն է կազմում կոմունիզմն ամրապնդելու և ավարտելու պայքարը» (Երկեր, հ. 31, էջ 357, 359—360)։ Սա է հասարակական երևույթների դասակարգային գնահատման լենինյան սկզբունքի ելակետը։

Սակայն կոմունիզմն այսօր սոսկ նպատակ կամ գիտական տեսություն չէ ապագայի մասին։ Մեր ժամանակներում այն ո՛չ միայն դարձել է միլիոնավոր մարդկանց վերափոխիչ գործունեության ուղենիշը, «գործնական աշխատանքի ուղեցույցը» (Վ. Ի. Լենին), այլև, որպես տեսանելի և շոշափելի իրականություն, սոցիալիզմի հիմքի վրա աճում է միլիոնների պրակտիկ գործունեությունից։ Կոմունիստական շինարարության պրակտիկան որոշակի պահանջներ է ներկայացնում մարդկանց աշխարհըմբռնմանը և վարքին։ Գաղափարաքաղաքական աշխատանքը կոչված է մշակելու մարդկանց հոգևոր կերպարի և վարքի հենց այնպիսի առանձնահատուկ գծեր, որոնք անհրաժեշտ են կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Նոր հասարակությունը ծնվում է պրոլետարիատի և բուրժուազիայի միջև մղվող դասակարգային պայքարի պրոցեսում։ Իսկ քանի որ դասակարգերի արմատական շահերը կարող են բավարարվել միայն քաղաքական իշխանության միջոցով, ուստի վերջինս դառնում է նրանց քաղաքական պայքարի գլխավոր օբյեկտը, այն կիզակետը, որտեղ խաչաձևվում-բախվում են այդ շահերը։ Նվաճելով պետական իշխանությունը, պրոլետարիատը դնում է կոմունիստական շինարարության քաղաքական հիմնաքարը։ Սակայն կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում հաղթանակած բանվոր դասակարգի և տապալված բուրժուազիայի միջև դասակարգային պայքարը, այդ թվում նաև



քաղաքական իշխանության համար, չի դադարում, այլ շարունակվում է նոր ձևերով, նոր պայմաններում։ Հասկանալի է, որ սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակից հետո, առավել ևս զարգացած սոցիալիզմի ժամանակ, պետական իշխանությունը դադարում է տարբեր դասակարգերի քաղաքական պայքարի օբյեկտ լինելուց։ Անցման այդ ժամանակաշրջանում և հաղթանակած սոցիալիզմի պայմաններում հասարակության սոցիալական կառուցվածքի արմատական վերափոխման շնորհիվ հաստատվում է բոլոր դասակարգերի, խավերի և խմբերի սոցիալ-քաղաքական միասնություն։

Սոցիալիզմի ժամանակ մարդկության պատմության մեջ առաջին անգամ ստեղծվում են հասարակության անդամների հասարակական-քաղաքական ակտիվության համար անհրաժեշտ բոլոր օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանները։ Նրանց այդ ակտիվության և եռանդի աղբյուրը սոցիալիզմի տնտեսական սիստեմն է, որն ապահովում է անհատի և հասարակության արմատական շահերի ներդաշնակությունը։ Մյուս կողմից, սոցիալիստական հասարակության անդամների հասարակական-քաղաքական ակտիվությունն ապահովվում է սոցիալիզմի քաղաքական սիստեմի բուն կառուցվածքով, որն օրենսդրորեն ամրապնդվում է սոցիալիստական տիպի սահմանադրության մեջ։ Այդ տեսակետից խիստ բնորոշ է զարգացած սոցիալիզմի՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։

Հասարակության համար կենսական նշանակություն ունեցող բոլոր հարցերի լուծմանը աշխատավորների գործնական ակտիվ մասնակցությունը զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի ամենաբնորոշ գծերից մեկն է։ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը ո՛չ միայն հռչակել է պետական և հասարակական գործերի կառավարմանը մասնակցելու, պետական ապարատի աշխատանքում տեղ գտած թերությունները քննադատելու, պետական և հասարակական մարմինների գործողությունները գանգատարկելու, քաղաքական ակտիվության զարգացման համար միավորվելու իրավունքները, խղճի, խոսքի, մամուլի, ժողովների, միտինգների, փողոցային երթերի և ցույցերի ազատությունները, այլև գործնականում ապահովում է այդ քաղաքական իրավունքներից և ազատություններից օգտվելու լայն հնարավորություններ։ Սակայն սոցիալիստական դեմոկրատիան վերդասակարգային, այսպես կոչված, «զուտ դեմոկրատիա» չէ, այլ ունի դասակարգային բնույթ, կոչված է ապահովելու սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության համար անհրաժեշտ քաղաքական պայմանները։

Սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակից հետո, զարգացած սոցիալիզմի պայմաններում պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը վերածվում է համաժողովրդական պետության, դառնում հասարակության բոլոր անդամների քաղաքական շահերի արտահայտիչը։ Նման պայմաններում սոցիալիստական հասարակական-քաղաքական կարգի դեմ ուղղված դասակարգայնորեն կազմակերպված ելույթները բացառվում են, որովհետև վերանում է դրանց սոցիալական հիմքը՝ հասարակության բաժանումը հակամարտ դասակարգերի։

Սակայն փաստերը վկայում են, որ համաշխարհային մասշտաբով կապիտալիզմի և սոցիալիզմի միջև «ով՝ ում»-ի սկզբունքով մղվող պայքարի պրոցեսում չեն բացառվում առանձին անհատների, իսկ երբեմն նաև մարդկանց մեծ կամ փոքր խմբերի բացահայտ թշնամական ելույթները սոցիալիստական պետական-քաղաքական կարգի դեմ բուն սոցիալիստական երկրներում։ Դրանք կարող են արտահայտվել ամենաբազմազան ձևերով, սկսած հակասոցիալիստական-հակասովետական ագիտացիայից մինչև բացահայտ հակասոցիալիստական պրակտիկ գործողությունները։

Ինչպես հայտնի է, Հունգարիայում (1956 թ.) և Չեխոսլովակիայում (1968 թ.) տեղի ունեցած իրադարձություններն սկսվեցին հենց, այսպես կոչված, «դեմոկրատական սոցիալիզմի» կամ «զուտ դեմոկրատիայի» քողի տակ սոցիալիստական հասարակական-քաղաքական կարգի «բարելավման» պահանջով, սոցիալիստական պետության ներքին և արտաքին քաղաքականության առանձին կողմերի քննադատությամբ և աստիճանաբար վերաճեցին սոցիալիզմի

տնտեսական և քաղաքական սիստեմի հիմնարար սկզբունքների մերժման, ժողովրդական իշխանության դեմ հակահեղափոխական տարրերի բացահայտ զինված ելույթների։

Սոցիալիստական և կոմունիստական շինարարության այդ օբյեկտիվ պայմանները պահանջում են ճիշտ կողմնորոշվել հասարակական կյանքի ո՛չ միայն բեկումնային պահերին, այլև զարգացման համեմատաբար խաղաղ ժամանակաշրջանի հասարակական երևույթներում, դասակարգային մոտեցում ցուցաբերել դրանց նկատմամբ, հասարակական կյանքի երևույթները գնահատել աշխատավորների արմատական տնտեսական և քաղաքական շահերի տեսանկյունից, ակտիվորեն պայքարել այդ շահերի կենսագործման համար։ Ուստի հասարակական երևույթների դասակարգային գնահատման ունակությունը սոցիալիստական հասարակության անդամների քաղաքական գիտակցության էական բաղադրամասն է, իսկ դրա ձևավորումը՝ գաղափարական դաստիարակության կարևոր խնդիրներից մեկը։

Սոցիալիզմը ծնվում է կապիտալիզմից, ուստի նրա զարգացման առաջին փուլում դեռ երկար ժամանակ պահպանվում են կապիտալիզմի հետքերը տընտեսության մեջ, հոգևոր ոլորտում և մարդկանց վարքագծում։ Սոցիալիզմի բունէությանը խորթ են կապիտալիստական հասարակությանը հատուկ բյուրոկրատիզմը, պաշտոնի չարաշահումը, խնամառությունը, կարիերիզմը, կաշառքը և նման այլ սոցիալական արատներ, որոնց դեմ մեր կուսակցությունը հետևողական անհաշտ պայքար է մղում։ Ղեկավարվելով լենինյան ցուցումով, կուսակցությունը այդ երևույթներին տալիս է դասակարգային գնահատական և դրանց դեմ մղվող պայքարը համարում գաղափարաքաղաքական աշխատանքի կարևոր խնդիրներից մեկը։ «... Քաղաքականապես լուսավորված ժողովրդի մեջ կաշառքներ չեն լինի»,— ասել է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 33, էջ 70)՝ շեշտելով աշխատավորների քաղաքական գիտակցության հասունության կարևոր դերը հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարում։

Սոցիալիստական հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր զարգացման պրոցեսները ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը։ Կուսակցության քաղաքականությունը հասարակական կյանքի տարբեր բնագավառներում կենսագործում են նրա դաստիարակած և առաջ քաշած, նրա վստահությունը վայելող կադրերը։ Նրանց համար բնորոշն աշխատանքի լենինյան ոճն է, որն օրգանապես զուգակցում է «... բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, հակադրվում է բյուրոկրատիզմին ու ձևամոլության ամեն տեսակ դրսևորումներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 102)։

Լենինյան տիպի կադրերի հասարակական-քաղաքական գործունեությունը սոցիալիստական հասարակության անդամներն ընկալում են որպես կուսակցության կամքի դրսևորում։ Ուստի գաղափարական անհոգությունը և քաղաքական կարճատեսությունը անհամատեղելի են նրանց գործունեությանը։ Կադրերի ընտրության և տեղաբաշխման լենինյան սկզբունքի կարևորագույն պահանջներից են նրանց կոմունիստական գաղափարայնությունը և համոզմունքը, քաղաքականապես ճիշտ կողմնորոշվելու կարողությունը։ «Սովետական մասնագետն այսօր այն մարդն է,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ուսանողների 1971 թ. համամիութենական հավաքում,— որը լավ է տիրապետել մարքս-լենինյան ուսմունքի հիմունքներին, պարզ տեսնում է կուսակցության ու երկրի քաղաքական նպատակները, ունի գիտական և պրակտիկ լայն պատրաստություն, կատարելապես տիրապետում է իր մասնագիտությանը, (Լենինյան կուրսով, հ. 3, 1972, էջ 579)։

«Քաղաքականապես լուսավորել» (Վ. Ի. Լենին) նշանակում է. դաստիարակել սոցիալիստական հասարակության առջև պարտքի և պատասխանատվության բարձր գիտակցությամբ տոգորված ակտիվ քաղաքացիներ, նրանց մեջ սերմանել անհաշտ քննադատական վերաբերմունք սոցիալիստական հասարակական-քաղաքական կյանքում նկատվող բացասական երևույթների հանդեպ, գիտական հստակ պատկերացում մշակել կոմունիստական կուսակցության և



սոցիալիստական պետության ներքին ու արտաքին քաղաքականության նպատակների մասին, այդ նպատակների արդարացիությունը դարձնել նրանց համոզմունքը։

Կոմունիզմը համաշխարհային պրոլետարական հեղափոխական շարժման օրինաչափ արդյունքն է և՛ որպես տեսություն, և՛ որպես պրակտիկա։ Մեր ժամանակներում սոցիալիստական և կոմունիստական շինարարությունն առանձին երկրներում և սոցիալիզմի համաշխարհային սիստեմում ամբողջությամբ վերցրած իրականացվում է սոցիալիստական տարբեր ազգերի և ժողովուրդների համատեղ ջանքերով։ Տնտեսական մեկուսացման և խտրականության քաղաքականության, գաղափարական դիվերսիաների ու հակակոմունիստական պրոպագանդայի տարբեր միջոցներով միջազգային իմպերիալիզմը փորձում է սոցիալիստական ազգերին հակադրել միմյանց, պառակտել սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, կասեցնել մարդկության առաջընթացը դեպի կոմունիզմ։

Հետևաբար, նոր հասարակարգի կառուցման օբյեկտիվ պայմաններում ազգային սահմանափակության և սնապարծության դրսևորումների դեմ մղվող պայքարը, սոցիալիստական հայրենասիրության և պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորների դաստիարակությունը հանդիսանում է գաղափարաքաղաքական աշխատանքի հիմնական խնդիրներից մեկը։ Համաշխարհային պատմության զարգացման արդի փուլում այդ սկզբունքները հարստացել են նոր բովանդակությամբ, դրսևորվում են նոր ձևերով։

Հայրենիքը սոսկ աշխարհագրական հասկացություն չէ։ Այն արտացոլում է ոչ միայն տվյալ բնօրրանը, որտեղ կազմավորվել և ապրում է ժողովուրդը, ազգը, անհատը, այլև այն սոցիալ-քաղաքական հարաբերությունների համակարգը, որը գոյություն ունի այնտեղ պատմական կոնկրետ ժամանակաշրջանում։ «Բանվորները հայրենիք չունեն»,—գրել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը (Ընտիր Երկեր, հ. 1, «Հայաստան», հրատ., 1972 թ., էջ 160)՝ նկատի ունենալով կապիտալիստական հասարակության մեջ նրանց ունեզրկվածությունը, սոցիալ-քաղաքական ճնշվածությունը, իրավազուրկ վիճակը։ Դրությունն արմատապես փոխվում է սոցիալիզմի պայմաններում, երբ աշխատավորները դառնում են երկրի, նրա բնական, նյութական և հոգևոր հարստությունների լիիրավ տերը։ Սոցիալիզմի ժամանակ հայրենասիրությունը ձեռք է բերում նոր բովանդակություն, դառնում նոր որակ՝ սոցիալիստական հայրենասիրություն։

Ինչպես հայտնի է, պրոլետարական ինտերնացիոնալիզմը բնութագրում է տարբեր երկրների աշխատավորների փոխհարաբերությունների որոշակի տիպ, անկախ այդ երկրների սոցիալ-քաղաքական կառուցվածքից։ Պատմական նոր պայմաններում այդ սկզբունքը դրսևորվում է նաև որպես սոցիալիստական ինտերնացիոնալիզմ։ Դրանով այժմ կարգավորվում են սոցիալիստական համագործակցության երկրների ու ժողովուրդների փոխհարաբերությունները՝ ամբողջությամբ վերցրած և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ու սոցիալիզմի զարգացման ուղին բռնած երկրների փոխհարաբերությունները՝ ավելի ու ավելի լայն ընդգրկումով։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ի դեմս սոցիալիստական ընտերնացիոնալիզմի, ձեռք է բերել միջ-ազգային, միջ-պետական հարաբերությունների կարգավորման ֆունկցիա։ Մարքս-լենինյան գաղափարախոսության, տնտեսական, սոցիալ-քաղաքական կառուցվածքի և հասարակական առաջընթացի նույն նպատակի ընդհանրության հիման վրա պետությունների միջև, մարդկության պատմության մեջ առաջին անգամ, հաստատվել են նոր տիպի հարաբերություններ, որոնք բնութագրվում են լիակատար համերաշխությամբ և անշահախնդիր փոխադարձ օգնությամբ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։

Պատմական նոր պայմաններում սոցիալիստական հայրենասիրությունը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը միահյուսվում են, սոցիալիստական հայրենասիրությունն ընդլայնում է իր շրջանակները, դուրս է գալիս մեկ երկրի սահմաններից և ընդգրկում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Ուստի ստեղծագործական մարքսիզմի դիրքերից նշված նոր երևույթների իմաստա-

վորման և գնահատման ունակության դաստիարակումը գաղափարական աշխատանքի կարևոր խնդիրն է, նրա արդյունավետության և հաջողության երաշխիքներից մեկը։

Սոցիալիստական հասարակական-քաղաքական կարգի արդարացիության համոզմունք, անմնացորդ նվիրվածություն սոցիալիստական հայրենիքին, ազգային և ինտերնացիոնալ-դասակարգային շահերի ներդաշնակ զուգակցման ունակություն, բոլոր ազգերի աշխատավոր դասակարգերի, սոցիալիստական ազգերի եղբայրական համագործակցության և բազմակողմանի փոխօգնության անհրաժեշտության գիտակցում և պրակտիկ գործունեություն՝ սոցիալիստական հեղափոխության և կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում։ Սա է դաստիարակչական այդ խնդրի բովանդակությունը։

Գաղափարաքաղաքական դաստիարակության ընդհանուր տեսական նախադրյալը աշխատավորների մարքս-լենինյան, գիտական, մատերիալիստական-դիալեկտիկական աշխարհայացքի ձևավորումն է։ Ինչպես հայտնի է, աշխարհայացքն իրականության վերաբերյալ հայացքների և համոզմունքների համակարգ է, որը որոշակի ելակետից պատասխանում է մարդկանց հետաքրքրող մի շարք արմատական հարցերի։ Աշխարհայացքի դերն ու նշանակությունը մարդկանց կյանքում դրսևորվում է ամենից առաջ կողմնորոշիչ ֆունկցիայով։ Կրոնական-իդեալիստական աշխարհայացքը մարդուն կողմնորոշում է դեպի ոչ իրական, պատրանքային աշխարհը, փորձում է նրան հեռու պահել կենսականորեն անհրաժեշտ իրական խնդիրներից, որոնց լուծումը հակասում է տիրապետող դասակարգի շահերին։ Այդ աշխարհայացքն ունի իր պատմական և իմացաբանական արմատները՝ գիտելիքների ցածր մակարդակը և օբյեկտիվ իրականության միակողմանի, խեղաթյուրված արտացոլումը, որին, ինչպես նշում է Վ. Ի. Լենինը, դասակարգային հասարակության մեջ ավելանում է դասակարգային արմատը՝ աշխատավոր մասսաների սոցիալական ճնշվածությունը, նրանց առերևույթ անօգնականությունն իրենց ճնշող հասարակական ուժերի նկատմամբ (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 15, էջ 505)։

Հասկանալի է, որ հայացքների նման համակարգը չի կարող բավարարել կոմունիզմ կառուցող անհատին, ընդհանուր տեսական հիմք լինել նրա հոգևոր զարգացման համար։ Կոմունիստական շինարարությունն անհնարին է առանց գիտության և տեխնիկայի արդի նվաճումների օգտագործման, որոնք իրենց էությամբ հակադիր են կրոնա-իդեալիստական պատկերացումներին, ժխտում են դրանք և հաստատում մատերիալիզմը։ Ուստի գիտության արդի նվաճումների հիման վրա սոցիալիստական հասարակության անդամների գիտամատերիալիստական աշխարհայացքի ձևավորումը գաղափարական աշխատանքի կարևոր խնդիրներից և կոմունիստական շինարարության հաջողության անհրաժեշտ գրավականներից մեկն է։

Մարքսիստական-լենինյան աշխարհայացքի փիլիսոփայական հիմքը դիալեկտիկական և պատմական մատերիալիզմն է, որը տեսականորեն իմաստավորում է գիտության ու պրակտիկայի նվաճումները, տալիս է իրականության ամբողջական, դիալեկտիկա-մատերիալիստական պատկերը։ Բնության և հասարակության գիտական, ճշմարտացի արտացոլման շնորհիվ, մարքս-լենինյան աշխարհայացքը մարդուն կողմնորոշում է դեպի իրական աշխարհը, ընդհանուր մեթոդաբանական ելակետ հանդիսանում նրա պրակտիկ գործունեության համար։

Մյուս կողմից, աշխարհայացքը, այդ թվում նաև մարքս-լենինյան, անհնարին է պատկերացնել առանց հոգեբանական, հուզական տարրերի։ Որոշակի սոցիալ-տնտեսական հարաբերությունների հիմքի վրա ձևավորվում են սոցիալական տարբեր խմբերի հասարակական հոգեբանությունը, բնավորության գծերը, բարոյական և գեղագիտական զգացմունքները, որոնք կազմում են նրանց աշխարհայացքի բաղկացուցիչ մասը։ Աշխարհայացքի տրամաբանական-տեսական և հոգեբանական-հուզական կողմերը փոխադարձորեն կապված են միմյանց։ Հասարակական հոգեբանության մեջ որոշակի բարոյական, գեղագիտական չափանիշներով գնահատվում է աշխարհայացքի տրամաբանական կողմը, իսկ վերջինս իր հերթին տեսականորեն հիմնավորում է դասակարգի սոցիալա-



կան տրամադրությունները, բարոյական և գեղագիտական ըմբռնումները։

Մարդկանց արտադրական, հասարակական գործունեությունը, վարքը սերտորեն կապված են օբյեկտիվ ռեալականության վերաբերյալ նրանց ունեցած պատկերացումների հետ։ Աշխարհի մասին գիտական ինֆորմացիան մարդկանց պրակտիկ գործունեության տեսական հիմքն է։ Բնության և հասարակության վերաբերյալ հավաստի գիտելիքները հնարավորություն են ընձեռում ազատորեն կողմնորոշվել բարդ իրադրության մեջ, որոշակի նպատակի հասնելու համար ընտրել և գործադրել առավել արդյունավետ միջոցներ, մարդկանց գործողություններին հաղորդում են վստահություն և նպատակասլացություն։ Շեշտելով գիտելիքի և մարդկանց վերափոխիչ գործունեության ներքին օրինաչափ կապը, Ֆ. Էնգելսը գրում է. «Ազատությունը ոչ թե երևակայական անկախություն է բնության օրենքներից, այլ այդ օրենքների իմացությունն է և այդ իմացության հիման վրա օրենքները պլանաչափորեն որոշ նպատակների ծառայեցնելու հնարավորությունը» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1967 թ., էջ 152)։ Որքան ավելի խոր է ճանաչում մարդը բնության ու հասարակության զարգացման օրենքները և իր պրակտիկ գործունեության ընթացքում հենվում դրանց իմացության վրա, այնքան ավելի արդյունավետ է նրա վերափոխիչ գործունեությունը։ Այսպիսով, օբյեկտիվ աշխարհի ճշմարտացի արտացոլման շնորհիվ գիտությունը մարդկանց ընձեռում է նպատակային արդյունավետ գործունեության հնարավորություն, մեծացնում է նրանց տիրապետությունը բնության և հասարակության զարգացման օրենքների նկատմամբ։

Գիտական իմացության վերջնական նպատակը մարդու համակողմանի զարգացումն է, նրա ֆիզիկական, նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարումը։ Ուստի գիտության կողմից ճշմարտացիորեն արտացոլված բնության և հասարակության երևույթները, նրանց կապերն ու հարաբերություններն անխուսափելիորեն հարաբերության մեջ են դրվում մարդկանց պահանջմունքների հետ, հասարակական հարաբերությունների տվյալ համակարգում որոշակի չափանիշներով գնահատվում են, այսինքն ստանում են արժույթային իմաստ ու նշանակություն։

Մարդկանց պահանջմունքների բավարարման համար գիտական ինֆորմացիայի պիտանիության և օգտագործման հնարավորության գիտակցումը նրանց վարքը պայմանավորող անհրաժեշտ նախադրյալ է։ Սակայն իրականության վերաբերյալ այս կամ այն պատկերացումը տվյալ անհատը կարող է համարել իր հասարակական և կենսական գործունեության համար պիտանի, քիչ թե շատ հստակորեն գիտակցել այդ պատկերացմամբ գործելու և առաջադրված նպատակին հասնելու հնարավորությունը, բայց, այնուամենայնիվ, չդիմել պրակտիկ գործողության։ Այդպիսի գործողության համար անհրաժեշտ պայման է գիտական ինֆորմացիայի հիման վրա ձևավորված դիրքորոշման արդարացիության գիտակցումը։ Միայն այդ դեպքում է իրականությունը ճշմարտորեն արտացոլող պատկերացումը դառնում համոզմունք և անհատի վարքը կարգավորող կարևոր գործոն։ «Միայն այն ժամանակ տեսության իմացությունն ինչ-որ բան արժե, երբ նա դառնում է համոզմունք, ամրապնդվում գործով»,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVIII համագումարում։

Դասակարգային հասարակության մեջ արդարացիության և անարդարացիության չափանիշներն արտացոլում են դասակարգերի արմատական շահերը, կրում են նրանց աշխարհայացքի դրոշմը։ Մարդու՝ որպես հասարակական էակի, գործունեությունը որոշակիորեն, թեև ոչ միանշանակ, պայմանավորված է նրա ֆիզիկական, նյութական և հոգևոր պահանջմունքներով։ Հասարակական զարգացման տարբեր փուլերում, սոցիալական տարբեր խմբերի համար այդ պահանջմունքները տարբեր են, այսինքն՝ օբյեկտիվորեն պայմանավորված են հասարակության զարգացման ընդհանուր մակարդակով և տվյալ անհատի սոցիալական դրությամբ։ Դրա հետ միասին, մարդու նյութական և առանձնապես հոգևոր պահանջմունքները ձևավորվում են՝ անցնելով նրա աշխարհայացքի պրիզմայով։ Դա առանձնապես ակներև է դառնում սոցիալ-դասակարգային պայքարի սրման ժամանակներում, երբ հեղափոխական դասակարգի առաջա-

մարտիկները մասսայական հերոսություն են դրսևորում, զոհաբերում են իրենց ֆիզիկական և նյութական պահանջմունքները հանուն գաղափարական համոզմունքների։ Այսպիսով, գաղափարաքաղաքական համոզմունքները պայմանավորվում են ոչ միայն նյութական, հոգևոր պահանջմունքների բնույթը, այլև, որպես սուբյեկտիվ գործոններ՝ նրանց հասարակական վարքը, նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման կոնկրետ եղանակներն ու ձևերը, վիթխարի դեր են կատարում նրանց պրակտիկ գործունեության ծավալման գործում։

Ինչպես հայտնի է, նպատակի իրականացումը մարդկանց գործունեության արդյունավետության հասարակական արժեքավորման միակ չափանիշը չէ։ Մարքսիզմին խորթ է՝ նպատակն արդարացնում է միջոցները հակահումանիստական սկզբունքը։ Կ. Մարքսի պատկերավոր խոսքերով ասած, սոցիալիզմի ժամանակ աշխատանքը դառնում է միակ տիրակալը, դրանով է պայմանավորվում մարդու դիրքը և տեղը հասարակական կյանքում։ Ուստի սոցիալիստական հասարակության մեջ մարդկանց պահանջմունքները և նպատակները պետք է բավարարվեն և կենսագործվեն միայն հանրօգուտ աշխատանքով, իսկական մարդկային միջոցներով։

Հանրային սեփականությունը սոցիալիստական հասարակության բոլոր անդամների բարեկեցության և համակողմանի զարգացման տնտեսական հիմքն է։ Եթե նյութական կամ հոգևոր բարիքը անձնական սեփականություն չէ, ուրեմն բոլորինն է՝ այս մտածելակերպը պետք է դառնա սոցիալիստական անհատի համոզմունքը, նրա վարքագծի, պրակտիկ գործունեության կատեգորիկ պահանջը։ ՀամԼԿԵՄ XVIII համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. անհրաժեշտ է ստեղծել բարոյաքաղաքական այնպիսի մթնոլորտ, որի ժամանակ լոդրերի, գործալիքների, խոտանարարների, հանրային ունեցվածքը հափշտակողների դրությունն իրոք անհանդուրժելի դառնա։ Կոմունիստական հասարակության զարգացման արդի փուլում գործում է ըստ աշխատանքի քանակի և որակի վարձատրության սկզբունքը։ Ուստի սոցիալիստական անհատի գաղափարական համոզմունքին անհարիր է հավակնությունը՝ ստանալու ավելին, քան ինքը տալիս է հասարակությանը։ Ահա թե ինչու այդ ոգով աշխատավորների գիտակցության ձևավորումը կուսակցությունը համարում է գաղափարական աշխատանքի կարևոր խնդիրներից մեկը։

Դժվար չէ տեսնել, որ վերը քննարկված խնդիրները սերտորեն կապված են, փոխադարձորեն միահյուսվում և այդ ամբողջության մեջ պայմանավորում են դաստիարակչական աշխատանքի այն առանձնահատուկ բնագավառի հիմնական բովանդակությունը, որի հիման վրա ձևավորվում է նոր մարդու գաղափարաքաղաքական կերպարը։ Որո՞նք են սոցիալիստական անհատի հոգևոր բնութագրի և հասարակական վարքի այն բնորոշ գծերը, որոնց ամբողջությունը կարելի է նշել գաղափարաքաղաքական կերպար հասկացությամբ։ Ամենից առաջ դա անհատի մարքս-լենինյան գիտական աշխարհայացքը և կոմունիստական գաղափարական համոզվածությունն է, դասակարգային դիրքերից հասարակական երևույթների վերլուծման և գնահատման ունակությունը, սոցիալիստական հասարակական-քաղաքական կարգի արդարացիության համոզմունքը, սոցիալիստական հայրենասիրությունը և պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, սոցիալիստական հասարակության առջև պարտքի և պատասխանատվության բարձր գիտակցությունը, քննադատական-անհանդուրժողական վերաբերմունքը կյանքի թերությունների նկատմամբ, հասարակական-քաղաքական ակտիվությունը, կոմունիստական կուսակցության և սոցիալիստական պետության ներքին ու արտաքին քաղաքականության նպատակների գիտական հստակ պատկերացումը, արդարացիության համոզմունքը և պայքարը դրանց կենսագործման համար։

«Կոմունիստական գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողության համաձուլվածք է»։ (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 114)։ Գաղափարական համոզվածության օբյեկտիվ չափանիշը սոցիալիստական անհատի ակտիվ դիրքորոշումն է կյանքում, նրա գործնական մասնակցությունը կոմունիստական շինարարությանը։

---

# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՊՐԱՆՔՆԵՐ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆԸ

Ա. Ա. ՊՅԱՏԿՈՎԱ
ՀԿԿ Կենտկոմի թեթև և սննդի արդյունաբերության
բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆ արդի փուլում մեր էկոնոմիկայի զարգացման արմատական պրոբլեմներից մեկը համարեց ժողովրդական սպառման առարկաների արտադրությունն անշեղորեն մեծացնելու, դրանց որակը բարձրացնելու խնդիրը։ Կուսակցությունն անդուլ ուշադրություն է նվիրում այս կարևոր հարցի լուծմանը։ Տասներորդ հնգամյակի անցած երկու տարում հանրապետությունում շահագործման են հանձնվել թեթև և սննդի արդյունաբերության 12 նոր ձեռնարկություն, վերակառուցվել՝ 32-ը։ Ավելացել է ժողովրդական սպառման բոլոր տեսակի ապրանքների, մանկական իրերի և կուլտուր-կենցաղային առարկաների վաճառքը։

Խորապես ըմբռնելով ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ըստ ամենայնի զարգացնելու և դրանց որակը բարելավելու վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդրի կարևորությունը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության կառավարությունը, մինիստրությունները, կուսակցական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարներն աշխատավորական կոլեկտիվների ջանքերն ուղղում են այդ խնդրի լուծման նպատակին։

Մոբիլիզացնող և կողմնորոշող մեծ նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1976 թվականի դեկտեմբերի 23-ի որոշումը՝ «1976—1980 թվականներին մասսայական պահանջարկ վայելող ապրանքների արտադրությունը զարգացնելու և դրանց որակը բարձրացնելու միջոցառումների մասին»։ Այդ որոշման կենսագործման նպատակով ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը 1977 թվականի մարտին ընդունեցին համապատասխան որոշում, որով մինիստրություններին ու ձեռնարկություններին կոնկրետ առաջադրանքներ տրվեց ժողովրդական սպառման ապրանքների թողարկումն ավելացնելու ասպարեզում։ Ընթացիկ հնգամյակի սկզբից մեր հանրապետության արդյունաբերական մինիստրություններում և դրանց ենթակա օբյեկտներում մշակվել են 1976—1980 թվականներին ձեռնարկությունների տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանները։ Պլանների նախապատրաստումից առաջ խորապես ու բազմակողմանի վերլուծվեցին թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի և տեղական արդյունաբերության մինիստրությունների բոլոր ձեռնարկությունների աշխատանքն ու տեխնիկատնտեսական ցուցանիշները իններորդ հնգամյակում։ Այդ պլաններում ի մի են բերված արտադրության տեխնիկատնտեսական, կազմակերպական ու սոցիալական ասպեկտները, որոնք հնարավորություն են ընձեռում բարձրացնելու թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակը, որակն ու հուսալիությունը։ Նախատեսվում է տեխնիկապես վերազինել ձեռնարկությունները, պլանաչափորեն բարելավել թողարկվող արտադրանքի որակը և թարմացնել տեսականին, կատարելագործել արտադրության ու կառավարման կազմակերպումը, պլանաչափորեն

բարձրացնել աշխատավորների պրոֆեսիոնալ-կուլտուրական մակարդակը, բարելավել աշխատանքի պայմանները, բարձրացնել աշխատավորության կենսամակարդակը, կատարելագործել կոլեկտիվների կոմունիստական դաստիարակությունը և սոցիալական հարաբերությունները։ Այդ պլանների կարևոր բաժիններն են սոցիալիստական մրցության ձևերի ու մեթոդների զարգացումը և արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրումը։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները 1976—1977 թվականներին զգալի աշխատանք կատարեցին արտադրության ընդլայնման, տեխնիկայի նորացման, արտադրանքի որակի և ատեստավորման բարձրացման նպատակով, որի շնորհիվ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճը (հնգամյակի համար նախատեսված է 35,9 տոկոս) անցյալ տարի, 1975 թվականի համեմատությամբ, նախատեսված 11,1 տոկոսի դիմաց կազմեց 13,4 տոկոս։ Հիմնականում այդ ապրանքներն արտադրում են թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի և տեղական արդյունաբերության 204 ձեռնարկություններ, որոնք 1977 թվականին ապահովել են արտադրանքի աճի բարձր տեմպեր և պլանից դուրս իրացրել է 54,6 մլն ռուբլու ժողովրդական սպառման ապրանք՝ սոցիալիստական պարտավորությամբ ստանձնած 30 մլն ռուբլու դիմաց։ Մասսայական պահանջարկ վայելող ապրանքների արտադրության պլանը կատարվել է 102 տոկոսով, նախատեսված 241,6 մլն ռուբլու դիմաց իրացվել է 246,4 մլն ռուբլու ապրանք։

Հաջողությամբ են կատարվել արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության 1977 թվականի սոցիալիստական պարտավորությունները։ Պլանից ավելի թողարկվել են 260 հազար ք. մետր մետաքսյա կտորեղեն, 1.577 հազար զույգ գուլպեղեն, 1.906 հազար զույգ տրիկոտաժե սպիտակեղեն, 174 հազար զույգ կոշիկ, 19,4 մլն ռուբլու պատրաստի հագուստեղեն, 411 հազար հատ տրիկոտաժե վերնազգեստ, 37 հազար դեկալիտր գինի, 31 հազար դեկալիտր կոնյակ, 3.096 տոննա պանիր, 5.866 տոննա անարատ կաթնամթերք, 1.635 տոննա երշիկեղեն։

Արտադրանքի որակի բարելավման հզոր ազդակ են սոցիալիստական մրցությունը, արտադրական ու տեխնոլոգիական կարգապահության ամրապնդումը, աշխատավորության շրջանում դաստիարակչական միջոցառումների ուժեղացումն այն հաշվով, որ յուրաքանչյուր ոք ամեն օր, ամեն ժամ մտածի իր աշխատանքի որակի, դրա արդյունավետության բարձրացման մասին։

Անցյալ տարի մինիստրությունների և ձեռնարկությունների կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները լայն գործունեություն ծավալեցին մրցության ձևերի ու մեթոդների կատարելագործման, թեթև և սննդի արդյունաբերության աշխատողների աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման նպատակով։ Ձեռնարկություններում, ճյուղերում, մինիստրություններում մշակվել են սոցիալիստական մրցության նոր պայմաններ՝ արտադրանքի արդյունավետության ու որակի բարձրացման նպատակով։ Կիրառվում է մրցության արդյունքների ամփոփման հատուկ սիստեմ։ Ճյուղերում ընդլայնվում է անձնական ստեղծագործական պլաններն ընդունող ինժեներատեխնիկական աշխատողների թիվը։ Ձեռնարկությունները փոխադարձ պայմանագրային կապեր են հաստատել իրար հետ։

ՀՍՍՀ թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի, տեղական արդյունաբերության մինիստրությունները և դրանց ձեռնարկությունները մրցում են Վրաստանի, Ադրբեջանի, Ուկրաինայի, Մերձբալթյան եղբայրական հանրապետությունների մինիստրությունների ու ձեռնարկությունների հետ։

Ավելի մեծ ուշադրություն է նվիրվում մրցության հրապարակայնությանը, ցուցադրական ագիտացիայի կազմակերպմանը, ձեռնարկություններում ստեղծվել են մրցության արդյունավետ կազմակերպման խորհուրդներ։ Մրցության ընթացքի և պլանների կատարման հարցերը պարբերաբար քննարկվում են մինիստրությունների կոլեգիաների և արհմիության հանրապետական կոմիտեների նախագահության համատեղ նիստերում։

Տասներորդ հնգամյակի անցած երկու տարում ձեռք բերած նվաճումները



բարենպաստ պայմաններ են ստեղծում ամբողջ հնգամյակի պլանները հաջողությամբ կատարելու, աշխատանքի որակի և արտադրության արդյունավետության հետագա բարձրացման համար։

Հատուկ նշանակություն տալով ժողովրդական սպառման ապրանքների որակի բարձրացման հարցերին, հանրապետության արդյունաբերական մինիստրությունները, նրանց կուսակցական կազմակերպությունները արտադրական միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքն ուղղում են ամբողջ արտադրանքի ատեստավորման, որակի բարելավման, տեխնիկայի նորացման կոմպլեքս միջոցառումներ մշակելու և իրականացնելու, ինչպես նաև արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմ ներդնելու նպատակին։ Բոլոր մինիստրություններում կան ձեռնարկություններ, որոնք կարող են ծառայել որպես բազա արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրման, սոցիալիստական մրցության և ցուցադրական ագիտացիայի առաջավոր փորձի տարածման համար։ Թեթև արդյունաբերության մեջ այդպիսի ձեռնարկություն են դարձել «Մասիս» կոշիկի արտադրամիավորման գլխամասային ձեռնարկությունը, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը, սննդարդյունաբերության մեջ՝ № № 5 և 2 հացի գործարանները, Երևանի կոնյակի գործարանը և գինու կոմբինատը, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մեջ՝ Լենինականի մսի-պահածոյի կոմբինատը, Երևանի կաթի կոմբինատը, տեղական արդյունաբերության մեջ՝ «Պլաստիկ», «Ռուբին» գործարանները և այլն։ Այդ ձեռնարկություններում արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի հիմքում դրված են ձեռնարկության ստանդարտները, բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների՝ ըստ աշխատանքի որակի, արտադրության բարձր կուլտուրայի և ցուցադրական ագիտացիայի գործակիցների պարգևատրման կանոնադրությունները։ Հատուկ ուշադրության է արժանի կոշկագործների փորձը։ Այստեղ արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրման շնորհիվ նրբագեղ և նորաձև կոշիկի արտադրությունը հասցվել է 37,4 տոկոսի, իսկ պետական որականիշով կոշիկինը՝ 21 տոկոսի։ Ներկայումս «Շյոն» առաջնակարգ հոսքային գծի վրա, որի արտադրողականությունը տարեկան 350 հազար զույգ է, իրագործվում է նրբագեղ կոշիկի թողարկման հերթափոխային մասնագիտացում։

Ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող մինիստրությունների ձեռնարկություններում կուտակվել է բնակչության պահանջարկը վայելող բարձրորակ ապրանքների արտադրության հարուստ փորձ։ Լայն պահանջարկ են վայելում ինչպես վերը նշված, այնպես էլ մի շարք այլ ձեռնարկությունների՝ «Գարուն» արտադրամիավորման, Կիրովականի և Լենինականի կարի ֆաբրիկաների արտադրանքը, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի տրիկոտաժե վերնազգեստները, մեր արդյունաբերության թողարկած սիգարետները, կոնյակները, գինիները, երշիկեղենը, կուլտուր-կենցաղային սարքերն ու ապրանքները։

Այդ մինիստրությունների առաջավոր կոլեկտիվները յուրացրել են աշխատանքի խթանման և բարձրորակ արտադրանքի թողարկման արդյունավետ մեթոդներ։ Խնդիրն այժմ այն է, որ այդ մեթոդները ներդրվեն համապատասխան ճյուղերի բոլոր ձեռնարկություններում։ Սոցիալիստական մրցությունը կազմակերպելիս գերադասելի պայմաններ պետք է տրամադրել այն ձեռնարկություններին, որտեղ մեծ է բարձրորակ ապրանքների տեսակարար կշիռը, արագ է յուրացվում նոր արտադրանքը, ավելացվում է պետական որականիշով ապրանքների թողարկումը, որտեղ առանց հապաղելու դադարեցվում է պահանջարկ չվայելող ապրանքների թողարկումը։ Արտադրանքի որակի արմատական բարելավման պրոբլեմը կարող է լուծվել միայն կոմպլեքս ձևով, երբ այն ընդգրկում է արտադրապրոցեսի ողջ շղթան՝ նմուշների ստեղծումից մինչև մասսայական սերիական արտադրությունը։ Այդ խնդրի լուծմամբ է թելադրվում ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ձեռնարկություններում արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրման հրամայական անհրաժեշտությունը։

1978 թվականի սոցիալիստական պարտավորություններով նախատեսված է արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմ ներդնել հանրապետության 52 ձեռնարկություններում, այդ թվում՝ թեթև արդյունաբերության՝ 19, սննդարդյունաբերության՝ 11, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության՝ 5, տեղական արդյունաբերության՝ 11 ձեռնարկություններում, հնգամյակի ընթացքում բարձրորակ ապրանքների թողարկումը մեծացնել 2,7 անգամ։

1977 թվականին պետական որականիշով ապրանքների արտադրությունը ժողովրդական սպառման ապրանքների ընդհանուր ծավալում կազմեց 12,3 տոկոս, իսկ «Ն» ինդեքսի հետ՝ 19 տոկոս։

Հանրապետության թեթև արդյունաբերության սիստեմում պետական որականիշով ապրանքների տեսակարար կշիռը 1977 թվականին կազմեց 10,3 տոկոս, սննդարդյունաբերության մեջ՝ 8,1, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության՝ մեջ՝ 8,4, տեղական արդյունաբերության մեջ՝ 6,4 տոկոս։ Արդյունաբերական ձեռնարկությունները յուրացնում են լայն պահանջարկ վայելող նոր ապրանքների արտադրությունը։ Զգալիորեն նորացվել է պատրաստի հագուստեղենի տեսականին՝ 56,7 տոկոսով, կոշկեղենինը՝ 89 տոկոսով, տրիկոտաժեղենինը՝ 37 տոկոսով։ Ընդլայնվում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը մեքենաշինության և ծանր արդյունաբերության այլ ճյուղերում։

Ձեռնարկություններում և միավորումներում ավարտվել է ժողովրդական սպառման բոլոր ապրանքների ատեստավորումը, այդ թվում՝ կուլտուր-կենցաղային ապրանքներինը։ Ատեստավորման ընթացքում արտադրությունից հանվել են որակի երկրորդ կատեգորիայի ապրանքները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը խնդիր է դրել 1978 թվականին է՛լ ավելի ընդլայնել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ծավալը։ Այս տարի ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը 7,3 տոկոսով կգերազանցի անցյալ տարվա մակարդակը։ Ստանձնած սոցիալիստական պարտավորությունների համաձայն, լրացուցիչ կթողարկվի 20 մլն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ։

Ծավալելով սոցիալիստական մրցությունը հանուն արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, ձեռնարկությունների և միավորումների կոլեկտիվները, առանձին բանվորներ, բրիգադներ, արտադրամասեր, տեղամասեր մշտապես նորանոր ռեզերվներ են փնտրում արտադրանքի ավելացման և որակի բարելավման, արտադրության արդյունավետության բարձրացման և տեխնիկայի նորացման համար՝ արտադրության կազմակերպման բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և երկրի ու մեր հանրապետության առաջավորների նախաձեռնության տարածման ուղիով։

Ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ճյուղերի ձեռնարկություններում սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։ Միայն թեթև արդյունաբերության սիստեմում ավելի քան 2,5 հազար արտադրության առաջավորներ պայքարում են հնգամյակում երկու հնգամյակի առաջադրանքների կատարման համար։

Առաջավոր նախաձեռնությունների տարածման գործում որոշակի տեղ են գրավում թեթև արդյունաբերության ճյուղերում գործող կոմունիստական աշխատանքի և առաջավոր փորձի 250 դպրոցները, որտեղ ընդգրկված են 6.580 բանվորներ։ Թեթև արդյունաբերության ճյուղերում տարածվել են Յակովլևսկի վուշի կոմբինատի ջուլհակուհի Ա. Վ. Սմիռնովայի՝ «Ավելացնել գերազանց որակի արտադրանքի թողարկումը» նախաձեռնությունը, Տիրասպոլի կարի ֆաբրիկայի՝ գերազանց որակի բրիգադներ ստեղծելու փորձը, Մոսկվայի «Սալյուտ» կարի ֆաբրիկայի վարպետ Ա. Ի. Գրասնևայի «Բրիգադների պարտավորություններին՝ տնտեսական հաշվարկ և ինժեներական ապահովում» նախաձեռնությունը և այլն։ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան արտադրա-



միավորման կոլեկտիվը սոցիալիստական մրցություն էր ծավալել երիտասարդ բանվորների և նրանց դաստիարակ-ուսուցիչների արտադրական համագործակցությունն ուժեղացնելու նպատակով։ Այդ նախաձեռնությունն արժանացավ ՀԿԿ Կենտկոմի հավանությանը։ 3.300 դաստիարակ-ուսուցիչներ ակտիվորեն ձեռնամուխ եղան իրենց վարպետությունը երիտասարդ բանվորներին հաղորդելու շնորհակալ գործին, և այժմ 5 հազար երիտասարդ բանվորներ հասել են արտադրության առաջավորների մակարդակին։

1978 թվականի առաջին կիսամյակի ցուցանիշները վկայում են, որ հաջողությամբ կկատարվեն ինչպես տարեկան պլանները, այնպես էլ մրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Ժողովրդական սպառման ապրանքներ և սննդամթերք արտադրող 42 ձեռնարկությունների կոլեկտիվներ խոստացել են մինչև 1978 թ. նոյեմբերի 7-ը կատարել հնգամյակի երեք տարվա պլանը։

Մինչև ՍՍՀՄ Սահմանադրության ընդունման առաջին տարեդարձը հնգամյակի երեք տարվա պլանը պարտավորվել են կատարել թեթև, սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության շուրջ 13 հազար առաջավորներ։

Սահմանված առաջադրանքների կատարման և ժողովրդական սպառման ապրանքների արտադրության հետագա ընդլայնման համար հանրապետությունում իրագործվում են արտադրական կարողությունների զարգացման, գործող ձեռնարկությունների վերակառուցման և նորերի շինարարության նպատակին ուղղված մի շարք միջոցառումներ։

Տասներորդ հնգամյակի առաջին երկու տարում թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի, տեղական արդյունաբերության և ձկնային տնտեսության միավորումում գործարկվել են 12 նոր և վերակառուցվել 32 գործող ձեռնարկություններ։ Ընթացիկ տարում կվերակառուցվեն ևս 21, և կգործարկվեն 10 նոր ձեռնարկություններ։ Ներդրված կարողությունները լրիվ յուրացնելու դեպքում հնարավորություն կընձեռվի թողարկելու մոտ 100 մլն ռուբլու արտադրանք, իսկ նոր ձեռնարկությունները գործարկելուց և գործողները վերակառուցելուց հետո 1978 թվականին կթողարկվի ևս 65 մլն ռուբլու արտադրանք։

ՀԿԿ Կենտկոմը 1978 թվականի փետրվարին քննարկեց «Արդյունաբերական և գյուղատնտեսական նշանակության օբյեկտների գործարկումն ապահովելու մասին» հարցը, և մի շարք կոնկրետ միջոցառումներ նշեց եղած թերությունները վերացնելու համար։ Նախատեսված է 1978—1979 թվականներին ժամկետից շուտ գործարկել կառուցվող մի շարք ձեռնարկություններ։ Այսպես, որոշվել է մեկ տարի շուտ գործարկել «Հայծխախոտարդի» սիգարեթների թողարկման կարողությունները, վեց ամիս շուտ՝ Արտաշատի տրիկոտաժի վերակառուցվող կոմբինատի կարողությունները, մեկ եռամսյակ շուտ՝ Երևանի հացի գործարանը, Կամոյի միսկոմբինատը, «Արմաշ» լճային ձկնատնտեսությունը և այլն։

Թեթև և սննդարդյունաբերության ճյուղերում կան այնպիսի կոլեկտիվներ, որոնք գործնականում ցույց են տալիս, թե ինչպես պետք է արագացնել նոր կարողությունների յուրացումը։ Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրամիավորումը 1975 թվականի դեկտեմբերին շահագործման հանձնեց փափուկ կաշվե ապրանքների նոր կորպուսը՝ 100 մլն ք. դմ. կարողությամբ։ Շահագործման առաջին տարում պետք է յուրացվեր հզորության 60 տոկոսը։ Կոլեկտիվը պարտավորվեց 1976 թվականի դեկտեմբերին հասնել կարողության 89 տոկոսի մակարդակին։ Մշակված միջոցառումների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման շնորհիվ ժամանակին տեղակայվեց արտասահմանյան և հայրենական բարձրարտադրողական սարքավորման 180 միավոր, և նոր գործարկվող կարողությունները յուրացվեցին 80 տոկոսով, իսկ արտադրակարողությունների ամբողջ ծավալի առումով փաստորեն դեկտեմբերին հասան 86,7 տոկոսի։

Երևանի շամպայն գինիների գործարանի անընդհատ շամպանիզացման արտադրամասում գործարկված կարողությունները յուրացվեցին ժամկետից վեց ամիս շուտ, որի հաշվին արտադրանքի թողարկումն ավելացավ մեկ մլն

120 հազար ռուբլով։ Իսկ ծխախոտի ֆաբրիկայում 1977 թվականի երկրորդ կիսամյակին ժամկետից շուտ յուրացվեցին ացետատային ֆիլտրերի արտադրության բարձրարտադրողական հինգ գծեր՝ տարեկան 2 մլրդ 550 մլն հատ կարողությամբ։ Դրա շնորհիվ ավելի թողարկվեց 2 մլն 350 հազար ռուբլու արտադրանք։

ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց, որ արտադրական կարողությունների ոչ լրիվ օգտագործման պատճառով երկիրը տարեց տարի պակաս է ստանում միլիարդավոր ռուբլիների արտադրանք։ Այս դիտողությունը լիովին վերաբերվում է նաև մեր հանրապետության բազմաթիվ ձեռնարկությունների, որոնցում սարքերի ու սարքավորումների պարապուրդների հետևանքով ժողովրդական տնտեսությունը նկատելի կորուստներ է ունենում։ Այսպես, սննդի, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մեջ արտադրանքի շատ տեսակների գծով կարողությունների անբավարար օգտագործումը հաճախ բացատրում են հումքի վատ ապահովմամբ։ Սակայն ճշմարտությունն այն է, որ մի շարք ձեռնարկություններում արտադրական կարողությունների անբավարար օգտագործումը կապված է ոչ թե հումքի անկանոն մատակարարման հետ, այլ հետևանք է աշխատանքի վատ կազմակերպման ու տեխնոլոգիական ցածր կարգապահության։ Ահա մի օրինակ։ «Սևան» հանքաջրերի գործարանում լցման գծերի տեխնիկական անբավարար վիճակի, երկհերթ աշխատանքի բացակայության պատճառով կարողություններն օգտագործվում են ընդամենը 60 տոկոսով։

Արտադրակարողությունները ժամանակին յուրացնելու վրա խիստ բացասաբար է անդրադառնում նախագծային-նախահաշվային փաստաթղթերի անբավարար որակը և, դրա հետ կապված, շինարարության ժամկետների ձգձգումը։ Բնորոշ է այդ իմաստով Սպիտակի շաքարի գործարանի լիմոնաթթվի նոր արտադրամասի օրինակը, երբ նախագծով արդեն «օրինականացված» էր հին տեխնոլոգիայի ներդրումը։ Աշխատանքներն այդ պատճառով դադարեցվեցին մինչև նոր լուծում գտնելը։

Արտադրական կարողությունները ժամանակին և ժամկետից շուտ յուրացնելու գործում առաջնահերթ նշանակություն ունեն կադրերը, նրանց պատրաստումը և ճիշտ ընտրությունը։ Օրինակ, «Բջնի» հանքաջրերի գործարանում ժամանակին չէին մտածել հիմնական մասնագետների պատրաստման մասին, և դրա հետևանքով ձգձգվեցին կարողությունների յուրացման ժամկետները, չկատարվեցին հանքաջրերի թողարկման առաջադրանքները։

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976 և 1980 թվականների հիմնական ուղղություններում» նշված է. «Հատուկ ուշադրություն կենտրոնացնել աշխատանքի արտադրողականության աճի արագացման վրա, որն արտադրության հետագա զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման վճռական պայմանն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 248)։ Ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, այնպես էլ սպառման ապրանքներ թողարկող արդյունաբերական ճյուղերի արտադրության արդյունավետությունը բարձրացնելու խնդրի լուծման համար հատուկ նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության աճը։ Ընդհանուր առմամբ, մեր համապատասխան ձեռնարկությունները կատարում են աշխատանքի արտադրողականության առաջադրանքները։ Սակայն աշխատանքի և սարքավորման արտադրողականությունը թեթև արդյունաբերության տեքստիլ ճյուղում զգալիորեն ետ է մնում միջին միութենական մակարդակից։ Բամբակի գործվածքի բնագավառում՝ 15,2 տոկոսով, բրդի գործվածքի՝ 13 տոկոսով, մետաքսե գործվածքի՝ 11,3 տոկոսով։ Միայն բամբակը մանելու բնագավառում է, որ աշխատանքի արտադրողականությունը գերազանցել է միջին միութենական ցուցանիշը։

Սպասարկման ճյուղային նորմաների է անցել բանվորների 71 տոկոսը։ Չնայած անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատ սպասարկման տիպային նորմաների անցած բանվորների թիվն աճել է 15 տոկոսով, սակայն բանվորների 29 տոկոսը սպասարկում է նախատեսվածից ավելի քիչ թվով մեքենաներ։

Քանի որ ճյուղային նորմաների յուրացման առավել ցածր ցուցանիշ ունի



բամբակե գործվածքեղենի արտադրությունը, ուստի ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությունը մշակել է կազմակերպական-տեխնիկական և գիտահետազոտական միջոցառումների կոմպլեքսային պլան, որով միջոցներ են նախատեսվում՝ բարելավելու տեխնոլոգիական սարքավորման և նախապատրաստական օպերացիաների բովանդակությունը, բարելավելու մանվածքի բոլոր տեսակների նախապատրաստման որակը։

Ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող մինիստրությունները միջոցառումներ են մշակում՝ բարելավելու կապը առևտրական կազմակերպությունների հետ, ուսումնասիրելու պահանջարկը, ճշտելու պահանջվող ապրանքների տեսականին։ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությունը նոր ապրանքների վաճառքի ֆիրմային խանութներ է բացել Երևանում, Կիրովականում, Լենինականում, տեղարդմինիստրությունը հուշանվերների խանութ է բացել Երևանում։ Ֆիրմային խանութներ են բացել նաև սննդարդյունաբերության և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունները։

Ապրանքի պահանջարկն ուսումնասիրելու աշխատանքի բարելավման, նոր ապրանքը լայնորեն ռեկլամելու և բնակչության առևտրական սպասարկման կուլտուրական մակարդակը բարձրացնելու համար ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը 1977 թվականի հոկտեմբերի 28-ի որոշմամբ հանձնարարել են հանրապետության մինիստրություններին ու գերատեսչություններին մինչև 1980 թվականը Երևանում և այլ քաղաքներում բացել 14 ֆիրմային խանութ։

Ներկայումս կուսակցական ու սովետական մարմիններն զբաղվում են ժողովրդական սպառման և մասսայական պահանջարկ վայելող ապրանքների արտադրության գործում նկատված թերությունները վերացնելու հարցերով։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդն անհրաժեշտ միջոցներ են իրագործում արդյունաբերական ձեռնարկությունների մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքի հետագա կատարելագործման համար, արտադրության ծավալի մեծացման և ժողովրդական սպառման ապրանքների որակի բարելավման համար։

Նոր, լավորակ ապրանքների ստեղծումը, դրանց սերիական արտադրության յուրացումը բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվների պատվի գործն է։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «1976—1980 թվականներին մասսայական պահանջարկ վայելող ապրանքների արտադրությունը զարգացնելու և դրանց որակը բարձրացնելու միջոցառումների մասին» որոշման մեջ հստակորեն սահմանված են պլանավորման մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների, կոնստրուկտորների, մասնագետների և բանվորների խնդիրներն ու նրանց ներկայացվող պահանջները։ Առևտրի պահանջներին համապատասխան, ապրանքների թողարկման համար անձնական պատասխանատվությունը դրված է մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ղեկավարների վրա։ Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները կոչված են ապահովելու այդ որոշմամբ առաջադրված խնդիրների անթերի կատարումը։

Ինչպես ողջ երկրի արդյունաբերության աշխատողները, հնգամյա պլանի կատարման կարևոր փուլում են գտնվում նաև ժողովրդական լայն սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունների կոլեկտիվները։ Ջերմորեն արձագանքելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակին, նրանք պայքար են ծավալել հանուն արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման։ Կուսակցական կազմակերպությունների պարտքն է՝ գլխավորել աշխատավորական զանգվածների քաղաքական ու արտադրական ակտիվությունը, այն նպատակամղել տասներորդ հնգամյակի երրորդ տարվա պլանների կատարմանն ու գերակատարմանը, որը պայմաններ կստեղծի բարձր ցուցանիշներով ավարտելու ընթացիկ հնգամյակի առաջադրանքները։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿՈԼԵԿՏԻՎԻ ՈՒԺԸ

**Վ. Ա. ԱՍԼԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի հրահանգիչ

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ գործում հետզհետե մեծանում է աշխատանքային կոլեկտիվների դերը։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում նրանց այդ ֆունկցիան օրենսդրականորեն վավերացված է ՍՍՀՄ նոր Սահմանադրությամբ։ Վերջերս Ամուրի Կոմսոմոլսկ քաղաքի Լենինյան կոմերիտմիության անվան մեքենաշինական գործարանում հանդես գալով քաղաքի բանվորների ներկայացուցիչների առջև Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Օրենսդրականորեն վավերացնելով աշխատանքային կոլեկտիվի՝ որպես մեր ամբողջ տնտեսական մեխանիզմի սկզբնական բջջի նշանակությունը, սովետական հասարակությունը նրան լայն իրավունքներ է վերապահել պետական կարևորագույն հարցերի լուծման գործում։ Աշխարհում ոչ մի տեղ աշխատավորներն օժտված չեն այդպիսի իրավունքներով»։*

*Աշխատանքային կոլեկտիվների գործունեության բոլոր ամենայնի կատարելագործմանը և ղեկավարմանը լուրջ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ XXV համագումարը։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը, մեր հասարակության այդ սոցիալական բջիջները բնորոշելով որպես սովետական մարդկանց աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացման համար մղվող պայքարի կարևոր ասպարեզ, շեշտում է, որ դրանցում են «...ձևավորվում աշխատավորների նոր, սոցիալիստական հատկությունները, ստեղծվում բարեկամության և ընկերական փոխօգնության հարաբերությունները։ Ամեն մեկի պատասխանատվությունը կոլեկտիվի առջև և կոլեկտիվի պատասխանատվությունը յուրաքանչյուր աշխատողի համար՝ ահա մեր ապրելակերպի անքակտելի գիծը» (*Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, *հ. 3, էջ 383)։*

*Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, սոցիալական խնդիրների հաջող լուծումը մեծապես պայմանավորված են յուրաքանչյուր կոլեկտիվի ներդրումով։ Վերջին հաշվով, այդ կոլեկտիվներում է վճռվում կոմունիստական շինարարության պլանների կատարման բախտը, իրականացվում սովետական մարդկանց ստեղծագործական աճը, դրսևորվում նրանց սոցիալական ակտիվությունը։ Աշխատանքային կոլեկտիվների միջոցով է իրականացվում առանձին անհատների կապն ամբողջ հասարակական սիստեմի հետ։ Սովետական մարդկանց մոտ գաղափարական բարձր համոզվածության դաստիարակման, բարոյական վեհ հատկանիշների ձևավորման բարդ ու համակողմանի պրոցեսում շատ բան պայմանավորված է աշխատանքային կոլեկտիվների ազդեցությամբ։ Աշխատանքային կոլեկտիվի հարաճուն դերը, սոցիալ-տնտեսական այդ բարդ ստրուկտուրայի զարգացման պրոբլեմները շատ բանով պայմանավորում են սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության հաջողությունը։*

*Աշխատանքային կոլեկտիվների ամրապնդման կարևոր միջոց են սոցիալ-տնտեսական զարգացման պլանները։ Օրինաչափ է, որ այդ պլաններն ուղղված են գլխավոր խնդրի լուծմանը՝ արտադրության հետագա կատարելագործմանը։ Ընդ որում, շեշտը դրվում է հիմնական արտադրաուժի՝ աշխատավորների, համակողմանի զարգացման, նրանց աշխատանքի պայմանների ու կենցաղի բարելավման, նյութական ու հոգևոր պահանջմունքների ավելի լիակատար բավարարման, նրանց մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման վրա։ Այնպես որ, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի գործուն սիստեմը կոլեկտիվի զարգացման սոցիալ-տնտեսական պլանի պարտադիր բաղկացուցիչ մասն է։*

*Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, կուսակցական կազմակերպությունների պրակտիկան հուշում է, թե որ ուղիով ընթանալով կարելի է հասնել գաղափարական գործունեության արդյունավետության բարձրացման։ «Դա կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ, այսինքն՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնություն՝ հաշվի առնելով աշխատավորության զանազան խմբերի առանձնահատկությունները» (*ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 111)։*

*«ՍՄԿԿ Օրսկի քաղկոմի կողմից գաղափարական-դաստիարակչական աշխատանքի հարցերի կոմպլեքսային լուծման իրականացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը կուսակցական կազմակերպությունների, գաղափարախոսական բոլոր կադրերի առջև խնդիր է դնում կոմպլեքսային ձևով լուծել դաստիարակության պրոբլեմները՝ պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական ողջ աշխատանքը սերտորեն կապելով սովետական հասարակության առջև ծառացած տնտեսական, սոցիալական ու քաղաքական կոնկրետ խնդիրների լուծման հետ։ Ընդ որում, գաղափարադաստիարակչական աշխատանքի դրվածքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման պահանջները, ամբողջությամբ վերցրած, առավել լիակատար ձևով կարող են իրականացվել աշխատանքային կոլեկտիվի միջոցով։*

*Այժմ, երբ աշխատանքային կոլեկտիվներում իրականացվում են տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները, կուսակցական կազմակերպությունները ձգտում են առավելագույն չափով օգտագործել նյութական ու բարոյական, ինժեներատեխնիկական ու կազմակերպական-քաղաքական, տնտեսական ու հոգեբանական գործոնները, որպեսզի, ի հաստատումն մեր բարոյականության սկզբունքների ու սովետական ապրելակերպի, ապահովվի իրական կոմպլեքսային մոտեցումը, որի մասին խոսվեց նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումում։*

*Աշխատանքային կոլեկտիվը տնտեսական ու սոցիալական հարաբերությունների կոմպլեքս է։ Մի կողմից դա համատեղ աշխատանքով կապված մարդկանց գաղափարական ու սոցիալ-հոգեբանական հանրություն է, մյուս կողմից՝ աշխատանքային կոլեկտիվն արտահայտում է այն հարաբերությունները, որ ստեղծվում են արտադրական առանձին օղակների և, ամբողջությամբ վերցրած, հասարակության միջև։*

*Արտադրության կոլեկտիվ բնույթի վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հետևությունները ունեն բացառիկ նշանակություն։ Վ. Ի. Լենինը նկատի ուներ հենց աշխատանքային կոլեկտիվները, երբ հիմնավորում էր արտադրության սոցիալիստական կազմակերպման հիմնական սկզբունքները, ինչպիսիք են՝ ըստ աշխատանքի բաշխումը, ընդհանուր հաշվառումն ու վերահսկողությունը և այլն։ Կոլեկտիվիզմի արտաքին հատկանիշները (մարդկանց միավորումն աշխատանքի պրոցեսում, նրանց համատեղ գործողությունները, մշտական հասարակական կապը, կոնկրետ կազմակերպությունը) ակնհայտորեն երևում են արդեն պարզ կոոպերացիայի մեջ։*

*Աշխատանքային կոլեկտիվի գործունեության նյութական պայմանները, հասարակական կոնտակտը, միասնությունը և եռանդի արթնացումը կազմում են նրա էությունը։*

*Ներկայումս քիչ հետազոտություններ չեն կատարվում աշխատանքային կոլեկտիվների գործունեության վերաբերյալ։ Շատ դեպքերում տնտեսագետներն ու սոցիոլոգները կոլեկտիվի սոցիալական կառուցվածքում և աշխատանքի նկատմամբ վերաբերմունքի մեջ կատարված փոփոխությունների պրոբլեմները քննության են առնում՝ կապված արտադրության նյութատեխնիկական բա-*

կառավարումն է, որ համապատասխանում է աշխատավորական կոլեկտիվի սոցիալական հարաբերությունների էությանը։

Երևանի՝ Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության զգացումով է թելադրված այնպիսի մի շարժում, ինչպիսին է, ասենք, «Մեկը բոլորի, բոլորը՝ մեկի համար»։ Աշխատելով այս նշանաբանով՝ մետաքսագործները ջանում են բարձրացնել յուրաքանչյուրի անձնական պատասխանատվությունը ո՛չ միայն իր աշխատանքի, այլև, ամբողջությամբ վերցրած, կոլեկտիվի գործերի համար, օգնել ետ մնացողներին, թույլ չտալ հաստոցների պարապուրդ։ Այժմ այդ նշանաբանով են գործում կոմբինատի գրեթե բոլոր բրիգադները։ Այստեղ արտադրության շուրջ 350 առաջավորներ ու նորարարներ ստանձնել են երիտասարդ բանվորների շեֆությունը։ Վարպետ-դաստիարակները հոգ են տանում իրենց սաների ո՛չ միայն որակավորման բարձրացման, այլև հոգևոր աճի, կրթության մասին, նրանց մեջ գիտակցական վերաբերմունք են դաստիարակում հասարակական պարտքի կատարման նկատմամբ։ Վերջին երկու տարում հաջողվել է նրանց ջանքերով գրեթե երկու անգամ կրճատել արտադրանքի նորմաները չկատարողների թիվը։ Կուսկազմակերպությունը, նրա կոմիտեն այս խնդիրները պահում են իրենց ուշադրության կենտրոնում։

Կոմբինատի աշխատավորների համախմբվածությանը, այն բանին, որ նրանք իրենց զգում են որպես մի մեծ ընտանիքի անդամ, նպաստում են լավ ավանդույթները՝ վետերանների և աշխատանքի առաջավորների մեծարումը, ինտերնացիոնալ բարեկամության երեկոները, բրիգադների հերթափոխների, աշխատամասերի կոլեկտիվների հետ ձեռնարկության ղեկավարների հաճախակի հանդիպումները, նորեկին բանվորի կոչում շնորհելը։

Աշխատավորական կոլեկտիվների հետ տարվող աշխատանքի ձևերը օրգանապես առնչվում են մեր հասարակական զարգացման այնպիսի առաջմղիչ ուժի հետ, ինչպիսին է սոցիալիստական մրցությունը։ Այժմ, երբ ամբողջ երկրում մասսայական լայն շարժում է ծավալվել տասներորդ հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու նպատակով, երբ ուժեղանում է պայքարը արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար, կուսակցական կազմակերպություններից պահանջվում է՝ պատշաճ գործունեություն ծավալել մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացման համար, ավելի հետևողականորեն զբաղվել սոցիալիստական մրցության կազմակերպմամբ, մրցության նոր ձևերի զարգացմամբ։

Քննարկելով 1978 թվականի պլանի կատարման ու գերակատարման համար սոցիալիստական մրցություն ծավալելու մասին՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը՝ մետաքսի կոմբինատի կոլեկտիվը մշակեց նամակում արծարծված ծրագրային դրույթների իրականացման մի շարք միջոցառումներ։ Ընդ որում, հատուկ ուշադրություն նվիրվեց անհատական մրցության ձևերի հետագա կատարելագործմանն ու տարածմանը։ Կոմբինատի կուսակցական կազմակերպությունը ղեկավարության և հասարակական կազմակերպությունների հետ միասին շարունակ անհրաժեշտ պայմաններ է ստեղծում բանվորների ստեղծագործական աշխատանքի համար, որպեսզի նրանք կատարեն իրենց անձնական պլանները։ Աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման կարևոր ազդակը նրանք տեսնում են արտադրության բոլոր տեղամասերում կարգապահությունն ու կարգուկանոնը ամրապնդելու մեջ։ Բանվորը, ինքնուրույն որոշելով իր նպատակներն ու խնդիրները, ավելի խորությամբ է իմաստավորում անձնական աշխատանքի նշանակությունը, քննադատաբար գնահատում իր գործունեությունը։ Դրա շնորհիվ նրա մեջ ուժեղանում է կոլեկտիվի պլանների ճակատագրի համար անձնական պատասխանատվության զգացումը, պահանջ է առաջանում՝ բարձրացնել պրոֆեսիոնալ և հանրակրթական գիտելիքները։

Որպեսզի ավելի արդարացիորեն գնահատվի սոցիալիստական պարտավորությունների կատարմանը այս կամ այն բանվորի ունեցած մասնակցությունը, որպեսզի ավելի լիակատար ձևով նպաստի նախաձեռնության զար-



գացմանը, կուսակցական կազմակերպությունը արդյունքներն ամփոփելիս հաշվի է առնում արտադրության տեխնիկական ու կազմակերպական մակարդակը, դրա ազդեցությունը արտադրողականության բարձրացման վրա, հասարակական-քաղաքական ակտիվությունը, կոլեկտիվում տիրող հոգեբանական մթնոլորտը, երիտասարդության հանրակրթական ու պրոֆեսիոնալ մակարդակը։ Դրա շնորհիվ էականորեն բարձրացել է գնահատականների ճշտությունն ու դրանց նշանակությունը։

Զարգանում է ընկերական մրցության ոգին կոմբինատի կոլեկտիվի և այլ ձեռնարկությունների աշխատավորների միջև, մասնավորապես Դարնիցկու մետաքսի կոմբինատի (Կիև) կոլեկտիվի հետ։ Մրցողները համատեղ մշակում են սոցիալիստական մրցության պայմանները, համատեղ ամփոփում արդյունքները, փոխանակում պատվիրակություններ։ Մրցող բրիգադներում վերացել են արտադրական և աշխատանքային կարգապահության խախտումները, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, ուժեղացել է ձգտումը դեպի գիտելիքները, հոգևոր հարստությունը, որակավորման աճը։ Ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները սոցիալիստական մրցությունը ծառայեցնում են աշխատավորների հայրենասիրական ու ինտերնացիոնալ դաստիարակության նպատակին։

Համեմատելով կապիտալիստական հասարակությունը սոցիալիստականի հետ՝ Կ. Մարքսը համոզիչ կերպով ապացուցել է, որ կապիտալիզմի պայմաններում համատեղ աշխատանք կատարելու համար անհատների միանալը կազմում է մրցակցություն (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 164), այսինքն՝ հանուն շահույթի մրցության վրա հիմնված ասոցիացիա։ Այդպիսի միավորումը միշտ հանդես է գալիս որպես կապիտալի վերարտադրության սոցիալական միջոց։ Այդ իսկ պատճառով բուրժուական հասարակության մեջ ասոցիացիան, թեև նրան հատուկ են աշխատանքի ուղղակի կոոպերացումն ու բանվորական ուժի կենտրոնացումը մի տեղում, կոլեկտիվ չէ և չի էլ կարող լինել։ Այն իրենից ներկայացնում է կապիտալի ուժ, այլ ոչ թե աշխատավորների միավորված հզորություն։ Եվ միայն սոցիալիզմն է, որ ասոցիացիան հաստատելով հանրային սեփականության բազայի վրա, ձևավորում է կոլեկտիվ։ Իսկ սոցիալիստական մրցությանը աշխատանքային կոլեկտիվի անդամների մասնակցությունը նրանց հնարավորություն է ընձեռում անմիջականորեն հաղորդակից լինել արտադրության կառավարմանը և հասարակական ակտիվ կյանքին։

Սոցիալիստական մրցությունը ծնում է ոգևորություն, աշխատանքային ավյուն, Կ. Մարքսի խոսքերով ասած՝ «կենսական եռանդի յուրատեսակ արթնացում»։ Այսպիսի ոգևորությունն աշխատավորներին օգնում է ավելի խորությամբ գիտակցելու իրենց գործունեության հասարակական կարևորությունը։ Նույն մետաքսի կոմբինատի արտադրամասերում անցկացված հարցման արդյունքները ցույց են տալիս, որ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի համար շարժման մեջ ներգրավված բանվորների ստեղծագործական ակտիվությունը, մյուս աշխատողների համեմատությամբ, երկու անգամ ավելի բարձր է։ Շարժման մասնակիցների մեջ նորարարներն ավելի շատ են, մեծ է նաև այն բանվորների թիվը, որոնք զանազան հանձնարարություններ ու աշխատանքներ են կատարում առանց փոխհատուցման ակնկալության։

Մեր կուսակցությունը մշտապես ձգտում է ստեղծել գործունյա, առողջ աշխատանքային այնպիսի կոլեկտիվներ, որոնք ի վիճակի են արդյունավետորեն կատարել իրենց պարտականությունները, կարող են կոլեկտիվ ազդեցության ու հոգատարության մեջ ընդգրկել յուրաքանչյուր աշխատողի, ամեն մի մարդու։ Անհատի վրա սոցիալիստական կոլեկտիվի ունեցած բարերար և արդյունավետ ազդեցությունը (հատկապես զարգացած սոցիալիզմի պայմաններում) հանգեցրել է այն բանին, որ կոլեկտիվիզմի սկզբունքով ապրելը նորմա է դարձել սովետական մարդկանց ճնշող մեծամասնության համար։

---

4. «Լենինյան ուղիով», № 6։

# ՀԱՆՈՒՆ ՄԱՐԴՈՒ ԵՎ ԲՆՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ

**ՕԼԳԱ ՋՈՒՀԱՐՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների թեկնածու

*ՇՐՋԱԿԱ ՄԻՋԱՎԱՅՐԻ աղտոտման դեմ մղվող պայքարը, օրենսդրավարչական, տնտեսական, գիտատեխնոլոգիական և այլ միջոցների մշակումը, զարգացող հասարակության ու շրջակայքի ներդաշնակության հասնելու ուղիների որոնումը հույժ կենսական են։ Այդ են վկայում դրանց նվիրված գիտական աշխատությունները, պարբերական մամուլում լույս տեսած հրապարակումները, նիստերն ու խորհրդակցությունները, կոնֆերանսներն ու գիտաժողովները։ Բնության պահպանության պրոբլեմներին առանձնահատուկ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ XXV համագումարը՝ անչափ կարևորելով մարդկանց բարեկեցության հետագա բարձրացման, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, առողջապահության, կրթության ու կուլտուրայի առաջընթացի հարցերը։ Շրջապատող բնական միջավայրի պահպանության պրոբլեմների լուծման սոցիալիստական գործելակերպի նպատակն է առավել առողջարար դարձնել սովետական ժողովրդի կենսոլորտը։*

*Այդ նպատակին են ծառայել սովետական իշխանության առաջին իսկ ձեռնարկումները հեղափոխությունից հետո— բնական ռեսուրսների ազգայնացում, ժողովրդական տնտեսության զարգացման պլանային սիստեմ և այլն։*

*Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահի պոստում իր գործունեության սկզբից Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն է նվիրել մեր երկրի բնական հարստությունների ճիշտ, առավել նպատակահարմար օգտագործմանը՝ խորապես համոզված, որ պետք չէ այն տեխնիկան, որը վնասում է մարդու առողջությանը։ Այդ տարիներին հրապարակվել են բնության պահպանությանը վերաբերող 234 դեկրետներ ու կարգադրություններ։*

*Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո նման դեկրետներ հրապարակել է և հանրապետության ժողկոմխորհը— հողի (1920 թ. դեկտեմբերի 28), անտառների (1921 թ. հունվարի 10), ջրի (1921 թ. հունվարի 31), ընդերքի (1921 թ. հունվարի 11) ազգայնացման վերաբերյալ և այլն։*

*Ակներև է, որ սովետական տարիներին մեծ հաջողություններ են ձեռք բերվել հանրապետության էկոնոմիկայի, գյուղատնտեսության, արդյունաբերության, գիտության ու տեխնիկայի զարգացման ոլորտներում։ Սակայն դեռևս շրջապատող միջավայրի պահպանության գործը բավարար համարել չի կարելի։ Պատճառները շատ են։ Այսպես, երկրի ժողովրդական տնտեսության առջև հեղափոխությունից և քաղաքացիական պատերազմից հետո, Հայրենական մեծ պատերազմի և հետպատերազմյան տարիներին ծառացան մեծ դժվարություններ, որոնց պատճառով իսկ հնարավոր չէր բավարար չափով նյութական միջոցներ հատկացնել շրջապատող բնական միջավայրի պահպանական կառույցների ու ձեռնարկությունների շինարարությանը։ Պլանավորող մարմինները հաճախ հարկադրված խախտում էին էկոլոգիական պահանջները, քանի որ միջոցներն անհրաժեշտ էին ժողովրդի առավել կենսական պահանջմունքների բավարարման համար։ Պատճառներից մեկն էլ այն էր, որ երբեմն հնարավոր չէր կանխատեսել ու հաշվարկել գործադրվող միջոցառումների բոլոր հետևանքները։*



*Ներկայումս արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի, կոմունալ-կենցաղային օբյեկտների օգտագործմանը դեռևս ուղեկցում է շրջակայքի նդադարող և, նույնիսկ, չնվազող աղտոտումը։ Այսպես՝ հանրապետության երեք քաղաքներում (Երևան, Ալավերդի, Կիրովական) տարիներ շարունակ դիտվում է ֆոտոքիմիական սմոգ (մթնոլորտի աղտոտում թունավոր նյութերով, փոշով, գազով)։ Հայաստանի բոլոր հիմնական ջրավազանները (Դեբեդ, Ողջի, Հրազդան) այնքան են աղտոտված, որ հնարավոր չէ այդ ջրերն օգտագործել ո՛չ միայն խմելու, այլև տնտեսական, արդյունաբերական, ոռոգման նպատակներով։*

*Բնակավայրերի անբավարար կոյուղավորումը, թունաքիմիկատների անհսկելի օգտագործումը, արդյունաբերական ձեռնարկությունների չմաքրված, չվնասազերծված ջրերի արտահոսքը Սևանա լիճը՝ հասցրել են այն բանին, որ զանգվածաբար աճել են կապտականաչ ջրիմուռները, որոնք լճի ծերացման, դրա ճահճացման արտահայտությունն են։ Այս հարցերին բազմիցս անդրադարձել է մամուլը։ Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի, Կիրովականի քիմիական գործարանի վնասակար թափոնների ազդեցությամբ չորացել և շարունակում են չորանալ անտառապատ զանգվածներ, ալպիական մարգագետիններ ու արոտավայրեր։ Բնական է, որ մթնոլորտի աղտոտումը, հատկապես արդյունաբերական շրջաններում, բացասաբար է անդրադառնում բնակչության առողջական ընդհանուր վիճակի վրա։*

*Բնության պահպանության հարցերը մշտապես հուզել են կուսակցական ու սովետական մարմիններին, ողջ հասարակայնությանը։ ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ինչպես և ՀԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը կայացրել են մի շարք որոշումներ, որոնցում նշված են միջոցառումներ բնության օբյեկտների աղտոտումները վերացնելու և նոր հնարավոր աղտոտումները կանխելու նպատակով։ Դրանցից են՝ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի՝ «Ջրային պաշարներն ու մթնոլորտն աղտոտումից պահպանելու և բարելավելու միջոցառումների մասին» (1969 թ. մայիսի 20), ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական պաշարների օգտագործումը բարելավելու մասին» (1972 թ. դեկտեմբերի 29) և ՀԿԿ Կենտկոմի ու ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի՝ «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին» (1973 թ. օգոստոսի 15), «Սևանա լճի բնական ռեսուրսների օգտագործման ու պահպանման միջոցառումների մասին» (1977 թ. ապրիլի 18) որոշումները, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Կասպից ծովն աղտոտումից պահպանելու միջոցառումների մասին» որոշման (1977 թ. նոյեմբերի 16) կատարման նպատակով ձեռնարկվող միջոցառումների վերաբերյալ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի 1978 թ. փետրվարի 16-ի որոշումը և այլն։*

*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետն ընդունել և հրապարակել է բնական օբյեկտների պահպանությունը կարգավորող մի շարք օրենսգրքեր, ինչպես՝ ՀՍՍՀ հողային օրենսգիրքը (1970 թ. դեկտեմբերի 18), Առողջապահության մասին օրենքը (1971 թ. հուլիսի 1), Ջրային օրենսգիրքը (1973 թ. սեպտեմբերի 1), Ընդերքի մասին օրենքը (1976 թ. հունիսի 25)։*

*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը, երկրորդը էստոնական ՍՍՀ-ից հետո, 1958 թ. մայիսի 14-ին ընդունեց օրենք բնության պահպանության մասին։ Նույն թվականի հուլիսի 2-ին Հայաստանի գիտությունների ակադեմիայի նախագահությունը հաստատեց բնության պահպանության հանձնաժողով՝ բաղկացած 17 հոգուց։ Այդ հանձնաժողովի հիմնական խնդիրն էր գիտականորեն մշակել բնության պահպանության այն հարցերը, որոնք կապված են հանրապետության բնական պաշարների (հողի, անտառների, նոր տնկիների, մարգա-*

դեպինների, արոտավայրերի, հանքային հարստությունների, ջրային, էներգետիկ պաշարների, ձկների, կենդանիների, թռչունների վերականգնման վերարտադրության ու ռացիոնալ օգտագործման հետ։

1959 թ. կազմակերպվեց բնության պահպանության հանրապետական ընկերություն, որը բնակչության շրջանում ակտիվ աշխատանք ծավալեց բնության պահպանության, դրա հարստությունների ավելացման նպատակով։

Հայկական ՍՍՀ բնության պահպանության մասին օրենքին համապատասխան, ժողովրդական դեպուտատների տեղական սովետներում կազմակերպվեցին բնության պահպանության մշտական հանձնաժողովներ։ 569 տեղական սովետներից 110-ն այսօր ունեն բնության պահպանության հանձնաժողովներ։ Ժողովրդական դեպուտատների՝ Մասիսի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Կալինինոյի շրջանային սովետների բնության պահպանության հանձնաժողովները վերահսկում են բնակչության խմելու և ոռոգման ջրի մատակարարմանը, ինչպես և հողային պաշարների օգտագործմանը, քննարկում արդյունաբերական ձեռնարկություններից արտահոսող ջրերով հողի աղտոտումը կանխելու, տնկիների պահպանության և այլ հարցեր։

Շրջաններում բնության պահպանության աշխատանքը կանոնավորելու նպատակով անհրաժեշտ է նման հանձնաժողովներ ստեղծել ժողովրդական դեպուտատների բոլոր սովետներին կից։ Հանձնաժողովների նախագահների ու անդամների համար հարկ է պարբերաբար կազմակերպել հրահանգչական-մեթոդական խորհրդակցություններ ու սեմինարներ, ապահովել նրանց համապատասխան գրականությամբ։ Այդ պարտականությունները պետք է ստանձնի բնության պահպանության հանրապետական ընկերությունը և «Գիտելիք» ընկերության՝ բնության պահպանության գիտամեթոդական խորհուրդը։ Այդ հանձնաժողովները պարտավոր են տեղական սովետների գործկոմների նիստերում, սեսիաներում, ընտրողների ժողովներում պարբերաբար հաշվետու լինել իրենց գործունեության մասին։ Հարկավոր է լայնորեն մասսայականացնել տեղական սովետների և դրանց մարմինների՝ բնության պահպանության գործի լավագույն փորձը։

1967 թ. Հայկական ՍՍՀ յոթերորդ գումարման Գերագույն սովետի առաջին սեսիան հաստատեց հանրապետության Գերագույն սովետի՝ բնության պահպանության մշտական հանձնաժողով՝ բաղկացած 17 հոգուց։ Անցած ժամանակաշրջանում այդ հանձնաժողովն զգալի աշխատանք է կատարել։ Այսպես, 1972 թ. մարտի 22-ին այն քննարկել է բնության պահպանության օրենսդրության կենսագործումը Հայկական ՍՍՀ-ում, 1974 թ. դեկտեմբերի 4-ին լսել է գյուղատնտեսության և ՀՍՍՀ Գերագույն սովետի օրենսդրության ու սոցիալիստական օրինականության հարցերով զբաղվող հանձնաժողովների հաղորդումները և կայացրել համատեղ որոշում՝ հանրապետության հողային պաշարների պահպանության և ռացիոնալ օգտագործման վերաբերյալ հողային օրենսդրության կենսագործման մասին։

1977 թ. հունվարի 26-ին ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նիստում լսվեց բնության պահպանության հանձնաժողովի զեկուցումն այն մասին, թե հանրապետության քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի մի շարք ձեռնարկություններ ինչպես են կատարել Հայկական ՍՍՀ-ում բնության պահպանության հետագա բարելավման և բնական պաշարների ռացիոնալ օգտագործման միջոցառումները, ՀՍՍՀ Գերագույն սովետի 1973 թ. մայիսի 25-ի որոշումը։ Մասնավորապես վերհանվեցին «Նաիրիտ» արտադրամիավորման Երևանի «Պոլիվինիլացետատ», Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական, Քանաքեռի ալյումինի գործարաններում, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատում այս ասպարեզում նկատված թերությունները, նշվեցին միջոցառումներ դրանց վերացման նպատակով։

Բնության պահպանության, ժողովրդի առողջության, մեր հանրապետության ընդհանուր վիճակի նկատմամբ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության հոգածության մի նոր արտահայտություն է ՍՄԿԿ



Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումները «Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու» և ցայսօր կառուցված այդ կոմբինատի օբյեկտները բարձր արտադրակուլտուրայով տեխնոլոգիական ձեռնարկությունների փոխարկելու և «Հայկական ՍՍՀ ոռոգելի երկրագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների» մասին։

Հայկական ՍՍՀ բնապահպանության վիճակի վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետությունը վաղուց կարիք ունի կենտրոնացած, միջգերատեսչական մարմնի, որը ղեկավարի, ուղղություն տա, կոորդինացնի, վերահսկի ու պատասխանատու լինի բնական հարստությունների պահպանության, ռացիոնալ օգտագործման և վերարտադրության հետ առնչվող բոլոր հարցերի համար։

Այսպիսով, անհրաժեշտ է մի կազմակերպություն, որը կստանձնի ինչպես գործող ձեռնարկությունների, նույնպես և նախագծող ու շահագործման հանձնվող թափոնազերծ տեխնոլոգիայի ու գործող կոնստրուկցիաների վերահսկողությունը, կազմակերպություն, առանց որի թույլտվության չի կառուցվի նոր ձեռնարկություն, չի ծավալվի արտադրությունը գործող ձեռնարկություններում։ Նրա գործունեությունը պետք է խարսխվի միջավայրի գնահատման և կանխատեսումների գիտահետազոտական մշակումների ու հիմնավորման վրա։ Նման կազմակերպության ստեղծման հարցն առավել սրվեց, երբ տասներորդ հնգամյակում պլանավորվեցին բնության պահպանության նոր միջոցառումներ։ Կուսակցության XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...ժողովրդական տնտեսության զարգացման, քաղաքների և արդյունաբերական կենտրոնների աճի համեմատ ավելի ու ավելի մեծ միջոցներ կպահանջի շրջակա միջավայրի պահպանումը. միայն ընթացիկ հնգամյակում այդ նպատակների համար հատկացվում է 11 միլիարդ ռուբլի։ Եվ այդ գումարը կավելանա»։

Այս հնգամյակում զգալի միջոցներ են հատկացված հանրապետության բնության պահպանությանը։ Հայաստանի պետպլանին կից 1973 թվականից գործում է բնության պահպանության բաժին, որը մշակում և կազմում է շրջապատող բնական միջավայրի պահպանության և բնական պաշարների ռացիոնալ օգտագործման ընդհանուր հեռանկարային և տարեկան պլաններ։ ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը 1978 թ. հունվարին կազմակերպեց առողջապահության, բնության պահպանության և սոցապահովման բաժին, որի պարտականություններն են. ուսումնասիրել և նախագծել, որոշումներ նախապատրաստել բնական ռեսուրսների (ջրի, հողի, հումքի, բուսական ու կենդանական աշխարհի) օգտագործման, պահպանման ու վերականգնման ռացիոնալ միջոցների վերաբերյալ , զբաղվել գազորսիչ հարմարանքների, մաքրող սարքերի ու սարքավորումների տեղադրման հարցերով, վերահսկել այդ ամենի պատշաճ շահագործմանը, շրջակա միջավայրի վրա ուրբանիզացման բացասական ազդեցությունների վերացմանը, թափոնների օգտագործմանը, հիգիենային...

Արդեն հինգերորդ տարին է, ինչ գործում է շրջակա բնական միջավայրի պահպանության պրոբլեմների հանրապետական գիտատեխնիկական ընկերությունների խորհրդի կոմիտեն, որի կազմում ընդգրկված են ինժեներներ, քիմիկոսներ, տեխնոլոգներ , տնտեսագետներ, գիտաշխատողներ, արտադրական ձեռնարկությունների նորարար բանվորներ, նախագծողներ... Կոմիտեի խնդիրներն են՝ մշակել հանձնարարականներ միջավայրի պահպանության բնագավառում պլանավորման ու էկոնոմիկական աշխատանքի բարելավման վերաբերյալ, կատարելագործել առկա և նոր ստեղծվող տեխնիկական միջոցներն ու տեխնոլոգիական պրոցեսները, առաջարկություններ ներկայացնել շրջակա բնական միջավայրի պահպանության պետական, կոմպլեքսային, ընդհանուր տեխնիկական ստանդարտների նախագծերի համար և այլն։ Երեք տարում կոմիտեն զգալի աշխատանք է կատարել. 1974 թ. կազմակերպել է համամիութենական գիտատեխնիկական առաջին կոնֆերանսը՝ նվիրված օդային ավազանը արդյունաբերական արտադրանքների տեխնոլոգիական և վենտիլյացիոն արտանետվածքների աղտոտումից պահպանելուն։

Բնության պահպանության գաղափարների պրոպագանդման նպատակով հանրապետության «Գիտելիք» ընկերության վարչությունը 1974 թ. կազմակերպեց գիտամեթոդական խորհուրդ, որը մեծ օգնություն է ցույց տալիս դասախոսներին ու պրոպագանդիստներին։ 1975 թ. ընկերությունը, ճարտարապետների միության հետ համատեղ, հրավիրեց բնություն—քաղաք—մարդ կոնֆերանսը։

Բնության պահպանության հասարակական կազմակերպությունների աշխատանքում կարևոր է բնության պահպանության հանրապետական, կամավոր ընկերության դերը։ Այն ընդգրկում է 3.788 սկզբնական կազմակերպություն՝ 750 հազար անդամներով։ Կենդանական, աշխարհի պահպանմանն ու ռացիոնալ օգտագործմանը հասարակայնության մասնակցության կարևոր ձև է նաև քաղաքացիների կամավոր միավորումը որսորդների և ձկնորսների միություններում։ Բնասերների մեծ բանակ է այդ։

Բնության պահպանության հանրապետական ընկերությունը, բնական միջավայրի պահպանության կոմիտեն (որ կազմակերպվել է 1973 թ.), «Գիտելիք» ընկերության գիտամեթոդական խորհուրդը, ՀՍՍՀ ԳԱ բիոսֆերայի պրոբլեմների գիտական խորհուրդը և այլն բնապահպանական լայն իրավունքներով օժտված մասսայական-հասարակական ու գիտական կազմակերպություններ են։ Անհրաժեշտ է կազմակերպել կոնսուլտացիոն-կոորդինացիոն կենտրոն, որն ընդհանուր սիստեմի բերի բնության պահպանության բոլոր հասարակական կազմակերպությունների գործունեությունը։

Բնության պահպանության հարցերի համաժողովրդական կարևորության վկայությունն է դրա արտացոլումը՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ։ «Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից,— կարդում ենք Հիմնական օրենքում,— ՍՍՀՄ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի ու նրա ընդերքի, բուսական և կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական հարստությունների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար»։

Մեր օրերում, գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում, գլխավոր, անհետաձգելի խնդիրներ են շրջակա միջավայրի համար բացասական հետևանքների հաղթահարումն ու վերացումը, բնությանը չվնասող տեխնոլոգիայի ստեղծումը։ Անհրաժեշտ է վերափոխել բնական ռեսուրսների օգտագործման եղանակները, արտադրության մեջ կրկնակի կամ բազմիցս օգտագործել ինչպես հումքը, նույնպես և վերջնական արդյունքը։ Նման տեխնոլոգիայի շնորհիվ կտնտեսվեն բնական ռեսուրսները։

«Ես մերժում եմ «թափոններ» հասկացությունը,— ասել է ակադեմիկոս Ի. Վ. Պետրիանով-Սոկոլովը։— Այն ամենը, ինչ այսօր թափվում է, մարդկային աշխատանքի խոտին է։ Այն պետք է օգտագործել»։

Շրջապատող միջավայր—բնական ռեսուրսներ—զարգացում պրոբլեմի լուծումը բնության հանդեպ մարդու վերաբերմունքի ձևավորման ու փոփոխման երկարատև պրոցես է, ուր կարևոր դեր են խաղում գիտությունը, տեխնիկան ու տեխնոլոգիան։ Ժողովրդական տնտեսությունն արդեն զգում է այնպիսի մասնագետների կարիքը, ինչպես՝ էկոլոգ-տեխնոլոգ, էկոլոգ-ճարտարապետ, էկոլոգ-տնտեսագետ, էկոլոգ-քիմիկոս և այլն։ Աստիճանաբար կստեղծվի շրջապատող միջավայրի պահպանության ամբողջական մի սիստեմ, որի օգնությամբ հնարավոր կլինի սահմանել մարդու և բնության ներդաշնակ փոխներգործություն։

«Նույնիսկ ողջ հասարակությունը, ազգությունը և անգամ գոյություն ունեցող բոլոր հասարակությունները համատեղ,— գրել է Կ. Մարքսը,—հողի սեփականատերերը չեն։ Նրանք միայն դրանից օգտվող տերեր են և, որպես ընտանիքի բարի հայրեր, նրանք պետք է բարելավված վիճակում հողը թողնեն հաջորդ սերունդներին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 25, ч. II, стр. 337)։

Նվիրական մի նպատակ, որի կենսագործմանն են ծառայում մեր ժողովրդի, կուսակցության ու կառավարության ձեռնարկումները։

---

Գաղափարական աշխատանքի

տեսություն և պրակտիկա

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**ՍԻՐՈՒՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Լենինականի քաղկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ,
քաղլուսկաբինետի վարիչ

Մեր կուսակցության գաղափարաքաղաքական գործունեությունը միշտ բխում է կոմունիստական շինարարության տվյալ փուլի կոնկրետ խնդիրներից։ Ընդ որում, ելակետային սկզբունքը միշտ եղել և մնում է մարքս-լենինյան ամենահաղթ գաղափարների համակողմանի պրոպագանդումը և այդ գաղափարներով աշխատավորների զինումը։ «Մեր կարգերի ուժը,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— մասսաների գիտակցականությունն է։ Եվ կուսակցությունն իր մշտական հոգսն է համարում կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու պատրաստակամության, կամքի ու հմտության դաստիարակումը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 107)։

ՍՄԿԿ XXV համագումարը նոր բովանդակություն հաղորդեց գաղափարադաստիարակչական աշխատանքին, հսկայական օգնություն ցույց տվեց կուսակցական կազմակերպություններին՝ համակողմանիորեն լուծելու նոր մարդու ձևավորման, նրա կոմպլեքսային դաստիարակության խնդիրը։

Գաղափարական աշխատանքի կարևոր բնագավառ է կոմունիստների քաղաքական ուսուցումը։ Լենինականի կուսակցական կազմակերպությունը, քաղաքային կոմիտեն տարիների ընթացքում հարուստ փորձ են կուտակել այդ ասպարեզում։ Մեզ մոտ ստեղծվել է կուսակցական լուսավորության ճկուն ու բազմաստիճան սիստեմ, որը հնարավորություն է ընձեռում առավել արդյունավետ ձևով լուծելու կոմունիստների և աշխատավորության գաղափարական դաստիարակության հարցերը, բարձրացնելու նրանց հետաքրքրասիրությունը մարքս-լենինյան ուսմունքի արմատական հարցերի, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների ուսումնասիրության նկատմամբ, տեսության հարցերն ավելի սերտորեն շաղկապելու տնտեսական և կուլտուրական շինարարության գործնական խնդիրներին։ Քաղաքի սկզբնական կուսկազմակերպություններում գործող 304 տարրական քաղդպրոցներում, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում, 108 տեսական սեմինարներում այժմ ընդգրկված է 7.000 մարդ։

Կուսակցությունը միշտ էլ կարևորել է նաև կադրերի տնտեսագիտական ուսուցումը։ Այդ խնդիրն առավել հրատապ է ներկայումս, երբ մեր երկրում իրականացվում է արտադրության ինտենսիվացման հաստատուն կուրս։ Կոմունիստական շինարարության արդի խնդիրների հաջող լուծման, ՍՍՀՄ ժողովր-

դական տնտեսության տասներորդ հնգամյակի պլանների կատարման շահերը պահանջում են բարելավել ու կատարելագործել կադրերի, բոլոր աշխատավորների տնտեսագիտական կրթությունը։ Քաղաքի արդյունաբերական, շինարարական և տրանսպորտի ձեռնարկություններում ստեղծված են տնտեսագիտական ուսուցման 182 և կոմունիստական աշխատանքի 156 դպրոցներ, որտեղ սովորում է մոտ 10 հազար մարդ։ Պրոպագանդիստական աշխատանքի նպատակն է նրանց զինել կուսակցության տնտեսական քաղաքականության, գիտատեխնիկական հեղափոխության օրինաչափությունների, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման կոնկրետ եղանակների, կոմունիստական շինարարության հեռանկարների իմացությամբ։

Քաղաքական լուսավորության ընթացիկ ուսումնական տարվա գլխավոր առանձնահատկությունն այն էր, որ սկսվեց Սովետական Միության Գերագույն սովետի արտահերթ նստաշրջանի նյութերի, ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի և նրա համաժողովրդական քննարկման արդյունքների մասին ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման և բուն Սահմանադրության ուսումնասիրությամբ։ Քաղաքական լուսավորության սիստեմի բոլոր օղակներում ունկնդիրները հետաքրքրասիրությամբ ուսումնասիրեցին նաև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցումը, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի նյութերն ու որոշումները, համամիութենական սոցմրցության ծավալման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը։

Հանրահայտ է, որ քաղաքական ուսուցման բարձր մակարդակը հիմնականում պայմանավորված է պրոպագանդիստական կադրերի տեսական խոր պատրաստականությամբ, նրանց մեթոդական հմտությամբ։ Հաշվի առնելով այդ, կուսքաղկոմը լուրջ ուշադրություն է նվիրում պրոպագանդիստների ընտրությանը և նրանց հետ տարվող աշխատանքին։ Նրանք ընդգրկված են քաղկոմի մշտական գործող սեմինարում։ Ուսումնական տարվա ընթացքում 3—4 անգամ անցկացվում են տեսական սեմինարի պարապմունքներ, կոնֆերանսներ, որտեղ պրոպագանդիստներն ստանում են տեսական ու մեթոդական օգնություն, փոխանակում իրենց փորձը։

Պրոպագանդիստներին և սեմինարների ղեկավարներին տեսական ու մեթոդական մշտական օգնություն է ցույց տալիս քաղկոմի մեթոդխորհուրդը (նախագահ՝ Ա. Ֆայրոյան), որը պարբերաբար անցկացնում է պարապմունքների ստուգումներ, կազմակերպում բաց պարապմունքներ, արդյունքները քննարկում ընդլայնված նիստերում։

Որպեսզի պրոպագանդիստը հաջողությամբ կատարի իր դերը, անհրաժեշտ է, որ նա իրազեկ լինի ձեռնարկության ու քաղաքի արտադրական հաջողություններին, ինչպես նաև չլուծված հարցերին, որոնց վրա նա բևեռում է ունկնդիրների ուշադրությունը։ Պրոպագանդիստներին ճիշտ կողմնորոշելու, իրավիճակին նրանց տեղյակ պահելու նպատակով սեմինարների պարապմունքներում զեկուցումներով ու ելույթներով պարբերաբար հանդես են գալիս կուսքաղկոմի քարտուղարները։ Նրանք պատմում են քաղաքի առջև ծառացած խնդիրների, հնգամյա պլանի կատարման ընթացքի մասին, պատասխանում պրոպագանդիստներին և ունկնդիրներին հուզող հարցերին։

Անշուշտ, սովետական մարդկանց գաղափարական համոզվածությունն այսօր զարգացած սոցիալիստական սիստեմի ամենամեծ հաղթանակներից է։ Ուրեմն, պրոպագանդիստների պարտքն է՝ ավելի ու ավելի խորացնել այն, ունկնդիրներին լայնորեն բացատրել կոմունիստական շինարարության արդի փուլի հրատապ խնդիրները։

Մենք ունենք պրոպագանդիստների հիանալի ջոկատ։ Նրանցից շատերն աչքի են ընկնում իրենց կայուն գիտելիքներով, բարեխղճությամբ։ Նրանք մեծ սիրով են վերաբերվում հասարակական այդ պատասխանատու հանձնարարության կատարմանը, վայելում են կուսկազմակերպությունների և ունկըն-



դիրների հարգանքը։ Եվ կարևոր է, որ նրանց հետ հաշվի են նստում, կարծիքներ փոխանակում նրանց հետ։

Փորձառու պրոպագանդիստի համբավ ունի դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանի դիրեկտոր Գ. Աբրահամյանը։ Նա ղեկավարում է կուսկազմակերպության տեսական սեմինարը, որտեղ ընդգրկված են 24 ունկնդիրներ՝ ինժեներատեխնիկական աշխատողներ, արտադրամասերի պետեր, բաժինների վարիչներ։ Սեմինարի պարապմունքներն անցնում են գաղափարական բարձր մակարդակով, տեսական հարցերը զուգորդվում են ձեռնարկության առջև ծառացած պրակտիկ խնդիրների լուծման հետ։ Ունկնդիրները ձեռք են բերում տնտեսական գործունեության գիտական վերլուծության հմտություն, կարողանում են աշխատանքի արդյունքները գնահատել արտադրության տնտեսական արդյունավետության դիրքերից։ Ունկնդիրների թվում են արտադրամասերի յոթ պետեր, որոնք ակտիվորեն մասնակցում են կուսակցության տնտեսական քաղաքականության ուսումնասիրմանը, անում արտադրության շահերից բխող գործնական առաջարկություններ, հուշում ներքին հնարավորությունների բացահայտման և օգտագործման նոր ուղիներ։ Նրանք լավատեղյակ են իրենց արտադրամասերի գործերի վիճակին, բարձր պատասխանատվությամբ են վերաբերվում պլանների ու պարտավորությունների կատարմանը։ Արտադրամասերում ամուր է աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, կատարվում ու գերակատարվում են պետական առաջադրանքները։

Սեմինարի ղեկավարի համար գործարանն իր երկրորդ տունն է, կոլեկտիվի անդամները՝ հարազատ մարդիկ։ Այստեղ նա աճել է, դարձել տնտեսական հմուտ հրամանատար։ Ինժեներ-տեխնոլոգի դիպլոմով 1956 թ. եկավ արտադրություն, նշանակվեց հավաքման արտադրամասի պետ, երկու տարի անց՝ գլխավոր ինժեներ, իսկ վերջին տասնհինգ տարում ղեկավարում է այս ձեռնարկությունը՝ տնտեսավարությունը սերտորեն զուգակցելով պրոպագանդիստական գործունեության հետ։

Իսկ հաջողությունները գոհացնող են։ Նավթավառներ ու պայտեր արտադրող նախկին կիսաարհեստագործական արտադրությունը լիովին փոխել է իր դեմքը, դարձել հզոր ձեռնարկություն։ Նրա այսօրվա արտադրանքը լայն ճանաչում ունի ոչ միայն մեր երկրում, այլև արտասահմանյան ավելի քան երեք տասնյակ երկրներում։ ՍՍՀՄ հաստոցաշինության և գործիքաշինության համակարգի ձեռնարկությունների միջև ծավալված մրցությունում գործարանի կոլեկտիվը բազմիցս հաղթող է ճանաչվել։

Կոլեկտիվի առաջընթացն ակնհայտ է հատկապես ընթացիկ հնգամյակում։ Անցած երկու տարում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 20 տոկոսով, 1977 թ., 1975 թվականի համեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացել է 700 հազար ռուբլով։ Հոբելյանական տարում երկու եռամսյակ կոլեկտիվը մրցանակային տեղեր շահեց երկրի համանման ձեռնարկությունների կոլեկտիվների սոցմրցությունում։ Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի նախաշեմին ԿԴ—2324 մակնիշի 25 տոննա հզորության մամլիչն արժանացավ պետական որականիշի, իսկ ԻԿ—2716 մակնիշի կոմբինացված մեքենան՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի երրորդ կարգի դիպլոմի և բրոնզե մեդալի։

Ձեռնարկության արտադրության հետ առնչվող հարցերը դառնում են սեմինարի ունկնդիրների ուսումնասիրության ու քննարկման առարկան։ Այդպիսի խնդիրներ շոշափվեցին և վերջին պարապմունքներից մեկում, որը նվիրված էր ռեզերվների օգտագործմանը։ Սեմինարավարը պարապմունքը վարում էր աշխույժ զրույցի մեթոդով։ Նրա խոսքը համոզիչ էր՝ տոգորված ձեռնարկության շահերով, նրա հեռանկարներով, կուսակցության ու կառավարության որոշումներից բխող ընդհանրացումներով, երկրի համանման ձեռնարկությունների գործունեությունն արտացոլող թվեր-փաստերով։

Յուրաքանչյուր պարապմունք այստեղ տևական նախապատրաստության արգասիք է, բխում է օրվա հրատապ պահանջներից։ Այդպես՝ և այս պարապ-

մունքը։ Պրոպագանդիստը ձեռնարկության արտադրության հարցերը սերտորեն առնչում էր ընդհանուր տնտեսական խնդիրների հետ։ Նա հանգամանորեն պարզաբանում էր արտադրության արդյունավետության բարձրացման, հատկապես արտադրողականության աճի ապահովման համար ձեռնարկության կոլեկտիվի ծավալած պայքարի ուղղությունները, այդ նպատակով գործադրվող բազմազան ձևերն ու եղանակները։

Խոսելով աշխատանքի բոլոր օղակներում ՍՄԿԿ XXV համագումարի և վերադաս մարմինների որոշումների հետևողական կենսագործման անհրաժեշտության մասին՝ պրոպագանդիստն ունկնդիրների ուշադրությունը հրավիրում էր արտադրանքի որակի, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը նպաստող ռեզերվների օգտագործման վրա, տեսականորեն ու գործնականորեն հիմնավորում, որ առաջնային նշանակություն ունեն և յուրաքանչյուր ձեռնարկությունում արդյունավետության բարձրացման գործում վճռական դեր են խաղում մասնավորապես երեք կարևոր գործոններ՝ հիմնական և օժանդակ նյութերի խնայողությունը, հիմնական ֆոնդերի լիարժեք օգտագործումը, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրումը։ Թեմայի պարզաբանման ժամանակ պրոպագանդիստը մեծ տեղ էր հատկացնում հումքի ու նյութերի տնտեսման համար մղվող պայքարի, նորմավորման խիստ կարգի կիրառման, հերթափոխայնության գործակցի աճի, ծրագրային կառավարման սարքավորումների արդյունավետ օգտագործման, կադրերի որակավորման, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման հարցերին։ Այս կոնկրետ օրինակներով ապացուցում, որ դրանց լուծման նպատակով տարվող հետևողական աշխատանքը երաշխիք է արտադրության արդյունավետության բարձրացման համար։

Թեմայի քննարկմանը մասնակցեցին գրեթե բոլոր ունկնդիրները։ Նրանք նախօրոք մշակել էին նյութը և խոսում էին անկաշկանդ, վկայակոչում գործարանի հասումներն արտացոլող և նեղ տեղերն ու առանձին օղակների թերացումները բացահայտող օրինակներ, անում արտադրության շահերից բխող գործնական առաջարկություններ։ Ուշագրավ էր այն, որ նրանք խոսում էին ոչ միայն կատարած և կատարելիք աշխատանքի, այլև առկա խոչընդոտների ու դրանց վերացման ուղիների մասին։

Այսօրվա տնտեսավարը նաև քաղաքական ակտիվ դեմք է տվյալ կոլեկտիվում, նրա մոտ տնտեսական ու քաղաքական աշխատանքը լրացնում են միմյանց։ Այս առումով հատկանշական է միս-պահածոների կոմբինատի դիրեկտոր, տեսական սեմինարի ղեկավար, ՀՍՍՀ վաստակավոր ինժեներ Ջուլիետա Մամիկոնյանի գործունեությունը։ Նա ևս ունի պրոպագանդիստական աշխատանքի մեծ փորձ։ Սեմինարում ընդգրկված ունկնդիրներն արտադրության ղեկավարներ են, արտադրամասերի պետեր, երիտասարդ մասնագետներ։ Նրանք ուսումնասիրում են կուսակցության տնտեսական քաղաքականության հրատապ պրոբլեմները։ Ծրագրային յուրաքանչյուր թեմա սեմինարի ղեկավարն առնչում է կոմբինատի և կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների հետ, ուսումնասիրությունը կազմակերպում դրանց սերտ միասնությամբ։ Ունկնդիրներին տրվում են հանձնարարություններ, նրանք հանդես են գալիս ռեֆերատների ընթերցմամբ ու վերլուծմամբ։ Հաճախ այդ ռեֆերատները որոշակի նշանակություն են ունենում արտադրական խնդիրների լուծման գործում։ Այսպես, կիսապատրաստուկների արտադրամասի վարպետ Ա. Ղուկասյանին հանձնարարվել էր հանդես գալ մսեղենի արդյունաբերության մեջ արտադրանքի որակի և աշխատանքի արտադրողականության բարձրացման վերաբերյալ ռեֆերատով։ Ռեֆերատի պարունակած մտքերն ու փաստերը սերտորեն առնչվում էին կոմբինատի արտադրության հետ և որոշվեց այն քննարկել մշտական գործող արտադրական խորհրդակցությունում։ Ռեֆերատում արծարծվում ու հիմնավորվում էին մսեղենի մշակման նոր մեթոդի առավելությունները։ Այդ մեթոդի արմատավորմամբ բարձրանում է արտադրության արդյունավետությունը։ Պատահական չէ, որ հենց ունկնդիրներն իրենք առաջարկեցին ներդնել համապատասխան մեքենայացված հոսքային գիծ։ Ձեռնարկության դիրեկցիան



անմիջապես պատվիրեց այդպիսի գիծ։ Մինչև տարեվերջ այն կգործարկվի։ Անկասկած, այսպիսի ռեֆերատների քննարկումը խիստ արդյունավետ է արտադրության համար։

Տպավորիչ էր և «Որակն արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական գործոնն է» թեմայի քննարկումը, որն անցկացվեց երկու պարապմունքով։ Առաջին պարապմունքում հանգամանորեն վերլուծվեց տեսական նյութը, իսկ հաջորդում լսվեցին ունկնդիրների ռեֆերատներ, որոնք շոշափում էին արտադրության կոնկրետ հարցերը։

Այս ձեռնարկության օրինակն ամենայն համոզչությամբ վկայում է, որ տնտեսական հաջողություններ կարելի է սպասել այնտեղ, ուր ամուր հիմքերի վրա է դրված կոլեկտիվի շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։ Տասներորդ հնգամյակի անցած երկու տարիներն էլ կոլեկտիվի համար եղան արգասաբեր։ 1976 թ. պլանի կատարման և արտադրանքի բարձր որակն ապահովելու համար կոմբինատը պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշով, իսկ 1977 թ. կոլեկտիվը երեք եռամսյակ նվաճեց ՍՍՀՄ մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշն ու դրամական մրցանակը։ Կոմբինատը մասնակցեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսին և արժանացավ առաջին կարգի դիպլոմի։

Լենինականում շատերը գիտեն առաջին բուժմիավորման բժշկուհի Բ. Սահակյանին, գիտեն ոչ միայն որպես բժշկուհու, այլև ակտիվ պրոպագանդիստի։ Տարիների ընթացքում խորանալով ակնաբույժի մասնագիտության մեջ, նա միաժամանակ կարողացել է տիրապետել պրոպագանդիստական աշխատանքի արվեստին, հետևողականորեն բարձրացնել իր քաղաքական պատրաստականությունը, ավելի մոտիկից ճանաչել և հասկանալ մարդկանց։ Բժշկուհին խորապես համոզված է, որ, երբ մասնագետը քաղաքականապես հասուն է, նա ավելի խոր է գիտակցում իր հասարակական պարտքը։

Սահակյանն առանձին պատասխանատվությամբ է վերաբերվում հատկապես ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի պրոպագանդմանը։ Համագումարի նյութերի ուսումնասիրումը հնարավորություն է ընձեռում՝ խորացնելու սովետական մարդու մարքս-լենինյան աշխարհայացքը, ճիշտ հասկանալու և իմաստավորելու հասարակական կյանքի բարդ երևույթները, մարդու մոտ հաստատելու զարգացած սոցիալիզմի էությանն ու պահանջներին համապատասխանող անհատական գործելակերպ, կյանքի նկատմամբ ակտիվ դիրքորոշում։ Համագումարի նյութերի ուսումնասիրությունը պրոպագանդիստ Բ. Սահակյանը պլանավորել էր այնպես, որ պարապմունքների ընթացքում տեսական պրոբլեմները պարզաբանվում էին հասարակական պրակտիկայի հետ սերտորեն զուգակցված։ Ելնելով կուսակցության սոցիալ-տնտեսական ստրատեգիայից՝ նա կոնկրետացնում ու տեղայնացնում էր առողջապահության վերաբերյալ համագումարի առաջադրած խնդիրները։ Տեսական պրոբլեմների ուսումնասիրման այս եղանակն ունկնդիրներին օգնում է ըմբռնելու տեսության և պրակտիկայի կապը։

Պրոպագանդիստի համար հարուստ գիտելիքներ ունենալը դեռևս բավական չէ։ Իր առջև դրված խնդիրների լուծման նպատակով նա պետք է ճշմարիտ ու հավաստի գաղափարը հասցնի յուրաքանչյուր ունկնդրի, դարձնի նրա սեփականությունը։ Եվ այդ բանը կարողանում է հմտությամբ անել բժշկուհի պրոպագանդիստը։

Ունկնդիրների քաղաքական պատրաստականությունն օգնում է մշակելու սոցիալ-հոգեբանական այնպիսի հատկանիշներ, որոնք չափազանց կարևոր են բժիշկ-մասնագետի համար։ Բ. Սահակյանին հաջողվում է յուրաքանչյուր բուժաշխատողի տոգորելու այն գիտակցությամբ, որ կուսակցության XXV համագումարի որոշումների կենսագործմանը նրա մասնակցությունն ամենից առաջ որոշվում է սովետական մարդկանց առողջությունը վերականգնելու և վերստին ստեղծարար աշխատանքի ուղարկելու գործում կատարած ներդրումով։

Բժշկուհու պրոպագանդիստական փորձը մասսայականացվեց քաղաքի և հատկապես առողջապահության ցանցի պրոպագանդիստների շրջանում։

Հասարակական աշխատանքը կարևոր, հաստատուն տեղ է գրավում սովետական քաղաքացու կյանքում, այն ներդաշնակում է նրա հիմնական պարտականությանը, ստանում մշտական գրանցում մարդու գործունեության մեջ։ Այս առումով բնորոշ է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Էմմա Փահլևանյանի գործելակերպը։ Նա ոչ միայն բարեխղճորեն է կատարում իր պաշտոնական պարտականությունները՝ որպես բժշկական ուսումնարանի ուսմասվար, այլև ակտիվորեն մասնակցում է հանրապետության ու քաղաքի հասարակական, քաղաքական կյանքին։ Էմմա Փահլևանյանը ղեկավարում է ուսումնարանի կուսկազմակերպությանը կից գործող տեսական սեմինարը, պարապմունքներն այստեղ անցնում են գաղափարական բարձր մակարդակով։

Մեր քաղաքում լավագույն, փորձառու պրոպագանդիստները շատ են։ Նրանք զորավիգ են կուսկազմակերպություններին՝ կոմունիստներին ու անկուսակցականներին մարքս-լենինյան ամենահաղթ գաղափարներով զինելու շնորհակալ գործում։

Կուսքաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինն ուսումնական տարվա ընթացքում քաղկոմի բյուրոյի քննարկմանն է ներկայացրել քաղաքական ուսուցմանն ու տնտեսագիտական կրթությանը, պրոպագանդիստների գործունեությանն ու փորձի ընդհանրացմանը վերաբերող մի շարք հարցեր։ Քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն ամեն ինչ արեցին քաղաքական ուսուցման ուսումնական տարին բարձր մակարդակով ավարտելու, այդ առթիվ կուսակցության առաջադրած պահանջներն ու խնդիրները հաջողությամբ կատարելու համար։ Հանրագումարային պարապմունքները յուրատեսակ հաշվետվություն եղան ուսումնական տարվա ընթացքում ձեռք բերած գիտելիքների մակարդակի, պրակտիկ խնդիրների լուծման հետ տեսության զուգորդման մասին։

Կուսքաղկոմը հրավիրել է կազմակերպությունների քարտուղարների և պրոպագանդիստների սեմինար-խորհրդակցություն՝ նվիրված ուսումնական տարվա ամփոփմանը։ Պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը նախապես կազմել էր ամփոփիչ պարապմունքների անցկացման օրացուցային պլան, կուսակցական ակտիվին կցել կազմակերպություններին՝ հանրագումարային պարապմունքները լսելու համար։

Քաղաքային կոմիտեի բյուրոն առաջիկայում քննարկելու է անցած քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության ուսումնական տարվա արդյունքները և նոր ուսումնական տարվա նախապատրաստման խնդիրները։ Բյուրոյում կվերլուծվեն ուսումնական տարվա ընթացքում ձեռք բերված դրական փորձը և նկատված թերությունները, կմշակվեն միջոցառումներ՝ նոր ուսումնական տարին կազմակերպված և գաղափարական բարձր մակարդակով սկսելու համար։

---

# ԴԱՍԱԽՈՍԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌԸ

Հ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ հսկայական կարևորություն է տալիս դասախոսական պրոպագանդայի կազմակերպմանը։ Այն, ասվում է «Դասախոսական պրոպագանդայի վիճակի և բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. մարտին ընդունած որոշման մեջ, արմատավորվել է երկրի հոգևոր կյանքում, դարձել սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի, կենսական ակտիվ դիրքորոշման, գաղափարաքաղաքական և բարոյական բարձր հատկությունների ձևավորման ազդու գործոն, կարևոր դեր է խաղում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման գործում։

ՍՄԿԿ Կենտկոմն այդ որոշմամբ դասախոսական պրոպագանդայի համակարգում կարևոր տեղ է հատկացնում նաև ՍՍՀՄ արտաքին քաղաքականության առնչվող պրոբլեմների խոր պարզաբանմանը։ Այդ պահանջն անմիջականորեն բխում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներից, և դրա իրականացումը կոչված է խոշոր դեր խաղալու սովետական մարդկանց քաղաքացիական պատասխանատվության բարձրացման, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով նրանց դաստիարակության, բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարի գործում։

Այս առնչությամբ անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ հանրապետության «Գիտելիք» ընկերության գործունեությանը միջազգային հարցերի լուսաբանման ասպարեզում։

Արդի միջազգային հարաբերություններում տեղի են ունենում որակական լուրջ փոփոխություններ, վճռական շրջադարձ է կատարվում դեպի լարվածության թուլացումը, հասարակական տարբեր սիստեմի պետությունների խաղաղ գոյակցության իրականացումը։ Այդ գործում պատմական մեծ դեր են խաղում սոցիալիստական համագործակցության երկրները, դեմոկրատական և առաջադիմական ուժերը։ Սոցիալիստական երկրների տնտեսական, քաղաքական ու ռազմական հզորության ամրապնդումը, նրանց սերտ համագործակցությունը, արտաքին քաղաքական միասնական կուրսը վճռական ներգործություն են ունենում միջազգային հարաբերությունների դրական զարգացման վրա։ Այդ ամենը փաստորեն դարձել է միջազգային քաղաքական կլիմայի առողջացման, մարդկության կայուն խաղաղության, անվտանգության և սոցիալական առաջընթացի գլխավոր գործոնը։

Սովետական ժողովրդի փառապանծ պատմության մեջ անցած տարին նշանավորվեց երկու քաղաքական մեծագույն իրադարձություններով։ Սովետական Միության աշխատավորները, սոցիալիստական համագործակցության երկրների եղբայրական ժողովուրդները, ողջ առաջադեմ մարդկությունը քաղաքական մեծ խանդավառության ու ոգևորության պայմաններում նշեցին XX դարի գլխավոր իրադարձության փառապանծ տարելիցը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը։ Հոկտեմբերի 7-ին ՍՍՀՄ

Գերագույն սովետի իններորդ գումարման յոթերորդ արտակարգ նստաշրջանն ընդունեց ու հաստատեց Սովետական Միության նոր Սահմանադրությունը։ «Մենք նոր Սահմանադրությունն ընդունում ենք Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի նախօրեին,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում տված զեկուցման մեջ։— Դա երկրի կյանքի երկու խոշորագույն իրադարձությունների ժամանակային պարզ զուգադիպություն չէ։ Դրանց միջև եղած կապը շատ ավելի խորն է։ Նոր Սահմանադրությունը, կարելի է ասել, սովետական պետության ամբողջ վաթսունամյա զարգացման խտացված արդյունքն է։ Այն վառ կերպով վկայում է, որ Հոկտեմբերի հռչակած գաղափարները, Լենինի պատգամները հաջողությամբ կենսագործվում են»։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին օրվանից սովետների երկիրը դարձավ խաղաղության պատվարն ու դրոշակակիրն ամբողջ աշխարհում։ Արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության և սովետական պետության բոլոր ձեռնարկումները հաշտության մասին լենինյան հայտնի դեկրետից մինչև ՍՄԿԿ XXV համագումարի խաղաղության, միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը ներթափանցված են մարդասիրությամբ, աշխարհի ժողովուրդների կյանքի համար խորին հոգատարությամբ։

ՍՄԿԿ-ի, սովետական պետության լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը արտացոլվել և օրենսդրական կարգով ամրակայվել է Սովետական Միության նոր Սահմանադրության մեջ։ Հատկանալի է, որ ՍՍՀՄ և մյուս սոցիալիստական երկրների հետևողական ու կոնստրուկտիվ խաղաղասիրական քաղաքականությունը լայն արձագանք, ջերմ համակրանք և հետաքրքրություն է առաջ բերել աշխարհի առաջադիմական և խաղաղասիրական ուժերի, աշխատավորության ամենալայն խավերի շրջանում։

Այժմ բոլորը ուշի-ուշով հետևում են միջազգային կյանքում կատարվող փոփոխություններին, նրանք ցանկանում են իմանալ իրադարձությունների զարգացման ընթացքը խաղաղության և միջազգային անվտանգության համար մղվող պայքարում, այն նորը, որ տեղի է ունենում միջազգային հարաբերություններում։ Եվ, հաշվի առնելով ժամանակակից մարդկանց հետաքրքրասիրությունը, Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչությունը, միջազգային հարցերի գիտամեթոդական խորհուրդը, քաղաքային ու շրջանային կազմակերպությունները ձգտում են անընդհատ բարելավել ու կատարելագործել դասախոսական պրոպագանդան։ Ելնելով գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության միասնության մասին ՍՄԿԿ XXV համագումարի պահանջից՝ ընկերության մի շարք քաղաքային ու շրջանային կազմակերպություններ արդեն գործնականում իրականացնում են դասախոսական աշխատանքի կոմպլեքսային պլանավորումն ու կազմակերպումը, ավելի բազմազան են դարձնում կարդացվող դասախոսությունների թեմատիկան։ Նրանք հաշվի են առնում աշխատանքային կոլեկտիվների տարբեր լսարանների ունկնդիրների մասնագիտական, սոցիալ-հոգեբանական, կրթական ու տարիքային առանձնահատկությունները, մարդկանց հետաքրքրությունների աշխարհն ու նախասիրությունները։

Միջազգային հրատապ պրոբլեմների խոր ու բազմակողմանի պրոպագանդման գործում վճռական նշանակություն ունեն դասախոսական կադրերի պատրաստումն ու մասնագիտացումը, նրանց հետ տարվող գիտամեթոդական աշխատանքը։ Հանրապետության աշխատավորության շրջանում միջազգային հարաբերություններին նվիրված դասախոսական պրոպագանդայի լայն ծավալման, կարդացվող դասախոսությունների որակի և գաղափարական մակարդակի բարձրացման նպատակով ընկերության հանրապետական վարչության և միջազգային հարցերի գիտամեթոդական խորհրդի նախաձեռնությամբ 1977 թ. հունիսին ստեղծվեց միջազգայնագետ դասախոսների պատրաստման միամյա դպրոց, որտեղ ընդգրկվեց 30 մարդ։ ՀՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչության նախագահությունը քննարկել ու հաստատել է դպրոցի ուսումնական



ծրագիրը և դասախոսների կազմը։ Սեպտեմբեր ամսից միջազգայնագետ-դասախոսների դպրոցն սկսեց իր պարապմունքները։ Դասախոսական կադրերի գիտատեսական մակարդակի բարձրացմանը, նրանց մասնագիտացմանն ու վարպետության կատարելագործմանն են նվիրված պարբերաբար անցկացվող միջազգայնագետ-դասախոսների հանրապետական, փնջային սեմինարները, կոնֆերանսները, կոնսուլտացիաները և այլն։

Դասախոսությունների խոր բովանդակությունն ապահովելու նպատակով «Գիտելիք» ընկերության Երևանի քաղաքային կազմակերպության վարչությունը և միջազգային հարաբերությունների գիտամեթոդական սեկցիան կիրառում են զանազան ձևեր։ Սեկցիայի բյուրոյի նախաձեռնությամբ ստեղծագործական առումով քննարկվում են դասախոսությունները։ Դրանց վերաբերյալ դասախոսներին արվում են արժեքավոր ցուցումներ, խելամիտ դիտողություններ ու առաջարկություններ, որոնք օգնում են նրանց՝ խորանալու իրենց մասնագիտացած թեմաներում։ Անցած տարի, օրինակ, քննարկվել է տարբեր թեմաներով 25 դասախոսություն։ Ընկերության հանրապետական վարչությունը, քաղաքային ու շրջանային կազմակերպությունների մեծ մասը արդյունավետ են զբաղվում ՍՄԿԿ XXV համագումարի խաղաղության և միջազգային համագործակցության ծրագրի, ՍՍՀՄ նոր Սահմանադրության, սովետական պետության արտաքին քաղաքականության, արդի միջազգային դրության հարցերի պրոպագանդման գործով։

Միջազգային հարաբերությունների պրոպագանդման ասպարեզում արդյունավետ է ընկերության Երևանի քաղաքային կազմակերպության ծավալած գործունեությունը։ Նախօրոք մշակված հատուկ պլանին համապատասխան, մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, տրանսպորտի ու առևտրի օբյեկտներում, ուսումնական հաստատություններում ու կուլտուր-լուսավորական հիմնարկություններում պարբերաբար կազմակերպվում են միջազգային հրատապ պրոբլեմներին նվիրված դասախոսություններ և այլ միջոցառումներ։

Միջազգայնագետ-դասախոսների բրիգադներ են ուղարկվում մայրաքաղաքի արդյունաբերական խոշոր ձեռնարկությունները։ Սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ այնտեղ անցկացվում են դասախոսությունների ցիկլեր, հասարակական-քաղաքական ընթերցումներ, հարցազրույց կլոր սեղանի շուրջը՝ նվիրված ՍՄԿԿ XXV համագումարի խաղաղության ծրագրի, միջազգային կյանքի հանգուցային պրոբլեմների լուսաբանմանը։

Ձեռնարկությունների բանվորական կոլեկտիվները բացառիկ հետաքրքրասիրություն են ցուցաբերում արդի միջազգային դրության հարցերի նկատմամբ։ Դրա վկայությունն են Երևանի քաղաքային կազմակերպության վարչության հասցեով ունկնդիրներից ստացված բազմաթիվ նամակները։ Արտահայտելով իրենց գոհունակությունն անցկացրած միջոցառումների համար՝ նրանք առաջարկում են հաճախակի կազմակերպել միջազգային թեմաներով դասախոսություններ։ Այդպիսի նամակներ են ստացվել, օրինակ, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ալյումինի, կաբելի գործարաններից և Կիրովի անվան քիմիական կոմբինատից։

Հաշվի առնելով ունկնդիրների հետաքրքրասիրությունը՝ ընկերության Երևանի քաղաքային կազմակերպության վարչությունը որոշեց այդ ձեռնարկություններում ստեղծել միջազգային հարցերին նվիրված նյութերի կուտակման և ուսումնասիրության բյուրոներ, ինչպես նաև հարց ու պատասխանի արկղեր։ Սեկցիան սիստեմատիկաբար զբաղվում է ունկնդիրներին հետաքրքրող խնդիրների ուսումնասիրությամբ։ Նրանց առաջադրած հարցերը շերտավորվում են, և համապատասխան մասնագիտության դասախոսներ կազմակերպում են հարցազրույցներ ունկնդիրների հետ։

«Գիտելիք» ընկերության Երևանի քաղաքային կազմակերպության միջազգային հարաբերությունների գիտամեթոդական սեկցիան, միջազգային հարցերը պրոպագանդելիս, արդյունավետ է օգտագործում կինոն, մամուլը և

մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցները։ Սեկցիայի նախաձեռնությամբ ընկերության 20 միջազգայնագետ-դասախոսներ քաղաքի կուլտուրայի տներում, ակումբներում, կինոթատրոններում, ԱՄՆ-ի, Լատինական Ամերիկայի և Մերձավոր Արևելքի երկրներին վերաբերող պատմավավերագրական և գեղարվեստական կինոնկարների ցուցադրման ընթացքում, մեկնաբանում ու պարզաբանում են այդ երկրների ժողովուրդների կյանքին, սոցիալ-տնտեսական պրոբլեմներին և ազգային-ազատագրական շարժումներին առնչվող խնդիրները։ Գիտամեթոդական սեկցիան դասախոսական աշխատանքում հմտորեն օգտագործում է արտասահմանի տարբեր երկրներ տուրիստական շրջագայության մեկնած միջազգայնագետ-դասախոսների ուժերը։

Այս օրերին ՀՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչությունը, քաղաքային և շրջանային կազմակերպություններն իրենց դասախոսական գործունեությունն ուղղել են ՍՍՀՄ նոր Սահմանադրության պրոպագանդմանը։ Նոր Սահմանադրության դրույթներն աշխատավորությանը խոր պարզաբանելու նպատակով օգտագործվում են բազմազան ձևեր ու մեթոդներ։ ՍՍՀՄ Սահմանադրության պրոպագանդման գործում դասախոսներին մեթոդական և տեսական օգնություն ցույց տալու նպատակով Երևանում անցկացվեց դասախոսների հանրապետական սեմինար-պարապմունք։ Շրջաններում են գործուղվել դասախոսների բրիգադներ, որոնցում ընդգրկված են ավելի քան 500 դասախոսներ։ Գործում են 115 լեկտորիումներ և դասախոսությունների ցիկլեր։ Նոր Սահմանադրությունն ուսումնասիրելու համար ժողովրդական համալսարաններում ստեղծվել են 20 նոր ֆակուլտետներ։ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Հոկտեմբերյանում, Արտաշատում, Ղափանում և այլ շրջաններում կազմակերպվում են գիտատեսական կոնֆերանսներ, դասախոսությունների ցիկլեր, հրապարակային դասախոսություններ, թեմատիկ հարց ու պատասխանի երեկոներ և այլ միջոցառումներ՝ նվիրված ՍՍՀՄ նոր Սահմանադրության վերաբերյալ ծրագրային պրոբլեմներին։

Ընկերության կազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Բուխարեստի խորհրդակցության փաստաթղթերի, հատկապես «Հանուն միջազգային լարվածության թուլացման նոր բնագծերի, հանուն Եվրոպայի անվտանգության ամրապնդման և համագործակցության զարգացման» դեկլարացիայի պրոպագանդմանն ու պարզաբանմանը։ Այդ կապակցությամբ Երևանում և հանրապետության մյուս քաղաքներում ու շրջաններում լայն ծավալ է ստացել դասախոսական պրոպագանդան։

ՍՄԿԿ-ի, սովետական պետության արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքների պրոպագանդման առումով կարևոր նախաձեռնություն է հանդես բերում «Գիտելիք» ընկերության Կիրովականի քաղաքային կազմակերպության վարչությունը։ Այստեղ ճիշտ են օգտագործվում գաղափարական աշխատանքի հետաքրքրական ձևերն ու մեթոդները. պարբերաբար կազմակերպվում են միջազգային հրատապ պրոբլեմներին վերաբերող դասախոսություններ, զեկուցումներ, հարցազրույցներ, տեսական-կոնֆերանսներ, քաղաքական-գեղարվեստական շաբաթ, «Դասախոսի օր» և այլ միջոցառումներ։ Վարչությունը նախաձեռնել և կազմակերպել է «Քաղաքական-գեղարվեստական շաբաթ» քիմիական գործարանի մշակույթի պալատում։ Վեց օրում կարդացվել են տասնյակ դասախոսություններ։ «Աշխարհում տիրող իրադրությունը և ՍՄԿԿ միջազգային գործունեությունը», «Քաղաքական-գեղարվեստական շաբաթի» ընթացքում դասախոսությունները և գեղարվեստական ինքնագործ խմբերի ելույթներն ունկնդրել են քաղաքի ավելի քան 6·500 աշխատավորներ։ Քաղաքային կազմակերպության վարչությունը սիստեմատիկաբար ուսումնասիրում է հասարակական կարծիքը, ամիսը մեկ անգամ ամփոփում կարդացած դասախոսությունների արդյունքները, պարզում տարբեր լսարանների ունկնդիրների հետաքրքրասիրությունը դասախոսության նկատմամբ, դրա վերաբերյալ նրանց կարծիքի և առաջադրած հարցերի բնույթը։

Դասախոսները փաստական նոր տվյալներով և կոնկրետ օրինակներով



պարզաբանում և մեկնաբանում են սովետական պետության հետևողական և սկզբունքային պայքարը լարվածության թուլացման, միջազգային անվտանգության ամրապնդման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման և զինաթափման համար։ Դասախոսություններում և զեկուցումներում համոզիչ փաստերով շարադրվում է Սովետական Միության մարդասիրական նոր նախաձեռնությունը՝ առաջարկել բոլոր պետություններին՝ պայմանավորվել միաժամանակ դադարեցնելու ատոմային զենքի բոլոր տեսակների արտադրությունը, պարտավորություններ վերցնել՝ սկսելու ատոմային զենքի կուտակված պաշարների կրճատումը, ապա հասնել դրա լրիվ լիկվիդացման։

Այսպիսով, «Գիտելիք» ընկերության կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարում միջազգային հարաբերությունների, ՍՄԿԿ XXV համագումարի խաղաղության ծրագրի պրոպագանդման, դրանց իմաստն ու բովանդակությունը աշխատավորությանը լուսաբանելու բնագավառում։ Սակայն սխալ կլիներ կարծել, թե այս բնագավառում չկան թերություններ կամ չլուծված հարցեր ու դժվարություններ։ Դեռևս ամբողջովին չի լուծված դասախոսական պրոպագանդայի ամենագլխավոր և առաջնային խնդիրը. կարդացվող ոչ բոլոր դասախոսություններն ու զեկուցումներն ունեն անհրաժեշտ որակ, գիտական ու գաղափարական-տեսական բարձր մակարդակ։

Տվյալ դեպքում գլխավորը դասախոսների ճիշտ ընտրությունն է, նրանց որակական կազմի բարելավումը, դասախոսների հետ տարվող գիտամեթոդական աշխատանքը։ Ճիշտ է, տարբեր մասնագիտության դասախոսներին տեսական և մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով, 1976—1977 թթ. պլանավորվել և անցկացվել են հանրապետական ու փնջային միջշրջանային սեմինարներ, որոնք հիմնականում անցել են բարձր մակարդակով, բայց միայն սեմինարներով չի սահմանափակվում դասախոսների հետ տարվող աշխատանքը, այն պետք է բազմազան լինի ինչպես ձևով, այնպես էլ բովանդակությամբ։

Դասախոսությունների որակի բարձրացման գործում դասախոսներին օգնելու կարևոր ձևերից մեկը տեղերում դասախոսությունների ու զեկուցումների կոլեկտիվ ունկնդրումն ու վերլուծումն է, սակայն գիտամեթոդական խորհուրդները, այդ թվում նաև միջազգային հարցերի ԳՄԽ-ն, քիչ են զբաղվում այդ հարցով։ Դասախոսությունների ունկնդրումները, ինչպես նաև դասախոսների անհատական և խմբակային կոնսուլտացիաներն անբավարար են կազմակերպվում հատկապես հանրապետության հեռավոր շրջաններում։ Ընդհանրապես քիչ է կազմակերպվում լավագույն դասախոսների փորձի փոխանակում, նրանց ելույթները մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ։

Դասախոսներին ցույց տրվող օգնության կարևոր միջոցներից մեկը գրավոր պրոպագանդան է՝ «Օգնություն դասախոսին» սերիայով գրքույկների հրատարակումը, սակայն այդ բնագավառում կան զգալի թերություններ։ Չնայած որ «Գիտելիք» ընկերությունը հրատարակում է բազմանուն գրքույկներ, սակայն առանձին բնագավառների հրատապ պրոբլեմներն անհրաժեշտ ուշադրության չեն արժանանում։

***

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան որոշումը կուսակցական կազմակերպություններին և «Գիտելիք» ընկերությանը պարտավորեցնում է՝ արմատապես բարելավել աշխատավորության շրջանում տարվող դասախոսական պրոպագանդան, անընդհատ կատարելագործել նրա ձևերն ու մեթոդները, բարձրացնել կարդացվող դասախոսությունների տեսական, քաղաքական-գաղափարական մակարդակը, ապահովել դրանց խոր բովանդակությունը, բանավոր խոսքը դարձնել ավելի ներգործուն ու արդյունավետ։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հետևողական կենսագործումը «Գիտելիք» ընկերության, նրա դասախոսների պարտքն ու պարտականությունն է։

---

# ԿՅԱՆՔԻ ՀԵՏ ՍԵՐՏՈՐԵՆ ԿԱՊՎԱԾ

Խ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԶՐՈՒՅՑԸ ԵՐԵՎԱՆԻ ալրաղաց գործարանի կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Ռոզա Փափախչյանի հետ անկեղծ ու անկաշկանդ էր: Խոսակցությունն ընթանում էր կուսակցական լուսավորության հարցերի շուրջ: Ու հենց սկզբից ինձ համար պարզ դարձավ, որ ես գործ ունեմ կուսակցական աշխատանքին նվիրված մի մարդու հետ:

Ես կուսբյուրոյի քարտուղարին հարցրի, թե ի՞նչ սկզբունքով է կատարվել կուսակցական լուսավորության ցանցի կոմպլեկտավորումը:

— Ինչպես սովորաբար կարգն է,— ասաց Ռոզա Փափախչյանը,— գործարանի կուսկազմակերպության բյուրոն, մինչև ուսումնական տարվա սկսվելը, նախապես հաշվի առնելով կոմունիստների ու մյուս աշխատողների կրթական ընդհանուր մակարդակը, նրանց նախասիրություններն ու ցանկությունները, ունկնդիրներին տեղաբաշխեց ըստ կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության խմբերի:

— Դուք ասացիք՝ «հաշվի առնելով կոմունիստների ու մյուս աշխատողների...»: Ստացվում է այնպես, որ ձեր գործարանի բոլոր աշխատողներն ընդգրկված են կուսակցական լուսավորության ցանցում:

— Այո՛,— հաստատեց Ռ. Փափախչյանը,— մեր գործարանի գրեթե բոլոր բանվոր-ծառայողներն ընդգրկված են կուսակցական-քաղաքական կամ տնտեսագիտական ուսուցման ցանցում:

— Ի՞նչ տիպի խմբակներ կան:

— Դրանք շատ են. գործում են տարրական տիպի քաղխմբակ, մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող դպրոց, տնտեսագիտության սեմինար, ժողովրդական համալսարան, լեկտորիում, կոմունիստական աշխատանքի դպրոց:

— Ասացեք, խնդրեմ, ովքե՞ր են ընդգրկված տնտեսագիտության սեմինարում և հիմնականում ի՞նչ են ուսումնասիրում նրանք:

— Այդ սեմինարում ընդգրկված են գործարանի ղեկավար անձնակազմը և գլխավոր մասնագետները: Նրանք ուսումնասիրում են արտադրության էկոնոմիկայի և կառավարման հիմունքները՝ կապված մեր գործարանի առջև ծառացած խնդիրների հետ:

— Ովքե՞ր են նշանակված պրոպագանդիստներ:

— Կուսակցական-քաղաքական ուսուցման դպրոցների պրոպագանդիստներ են հաստատվել գործարանի ղեկավար աշխատողները: Այնպիսի մարդիկ, ովքեր ունեն բարձրագույն կրթություն, աշխատանքի մեծ փորձ: Հասկանալի է, որ պրոպագանդիստ դառնում են նրանք, ովքեր քաղաքականապես պատրաստված են, ունեն հռետորական ձիրք, մանկավարժական հմտություններ: Բացի այդ, որ շատ կարևոր է, բարի անուն և հեղինակություն ունեն աշխատողների շրջանում:

— Ո՞վ է, օրինակ, տնտեսագիտության սեմինարի ղեկավարը:

— Ինչպես արդեն ասացի, այդ սեմինարում ընդգրկված են մեր գործարանի ղեկավար կազմը և գլխավոր մասնագետները: Այդ փաստը մեզ հուշել է, որ այնտեղ պրոպագանդիստ նշանակենք առավել փորձառու կոմունիստի: Քանի՜ տարի է արդեն, որ սեմինարը հաջողությամբ ղեկավարում է մեր գործարանի գլխավոր տնտեսագետ, դիրեկտորի տեղակալ Կոստանդին Պետրոսյանը:

Իմ խնդրանքով Ռ. Փափախչյանն իր աշխատասենյակը հրավիրեց տնտեսագիտության սեմինարի ղեկավարին: Մենք ծանոթացանք. Կոստանդին Պետրոսյանը հիսունն անց, ամուր կազմվածքով տղամարդ է: Հարցրի, թե երբվանի՞ց է սկսել պրոպագանդիստական աշխատանքը:

— Օ՜, դա շատ վաղուց էր, դեռ պատերազմի տարիներին՝ ռազմաճակատում:

— Իսկ դրանից հետո՞:

— Ամեն տեղ, ուր աշխատել եմ, միաժամանակ պրոպագանդիստ եմ եղել:

Ցանկացա ծանոթանալ սեմինարի գործունեությանը: Պրոպագանդիստն ինձ տվեց մատյանը, ուր խնամքով գրված էին ունկնդիրների անունները՝ 27 մարդ: Նույնպիսի խնամքով նշումներ էին արված պարապմունքների օրերի ու հաճախումների մասին, ինչպես նաև արձանագրված էին պարապմունքների թեմաները: Ես գրի առա դրանցից մի քանիսը՝ կառավարման կազմակերպումն ու մեթոդները ձեռնարկությունում, նյութական և բարոյական խրախուսման ձևերն ու մեթոդները, ձեռնարկության արտադրական ֆոնդերն ու դրանց օգտագործումը և այլն:

Կուսբյուրոյի քարտուղար Ռոզա Փափախչյանն ասաց.

— Քաղդպրոցների և սեմինարի մասնակիցների տեսական գիտելիքների կուտակումը օգնում է յուրաքանչյուր ունկնդրի՝ ավելի հստակ պատկերացնելու իր դերն ամբողջ ձեռնարկության առջև դրված խնդիրների լուծման գործում:

Լսելով նրա պատասխանը՝ ես հարկ համարեցի իմ զրուցակիցներին հիշեցնել հանրահայտ ճշմարտությունը. մի օրինակն ավելի լավ է, քան հարյուր անհասցե դատողությունները:

— Իհարկե, դա այդպես է,— ասաց Կ. Պետրոսյանը,— ես կարող եմ մեր անցած պարապմունքներից այդ միտքը հաստատող բազմաթիվ օրինակներ վկայակոչել: Ահա խնդրեմ. «Աշխատանքի կազմակերպման մեթոդներն ու կատարելագործումը Շչեկինյան քիմկոմբինատի օրինակով» թեմայի ուսումնասիրությանը նվիրված պարապմունքում սեմինարի ունկընդիրները հավանություն տվին այդ մեթոդին: Այժմ մեր ձեռնարկությունն աշխատում է այդ մեթոդով: Իսկ դրա էությունը հետևյալն է. մասնագիտությունների համատեղում, բազմահաստոցային մեթոդով աշխատանք, սպասարկման ոլորտի ընդլայնում և կատարվող աշխատանքի որակի բարձրացում: Այսինքն՝ ավելի պակաս անձնակազմով արտադրանքի ծավալի ավելացում: Իսկ դա նշանակում է՝ աշխատանքի արտադրողականության բարձրացում:

— Մեր գործարանում,— շարունակեց սեմինարի ղեկավարը,— այժմ լայնորեն կիրառվում են աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերն ու մեթոդները: Այսպես, նեղ մասնագիտացման փոխարեն, շատ աշխատողներ տիրապետում են երկու-երեք մասնագիտության: Դա հնարավորություն է ընձեռում ավելի նկունացնել և ընդլայնել արտադրության սպասարկման ոլորտները: Այդ բանի շնորհիվ մեծանում է կատարվող աշխատանքի ծավալը, բարձրանում որակը: Ահա և արդյունքը. այդ միջոցառումների ներդրման շնորհիվ աշխատավարձի ֆոնդից միայն մեկ տարում խնայվել է 25,6 հազար ռուբլի: Իսկ դա նշանակում է, որ զգալիորեն իջել է թողարկվող արտադրանքի ինքնարժեքը:

Ահա մի ուրիշ օրինակ. «Աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին» թեմայի ուսումնասիրության ժամանակ, գործարանի գլխավոր տեխնոլոգ Լևոն Սիլանյանն իր ելույթում առաջարկեց վերացնել գիշերային հերթափոխը պատրաստի ալյուրի բաժանմունքում և պատրաստի արտադրանքի պահեստում: Եվ նա նշեց նաև իր առաջարկի իրականացման ուղիները: Սեմինարի ունկնդրի առաջարկը մանրազնին քննարկվեց և, ի վերջո, ներդրվեց արտադրության մեջ: Այդ միջոցառման շնորհիվ այժմ տարեկան տնտեսվում է 18 հազար ռուբլի:

«Մշակվող արտադրանքի որակի բարձրացումը» թեմայի ուսումնասիրության ժամանակ սեմինարի ունկնդիրները հանդես եկան որակի բարձրացման հարցերի վերաբերյալ կոնկրետ առաջարկներով: Շոշափվեցին հատկապես այսպիսի հարցեր. ի՞նչ անել հացահատիկի նախապատրաստության և աղալու տեխնոլոգիական սխեմաները կատարելագործելու համար: Եվ առաջարկեցին. ձմռան ամիսներին հացահատիկը լվանալ տաք ջրով, մշտական հսկողություն սահմանել ալյուրը պարկերի մեջ լցնելիս ստանդարտ քաշը պահպանելու նկատմամբ: Առաջարկվեց նաև կատարելագործել արտադրանքի որակի համար բանվոր-ծառայողների պարգևատրման սիստեմը: Իրենց այս նկատառումներով սեմինարի մասնակիցները ներկայացան կուսբյուրո: Գործարար քննարկումից հետո սեմինարում արծարծված հարցերն արժանացան հավանության և գործադրվեցին արտադրության մեջ:

«Սոցմրցության կազմակերպումը» թեման ուսումնասիրելիս՝ սեմինարում խոսք եղավ այն մասին, թե ինչպես ավելի արդյունավետ դարձնել մրցությունը: Տեխնիկայի անվտանգության ավագ ինժեներ, ունկնդիր Լեոնդրուշ Սարգսյանն առաջարկեց ներգործարանային մրցության արդյունքներն ամփոփել հինգբալային սկըզբունքով՝ յուրաքանչյուր եռամսյակը մեկ անգամ, գործարհկոմի և սոցմրցության ժյուրիի համատեղ նիստում, ինչպես նաև սահմանել փոխանցիկ դրոշ և դրամական պարգև: Այդ առաջարկները արժանացան կուսբյուրոյի, գործարհկոմի և գործարանի ղեկավարության հավանությանը: Դրանից հետո արհմիութենական կոմիտեն մշակեց մրցության պայմանները, որոնք ներառում են՝ մրցության նպատակը, քանակական ու որակական ցուցանիշները, արդյունքների ամփոփման կարգը և ժա-

ավելանում են հացաթխման մանր ձեռնարկությունները՝ լավաշի և պուրիի փռերը, հրուշակեղենի արտադրամասերը: Ըստ էության, դա լավ է. բնակիչները սիրում են հացի այդ տեսակները, և քաղաքային մարմինները, ընդառաջելով բնակչության պահանջմունքներին, բացում են նոր փռեր: Սակայն դա իր հետ բերում է նաև մեզ համար անցանկալի երևույթներ: Լավաշի փռերին և մյուս արտադրամասերին մենք ստիպված ենք ալյուրն առաքել պարկերով, որովհետև նրանք մեծ քանակությամբ ալյուր օգտագործել չեն կարող: Իսկ պարկերով տեղափոխելու դեպքում կորուստները շատ են, խախտվում են արտադրության սանիտարական նորմաները: Բացի այդ, մենք ստիպված ենք պահել մեծ թվով բանվորներ՝ պարկերն ալյուրով լցնելու համար: Այնինչ, հացի մեծ ձեռնարկություններին մենք հումք առաքում ենք մասնագիտացված ալյուրատար ավտոմեքենաներով: Այս դեպքում արդեն ալյուրի ոչ մի կորուստ չի լինում և բեռնող բանվորների կարիք չի զգացվում: Իմ ասածից ամենևին չի հետևում, թե ես դեմ եմ լավաշ և պուրի հաց թխելուն: Ընդհակառակը, կարելի է (և ավելի արդյունավետ կլինի) մայրաքաղաքում ստեղծել հացի մեծ գործարան, որը թողարկի միայն լավաշ և պուրի: Ինչ վերաբերում է հրուշակեղենին, ապա դրա համար արդեն կառուցվել է նման ձեռնարկություն, որի գործարկումը, սակայն, ձգձգվում է: Կա նաև մեկ այլ հանգամանք: Հացի որոշ խոշոր գործարաններ ներկայումս լրիվ ծանրաբեռնվածությամբ չեն աշխատում, և մենք ստիպված ենք դրանց նույնպես ալյուրն առաքել պարկերով...

Խնայողության հարցը հուզել էր նաև գործարանի պարետ, ունկնդիր Սամսոն Սարուխանյանին, և նա սրտի ցավով էր խոսում այն մասին, որ առանձին տեղերում անհանդուրժելի անտարբերություն է ցուցաբերվում հանրային ունեցվածքը փչացնողների նկատմամբ, անհրաժեշտ պայքար չի ծավալվում գույքը, հանրային հարստությունը վատնողների դեմ:

Սեմինարի ղեկավար Կոստանդին Պետրոսյանն ասաց, որ առանձին թեմա է նախատեսված արտադրանքի որակի հարցի ուսումնասիրության համար, սակայն, քանի որ քննարկվում է նամակը, իսկ այնտեղ առանձնահատուկ ուշադրություն է նվիրված որակի բարձրացմանը, ապա լավ կլիներ, եթե ունկնդիրները խոսեին նաև այդ թեմայի շուրջ: Եվ պարզվեց, որ սեմինարի ղեկավարի շոշափած հարցը հուզում է բոլորին: Ունկնդիրներից մեկը՝ գործարանի գլխավոր էներգետիկ Գևորգ Ծահնազարյանը, իր ելույթն սկսեց այսպես.

— Ինչո՞ւ մեր թողարկած լավ ալյուրից մայրաքաղաքում վատ հաց են թխում: Չէ որ որակի մասին պահանջը վերաբերում է ոչ միայն մեզ, այլ նաև, առավելապես, մեր թողարկած հումքը վերամշակողներին: Իսկ հայտնի ճշմարտություն է, որ մեր հացի գործարանների արտադրանքից բնակիչները գոհ չեն: Երեկոյան գնված հացը առավոտյան այլևս ընդունելի չէ ուտել, և մարդիկ ստիպված են լինում հացի մի մասը դեն նետել...

Գործարանի աշխատողների անձնական շահագրգռության բարձրացման, նրանց խրախուսման հարցերին նվիրեց իր ելույթը գործարանկոմի նախագահ, ունկնդիր Լենդրուշ Սարգսյանը:

Սեմինարի պարապմունքը մոտենում էր ավարտին: Կոստանդին Պետրոսյանն ունկնդիրներին հայտարարեց, որ հաջորդ պարապմունքի ժամանակ քննարկվելու է «Արտադրանքի որակի ապահովումը» թեման: Ապա նա թելադրեց ուսումնասիրելիք գրականության ցուցակը, տվեց հանձնարարություններ, և պարապմունքն ավարտվեց:

Սեմինարի ղեկավարը սպասում էր իմ կարծիքին: Մտքեր փոխանակելուց հետո նա դիմեց ինձ.

— Ես խնդրում եմ,— ասաց Կ. Պետրոսյանը,— ներկա լինել նաև մայիսին տեղի ունենալիք պարապմունքին: Այն ժամանակ մենք ուսումնասիրելու ենք Լ. Ի. Բրեժնևի «Մալայա զեմլյա» և «Վերածնունդ» գրքերը: Եվ գիտե՞ք ինչն է առավել ուշագրավ: Այդ թեման ինձ առաջարկել են իրենք՝ սեմինարի ունկընդիրները:

Օրեր անց, երբ այս հոդվածն արդեն պատրաստ էր տպագրության, ես նորից հանդիպեցի Երևանի ալրաղաց գործարանի ընկերներին և Կոնստանդին Պետրոսյանից տեղեկացա, որ մայիսին սեմինարն անցել է բացառիկ հետաքրքրությամբ: Ունկնդիրներն անկեղծ հիացմունքով են արտահայտվել Լ. Ի. Բրեժնևի «Մալայա Զեմլյա» և «Վերածնունդ» շատ ուսանելի գրքերի մեծ արժանիքների մասին: Սեմինարում ամենայն խորությամբ անդրադարձել են նաև Լ. Ի. Բրեժնևի՝ ՀամԼԿԵՄ XVIII համագումարում արտասանած ճառին և սիբիրյան ուղևորությունների ընթացքում ունեցած ելույթներին:

— Լ. Ի. Բրեժնևի գրքերին նվիրված սեմինարը,— ասաց Կ. Պետրոսյանը,— երկար կմնա մեր հիշողության մեջ, որովհետև այդ գրքերում արծարծված հարցերը սերտորեն առնչվում են կյանքի հետ, մարդկանց օգնում նրանց գործունեության բոլոր ոլորտներում:



# ԻՆՉՊԵՍ ԵՆ ՄԱՈՅԻ ԺԱՌԱՆԳՈՐԴՆԵՐԸ ՄԱՐՏՆՉՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒ ՆՐԱ ԴԱՇՆԱԿԻՑՆԵՐԻ ԴԵՄ

## ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ՀԵՏ ԳՈՐԾԱՐՔԻ ՊԵԿԻՆՅԱՆ ՆՈՐԱԳՈՒՅՆ «ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ»

Ա. ԿՐՈՒԳԼԻՆԻՆ, Վ. ՖԵՈԿՏԻՍՏՈՎ

*ՌԵԱԼ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ աննախընթաց աճած հզորությունը, նրա տեսության ու պրակտիկայի, ներքին ու արտաքին քաղաքականության ձգողականության ուժեղացումը հանգիստ չեն տալիս կապիտալիստական աշխարհի ագրեսիվ շրջաններին: Համաշխարհային սոցիալիստական համագործակցության հաջողություններին, դասակարգային մարտերում իրենց կրած պարտություններին, գաղութային տիրապետությունների կորստյանը, կապիտալիզմից նորանոր երկրների անջատմանը, բուն բուրժուական պետություններում կոմունիստական կուսակցությունների հեղինակության աճին նրանք պատասխանում են ռազմական նախապատրաստությունների տենդագին ծավալմամբ, լրացուցիչ ռեզերվների որոնումներով, ձգտելով գեթ ինչ-որ չափով խարխլել նոր կարգի՝ աշխարհի արագացած հեղափոխական նորացման ամենաազդեցիկ գործոնի դիրքերը:*

*Ինչպես կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, իմպերիալիզմի այդպիսի ռեզերվներից մեկն է դարձել չինական ղեկավարության քաղաքականությունը, որը բացահայտորեն ուղղված է սոցիալիստական պետությունների մեծ մասի դեմ: Վերջին ժամանակներս սոցիալիստական սկզբունքներին ու իդեալներին միանգամայն խորթ այդ քաղաքականության մեջ առավել նկատելի է դարձել աջ թեքումը:*

*Մաոյի հետնորդների գործունեությունը վկայում է, որ նրանք ո՛չ միայն աշխատում են մաոյականությունը ապագայի համար ևս պահպանել՝ որպես պաշտոնական գաղափարախոսություն, այլև գիտակցաբար շեշտում են այդ դոկտրինայի առավել խոտելի արտաքին քաղաքական ասպեկտները, դրա թըշնամությունը Սովետական Միության, ամբողջ սոցիալիստական համագործակցության նկատմամբ, խաղաղության, ժողովուրդների ազգային և սոցիալական ազատագրության գործի նկատմամբ: Իմպերիալիզմի հետ միակցվելու՝ մաոյականության ի սկզբանե պարունակած միտումն այժմ դառնում է ակտիվ փոխգործողություն՝ մոնոպոլիստական կապիտալի երկրների ծայրահեղ ռեակցիայի ուժերի հետ:*

*Վարելով այդ կուրսը, ներկայիս չինական ղեկավարությունը ջանում է այն քողարկել՝ կեղծավորաբար վկայակոչելով իր, իբր, շահագրգռվածությունը համաշխարհային մասշտաբով սոցիալիստական հեղափոխության հաղթանակի մեջ: Նման չարաշահումները ծանրակշիռ դարձնելու համար գործի է դրվում կեղծ հեղափոխական՝ «երեք աշխարհների կոնցեպցիան»՝ որպես «մարքսիզմ-լենինիզմի համընդհանուր ճշմարտության միացում համաշխարհային հեղափոխության կոնկրետ պրակտիկայի հետ», որպես մի «գիտական տեսություն»,*

որն, իբր, «ժառանգել, պաշտպանել ու զարգացրել է մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթները»։ Իրականում թունդ նացիոնալիստական և գեոպոլիտիկական այդ կոնցեպցիան հենց այդպես էլ ռեկլամում էր «Ժենմին ժիբաո» թերթը անցյալ տարվա նոյեմբերի 11-ին՝ «Երեք աշխարհների բաժանման մասին նախագահ Մաո Ցզե-դունի տեսությունը հսկայական ավանդ է մարքսիզմ-լենինիզմի մեջ» խորագիրը կրող խմբագրական հոդվածում։

Այդ հոդվածը, որը լույս էր տեսել հենց այն ժամանակ, երբ սովետական ժողովուրդը, ողջ պրոգրեսիվ մարդկությունը նշում էին Մեծ Հոկտեմբերի՝ XX դարի գլխավոր իրադարձության 60-ամյակը, դարձավ չինական ղեկավարության ծրագրային փաստաթուղթը, որը սահմանում է նրա արտաքին քաղաքականությունը, նրա դիրքավորումը պատերազմի ու խաղաղության պրոբլեմներում, մեծապետական-հեգեմոնիստական նպատակների համար պայքարը շարունակելու ստրատեգիան և տակտիկան։ Շոշափված հարցերով, իր քաղաքական և գաղափարական ուղղվածությամբ այն զգալիորեն դուրս է գալիս դրանից ավելի շուտ կայացած ՉԿԿ-ի XI համագումարի նյութերի շրջանակներից։ Ձևով ու բովանդակությամբ այդ հոդվածը մաոյականների ամենաընդարձակ հակասովետական ելույթներից ու ժամանակակից հակակոմունիզմի ամենաչարամիտ մանիֆեստներից է։ Այդ հոդվածում «երեք աշխարհների կոնցեպցիան» ներկայանում է արդեն ոչ թե որպես Մաոյի «գաղափարներից» մեկը, այլ որպես իմպերիալիզմի հետ խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի դեմ մաոյական սոցիալ-շովինիզմի մղած պայքարի ավարտուն «տեսություն»։ Նշված կոնցեպցիան պաշտոնապես վավերացվեց ժողովրդական ներկայացուցիչների համաչինական ժողովի վերջերս կայացած նստաշրջանում։

Տեսնենք, թե ինչպես և ինչի վրա է կառուցված այն, ինչի և ում է ծառայում, որն է նրա վտանգը։

«Երեք աշխարհների կոնցեպցիան» առաջին անգամ հրապարակորեն շարադրվել է 1974 թվականի ապրիլի 10-ին՝ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի VI հատուկ նստաշրջանում չինական պատվիրակության ղեկավար, ՉԺՀ-ի պրեմիերի տեղակալ Դեն Սյաո-պինի ճառում։ Առանց վկայակոչելու Մաո Ցզե-դունի հեղինակ լինելը, նա ներկայացրեց միջազգային ասպարեզում ուժերի տեղաբաշխման հետևյալ սխեման. «ԱՄՆ-ը և ՍՍՀՄ-ը կազմում են առաջին աշխարհը։ Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի և մյուս շրջանների զարգացող երկրները՝ երրորդ աշխարհը։ Վերոհիշյալ երկու աշխարհների միջև գտնվող զարգացած երկրները՝ երկրորդ աշխարհը»։ «Առաջին աշխարհը» Դենը բնութագրեց որպես ամենախոշոր շահագործողի, հարստահարիչի, ինչպես նաև որպես նոր համաշխարհային պատերազմի օջախ, քանի որ, իբր, այդ աշխարհի մեջ մտնող «երկու գերտերությունները» մահացու գոտեմարտ են մղում գերիշխանության համար։ Իսկ «երկրորդ աշխարհի» երկրները, իբր, հիմնականում «երկու գերտերությունների» հակառակորդներն են, թեպետև «որոշակի հակասություններ» ունեն զարգացող պետությունների հետ, իսկ մի քանիսը նույնիսկ «մինչև այժմ զանազան ձևերով պահպանում են գաղութային հարաբերությունները» նրանց հետ։ Իսկ ինչ վերաբերում է «երրորդ աշխարհը» կազմող բազմաթիվ զարգացող երկրներին, ապա դրանք «իրենցից ներկայացնում են այն հեղափոխական շարժիչ ուժը, որը առաջ է մղում համաշխարհային պատմության անիվը, ինչպես նաև գլխավոր ուժը գաղութատիրության, իմպերիալիզմի և առանձնապես գերտերությունների դեմ մղվող պայքարում»։ Այդ սխեմայում տեղ է հատկացված նաև ՉԺՀ-ին. «Չինաստանը սոցիալիստական երկիր է և դրա հետ միասին՝ զարգացող երկիր։ Չինաստանը պատկանում է երրորդ աշխարհին»...։

Ինչպես հետևում է «Ժենմին ժիբաո»-ի ծրագրային հոդվածից, ՄԱԿ-ում Դեն Սյաո-պինի ելույթից երկու ամիս առաջ «երեք աշխարհների» մասին հիշատակել է ինքը Մաոն՝ Զամբիայի պրեզիդենտ Կ. Կաունդայի հետ ունեցած զրույցում։ «Իմ կարծիքով,— ասել է նա,— ԱՄՆ-ը և ՍՍՀՄ-ը կազմում են առաջին աշխարհը։ Միջակա ուժերը, օրինակ, Ճապոնիան, Եվրոպան և Կանադան, պատկանում են երկրորդ աշխարհին։ Իսկ մենք ձեզ հետ պատկանում ենք եր-



րորդ աշխարհին»։ Եվ իսկույն ավելացրել է. «Երրորդ աշխարհում կա բազմաքանակ բնակչություն։ Ասիան, բացառությամբ Ճապոնիայի, պատկանում է երրորդ աշխարհին։ Ամբողջ Աֆրիկան պատկանում է երրորդ աշխարհին, երրորդ աշխարհին է պատկանում նաև Լատինական Ամերիկան»։

Ըստ էության, սա է այն ամենը, ինչ ասել է Մաոն այդ հարցի մասին։ Իսկ այժմ պեկինյան պրոպագանդան այդ մի քանի նախադասությունը ներկայացնում է որպես մի «տեսություն», որը, իբր, «ժառանգել, պաշտպանել և զարգացրել է մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթները»։

Դժվար չէ նկատել, որ արդեն Դեն Սյաո-պինի շարադրմամբ Մաոյի կառուցած սխեման ուներ փոքր-ինչ այլ տեսք։ Օրինակ, Դենը «երրորդ աշխարհի» մեջ մտցրել էր միայն զարգացող երկրներին, այլ ոչ թե Ասիայի (Ճապոնիայից բացի), Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի բոլոր երկրները։ Ըստ երևույթին, Պեկինում Մաոյի ձևակերպումը համարել են չափազանց խոցելի քննադատության համար։ Իրոք, ըստ Մաոյի ստացվում էր, որ «երրորդ աշխարհը», որն, իբր, «համաշխարհային պատմության անիվը» պտտեցնող հեղափոխական շարժիչ ուժն է, իր մեջ ընդգրկում է նաև պրոիմպերիալիստական վարչակարգերը երեք մայրցամաքների երկրներում, այդ թվում Պինոչետի ֆաշիստական խունտան Չիլիում, ՀԱՀ-ի և Ռոդեզիայի ռասայական վարչակարգերը, արաբական ազգային-ազատագրական շարժման ոխերիմ թշնամի Իսրայելը։

Այնուհետև, ի տարբերություն Մաոյի, Դեն Սյաո-պինը «երրորդ աշխարհի» մեջ մտցրել է «Մյուս շրջանների» (Ասիայից, Աֆրիկայից և Լատինական Ամերիկայից բացի) զարգացող երկրները։ Դատելով այդ ամենից, խոսքը վերաբերում է Եվրոպայի ինչ-որ մասերի, որոնք Մաոն ամբողջովին հաշվեգրում էր «երկրորդ աշխարհի» մեջ։ Այսպիսով, «երրորդ աշխարհի» շրջանակները, ուր վաղուց ղեկավար դերի հավակնություն ուներ Պեկինը, Դենի սխեմայում բավական ընդարձակվեցին. դրանով նրանք հասկացնում էին, որ այստեղ դռները բաց են բոլոր այս պետությունների համար, որոնք կհամաձայնեն ընթանալ մաոյական քաղաքականության նավարկուղով։ Միանգամայն ակնհայտ է, որ «երրորդ աշխարհի» շրջանակների նման շարժունությունը անխուսափելիորեն շարժուն է դարձնում «երեք աշխարհների» ամբողջ սխեման, թույլատրելով դրանցից յուրաքանչյուրի կառուցվածքի ամեն մի փոփոխություն՝ ի հաճույս Պեկինի շահերի։

«Ժենմին ժիբաո»-ի հոդվածում նշված սխեման հետագա ճշգրտման ենթարկվեց միանգամից երկու ուղղություններով։ Մի կողմից, մեղմացվում էր նախասկզբնական, մաոցզեդունյան տարբերակի բացահայտ գեոպոլիտիկական և նացիոնալիստական էությունը և փորձ էր արվում բուն սխեման մեկնաբանել որպես միջազգային ասպարեզում ուժերի տեղաբաշխման վերլուծության նըկատմամբ, իբր, դասակարգային պրոլետարական մոտեցման արտահայտություն։ Մյուս կողմից, անցկացվում էր այն միտքը, թե, իբր, «երկրորդ և երրորդ աշխարհներին» «սպառնում են» ոչ թե երկու հակառակորդները (ԱՄՆ-ը, ՍՍՀՄ-ը), այլ միայն մեկը՝ Սովետական Միությունը։

Ճշգրտման առաջին ուղղությունը առավել հստակորեն դրսևորվեց «երրորդ աշխարհ» հասկացության նոր մեկնաբանման մեջ։ Այժմ այն ներկայանում է հետևյալ կերպ. «Սոցիալիստական երկրները, որպես միջազգային պրոլետարիատի հենարան, ճնշված ազգերի հետ միասին, որոնք ենթարկվում են առավել լուրջ ճնշման ու շահագործման և երկրագնդի բնակչության մեծամասնությունն են, կազմում են երրորդ աշխարհը...»։ Նման մեկնաբանմամբ այլևս կապ չկա ոչ երեք մայրցամաքների հետ, որոնց մասին խոսում էր Մաոն, ոչ «զարգացող երկրների» հետ, ինչպես դա եղել է Դեն Սյաո-պինի տարբերակում։ Իսկ ինչ վերաբերում է մյուս երկու «աշխարհներին», ապա դրանց մեկնաբանությունը կարծես մնում էր նախկինը, սակայն այն էական տարբերությամբ, որ «առաջին աշխարհի» ձևակերպման մեջ ՍՍՀՄ-ը դրված է առջևում և հայտարարված «համաշխարհային պատերազմի ավելի վտանգավոր օջախ, քան ԱՄՆ-ը», որպես «պայքարի գլխավոր օբյեկտ՝ ընդդեմ գերիշխանության»։

«Երեք աշխարհների բաժանման մասին նախագահ Մաո Ցզե-դունի տեսու-

թյունը» մեր մոլորակի նկատմամբ եղած այն հայացքի օրինաչափ արդյունքն է, որ վաղուց քարոզում էր Մաոն: Դեռ 1946 թվականին նա ամեն ինչ հանգեցնում էր «միջակա գոտու» համար ԱՄՆ-ի ու ՍՍՀՄ-ի հակամարտությանը: «ԱՄՆ-ի և Սովետական Միության միջև,— ասում էր նա,— ընկած է անչափ լայնածավալ մի գոտի, որն ընդգրկում է Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի կապիտալիստական, գաղութային և կիսագաղութային շատ երկրներ»: Արդեն այն ժամանակ Մաոն ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը համարում էր ոչ թե որպես դասակարգայնորեն-հակադիր երկու պետություններ, այլ պարզապես իբրև երկու առավել զոռեղ մրցակից տերություններ:

60-ական թվականներին «անչափ լայնածավալ միջակա գոտին» բաժանվեց երկու «միջակա գոտիների». առաջինն ընդգրկում է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի թույլ զարգացած երկրները, իսկ երկրորդը՝ իմպերիալիստական պետությունները, բացի ԱՄՆ-ից: Եվ թեպետ պեկինյան պրոպագանդան «առաջին գոտին» ներկայացնում էր որպես հակաիմպերիալիստական պայքարի, աշխարհի ամբողջ հեղափոխական վերափոխման գլխավոր ուժը, ինքը՝ Մաոն, դրան էական նշանակություն չէր տալիս իր այն դրույթներում, որոնք արտացոլում են նրա հայացքը աշխարհի ուժերի տեղաբաշխման նկատմամբ: Ինչպես հաղորդում էր «Յումանիտե» թերթը 1964 թվականի փետրվարի 21-ին նա ֆրանսիական մի պատվիրակության հետ ունեցած հանդիպման ժամանակ ասել է. «Ֆրանսիան, Գերմանիան, Իտալիան, Անգլիան (եթե նա դադարի ԱՄՆ-ի գործակալը լինելուց), Ճապոնիան և մենք՝ ահա թե որն է երրորդ ուժը»: Այստեղից երևում է, որ Մաոն, որն այն ժամանակ բացահայտորեն ծավալում էր պայքարը մեծապետական-հեգեմոնիստական նպատակների համար, իր ստրատեգիական պլանները կառուցում էր իմպերիալիստական տերությունների հետ Չինաստանի բլոկավորման վրա՝ ի վնաս մյուս երկրների շահերի: Այստեղից երևում է նաև, որ «երրորդ ուժը», որը, Մաոյի խոսքերով, կանգնած էր և՛ ՍՍՀՄ-ի, և՛ ԱՄՆ-ի դեմ հանդիպման, իրականում նրանց կողմից ուղղվում էր ամենից առաջ Սովետական Միության դեմ:

Չնայած տարբեր ժամանակներում Մաոյի առաջարկած արդի աշխարհի սխեմաների միջև եղած որոշ տարբերություններին, դրանցում անփոփոխ է մնացել մի բան՝ նացիոնալիստական-պրագմատիկական մոտեցումը միջազգային ասպարեզում հակամարտ ուժերի գնահատման նկատմամբ: Այդ մոտեցումն ամբողջովին ու լրիվ ժառանգել են Մաոյի փոխանորդները, որոնք փորձում են նրա մեծապետական-հեգեմոնիստական, պրոիմպերիալիստական էությունը քողարկել կեղծ մարքսիստական ֆրազեոլոգիայով:

«Երեք աշխարհների կոնցեպցիայի» ներկայիս վերսիան, դատելով «Ժենմին ժիբաո»-ի հոդվածից, ըստ էության, ներառել է մաոյական այն «գաղափարների» ողջ գինանոցը, որոնք կոչված են հիմնավորելու չին պարագլուխների հեգեմոնիստական նկրտումները, նրանց սոցիալ-շովինիստական պլատֆորմը: Դրանցից գլխավորը մնում է նրանց անհեթեթ գաղափարը ՍՍՀՄ-ի բուրժուական վերասերման և նրա՝ «սոցիալիմպերիալիստական գերտերության» վերածվելու մասին:

Սովետական Միության ներքին զարգացումը և նրա արտաքին քաղաքական գործունեության ամեն մի ասպեկտ մաոյականները զրպարտչորեն ներկայացնում են որպես այդպիսի վերասերման սիմպտոմներ: Կենտրոնացման բարձր մակարդակը, որը բնորոշ է զարգացած սոցիալիզմի պլանային էկոնոմիկային, նրանք ներկայացնում են որպես մոնոպոլիստական կապիտալիզմի հատկանիշ: Արտադրության մասշտաբների ճեղքվածքի կրճատումը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև նրանք հրամցնում են ոչ թե որպես սոցիալիզմի հաջողությունների արդյունք կապիտալիզմի հետ տեղի ունեցող մրցության մեջ, այլ որպես այն բանի ապացույց, որ «սոցիալ-իմպերիալիզմը» «հին իմպերիալիզմի» համեմատությամբ աչքի է ընկնում ավելի մեծ կենսական ուժով և հետագա աճի կարողությամբ: Սովետական պետության արտաքին տնտեսական կապերի ընդլայնումը, նրա ժողովրդական տնտեսության զարգացմանը զուգընթաց, առևտրի ծավալի մեծացումը երիտասարդ անկախ պետությունների հետ, տնտեսական,



քաղաքական, գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցության ամրապնդումը նրանց հետ, այս ամենը, եթե հավատանք Պեկինին, «սոցիալ-իմպերիալիզմի» էքսպանսիայի վկայությունն է միայն: Այն, որ Սովետական Միությունը ինտերնացիոնալիստական լայն աջակցություն է ցույց տալիս իմպերիալիզմի և նեոգաղութատիրության դեմ ժողովուրդների մղած պայքարին, այդ թվում՝ և ռազմական օգնություն ազգային-ազատագրական շարժման զանազան ջոկատներին կամ ագրեսիայի զոհերին, հավասար է համարվում իմպերիալիստական տերությունների անհանդուրժելի միջամտությանը ուրիշ երկրների ներքին գործերին:

Ընդ որում, Պեկինի պարագլուխներին ամենևին անհարմար դրության մեջ չի գցում այն, որ իրենք՝ ազատության և անկախության համար պայքարող մարտիկները, բոլորովին այլ կերպ են գնահատում սովետական օգնության դերը: Նրանք «չեն լսում», երբ այդ մասին խոսում են երիտասարդ պետությունների ղեկավարները: Նրանք «չեն լսել» նաև ԱԺԴՀ-ի պրեզիդենտ Հ. Բումեդիենի վերջերս արած հայտարարությունը. «... Սովետական Միությունը, և սա մենք ասում ենք բոլորի համար, շատ բան է արել արաբների համար... Եվ եթե եգիպտական զորքերն անցան Սուեզի ջրանցքը, ապա նրանք այդ բանն արեցին սովետական զենքով: Եվ եթե մյուս երկրները դիմացան պայքարում, ապա նրանք այդ բանն արեցին սովետական զենքով: Իսկ բոլոր այն դժբախտությունները, որոնք բերվել էին Մերձավոր Արևելք և Աֆրիկա, բոլոր այդ դժբախտությունները բերվել էին արևմտյան զենքի օգնությամբ»:

Միջազգային լարվածության թուլացումն ամրապնդելու և զարգացնելու, կայուն խաղաղությունն ապահովելու նպատակով ՍՍՀՄ-ի և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների գործադրած ջանքերը մաոյականները համագործակցության մյուս երկրների գործադրած ջանքերը մաոյականները ռազմաբնութագրում են որպես խաբեություն, որպես Արևմուտքի նկատմամբ ռազմական գերակշռության հասնելու փորձերի քողարկում: Սովետական պետության ու նրա դաշնակիցների ամեն մի գործողություն, որը խափանում է ուժերի ստեղծված հավասարակշռությունը խախտելու՝ իմպերիալիզմի ռազմամոլ շրջանների մտադրությունները, Պեկինը որակում է որպես Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների ագրեսիվության վկայություն:

Անվերջ կրկնելով, թե, իբր, ՍՍՀՄ-ը վերասերվել է «սոցիալ-իմպերիալիստական գերտերության», սոցիալիստական լագերը հայտարարելով իբրև «գոյություն չունեցող», մաոյական գաղափարախոսները փորձում են հիմնավորել իրենց այն թեզիսը, թե, իբր, պատմությունն ինքն է Չինաստանը առաջ քաշում բոլոր երկրների ու ժողովուրդների, բոլոր «առաջադեմ ազգերի» հեգեմոնի դերին՝ ազգային և սոցիալական ազատագրության համար նրանց մղած պայքարում: Այդ նկրտումը հեշտությամբ կարելի է նկատել «երրորդ աշխարհի» նորագույն բնորոշման մեջ. այն այժմ անվանվում է «հիմնական ուժը իմպերիալիզմի և հեգեմոնիզմի դեմ մղվող համաշխարհային պայքարում», բայց, իրենց հերթին, իբրև նրա առաջատար ուժ են հռչակվում «սոցիալիստական երկրները», որոնցից հիշատակվում է միայն Չինաստանը: Նա է որպես թե միայն «վճռականորեն ընթանում սոցիալիստական ուղիով և հաստատակամորեն պաշտպանում լենինիզմի սկզբունքները», «երրորդ աշխարհի» երկրների հետ ունի «վերապրածի ընդհանրություն, պայքարի ընդհանրություն և շահերի ընդհանրություն՝ տևական ժամանակաընթացում՝ անցյալում, ներկայում և ապագայում»:

Այսպիսով, Չինաստանը հայտարարվում է որպես «երրորդ աշխարհի», այսինքն՝ ինչ-որ «սոցիալիստական երկրների» և ինչ-որ «ճնշված ազգերի» պարագլուխ, մեծապետական-հեգեմոնիստական նկրտումները նույնացվում են ազատագրական շարժման շահերի հետ: Տեսնենք, սակայն, թե իրականում ինչ է իրենից ներկայացնում մաոյական «երրորդ աշխարհը», որոնք են նրա սահմանները:

Ռեալ սոցիալիզմը, սոցիալիստական համագործակցությունը մաոյականները ներկայացնում են որպես «երրորդ աշխարհի» ամենակատաղի թշնամիներ, բայց միաժամանակ այդ մտացածին թշնամիների գործակիցներ, «սո-

ցիալ-իմպերիալիզմի» կամակատարներ են անվանում գործնականորեն բոլոր այն երկրներին ու ժողովուրդներին, որոնք ազատության և անկախության համար մղած իրենց պայքարում հենվում են Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների վրա։ Բայց հարց է ծագում, այդ դեպքում էլ ինչ է մնում մաոյական «երրորդ աշխարհից», որոնք են նրա շրջանակները, եթե առաջադիմական ուժերի կողմն է մարդկության հսկայական մեծամասնությունը։ Դուրս է գալիս, որ այդ աշխարհը գործնականորեն սահմանափակվում է միայն հակակոմունիստական և ռեակցիոն-նացիոնալիստական ուժերով, պրոիմպերիալիստական վարչակարգերով։ Ստացվում է, որ ամեն ինչ դարձյալ հանգեցվում է Մաոյի՝ իրեն վարկաբեկած սխեմային։

Շրջանագիծը փակվում է։ Եվ դա միանգամայն բացատրելի է, քանի որ, ինչպես և Մաոն, նրա հետնորդներն իրենց ծրագրած «երրորդ աշխարհի» գլխավոր խնդիրն են համարում պայքարը ռեալ սոցիալիզմի, նրա դաշնակիցների և բարեկամների դեմ։ Մի պայքար, որը քողարկվում է կեղծ շաղակրատանքներով «գերպետական հեգեմոնիզմի» մասին, որի տակ նկատի է առնվում ամենից առաջ սովետական քաղաքականությունը, որն ուղղված է համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը, տոգորված է հոգատարությամբ կայուն խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար։

Ըստ երևույթին, հասկանալով այդ կերպ մեկնաբանվող «երրորդ աշխարհի» օգնությամբ այդ գլխավոր խնդիրը քիչ թե շատ արդյունավետ լուծելու ոչ ռեալությունը, Պեկինի գաղափարախոսներն ու քաղաքագետները դարձյալ հույսերը դնում են մոնոպոլիստական կապիտալի երկրների, այսինքն՝ նրանց տերմինաբանությամբ, «երկրորդ աշխարհի» հետ հնարավոր դաշինքի վրա։ Այդ հույսերն ամրապնդվում են որոշակի ծառայություններով, միջնորդությամբ, որոնք նպատակ ունեն նախկին գաղութներն ու կիսագաղութները նորից դարձնել արևմտյան տերությունների կցորդ։ Հակասովետիզմի տրամաբանությունը, շովինիստական տենչերի տրամաբանությունն անխուսափելիությամբ ՉԺՀ-ի ներկայիս ղեկավարներին հասցրեց հենց այն ուժերի շարքերը, որոնք իրենց դասակարգային բնույթով եղել ու մնում են որպես սոցիալիզմի, ժողովուրդների ազատության և անկախության թշնամիներ։

Ձևականորեն Պեկինը շարունակում է մարտնչել «երկու գերիշխանությունների»՝ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի դեմ պայքարի ամենալայն միջազգային միասնական ճակատի ստեղծման համար։ Իսկ, ըստ էության, նա փորձում է կազմել հենց հակասովետական, հակասոցիալիստական ճակատ՝ ներառյալ նաև ԱՄՆ-ը։ Այդ մասին այժմ աներկմտորեն խոսում են իրենք՝ Պեկինի պարագլուխները, որոնք նոր շեշտեր են դնում բուն «գերպետական հեգեմոնիզմ» տերմինի մեկնաբանման վրա։ Դրան դարձյալ տոն տվեց «Ժենմին ժիբաո» թերթի հոդվածը։ Ահա այդ հոդվածի հեղինակների դատողություններից մի նմուշ. «Երկու գերտերություններից Սովետական Միությունը իրենից ներկայացնում է ավելի չարանենգ, ավելի բախտախնդիր և ավելի նենգ իմպերիալիզմ, հանդիսանում է համաշխարհային պատերազմի ամենավտանգավոր օջախը»։ Հենց նույն տեղում էլ շեշտվում է, որ ԱՄՆ-ը հավասարեցնել ՍՍՀՄ-ի հետ, չնշել, որ վերջինս, իբր, «համաշխարհային պատերազմի ավելի վտանգավոր հրձիգ է», նշանակում է «բթացնել ժողովուրդների հեղափոխական զգոնությունը» և «նենգափոխել գերհեգեմոնիստների դեմ մղվող պայքարի գլխավոր օբյեկտը»։

Կեղծ տեսական հրեշավոր ճամարտակությունները զուգակցվում են Չինաստանի արտաքին քաղաքականությունը ստեղծողների նույնպիսի պրակտիկ գործողությունների հետ։ Դեն Սյաո-պինը, անցյալ տարի զրույց ունենալով Ֆրանս պրես գործակալության գլխավոր դիրեկտոր Կլոդ Ռուսելի հետ, ուղղակի ԱՄՆ-ին հրավիրում էր մասնակցել հակասովետական ռազմաքաղաքական ալյանսին։ «Հարկավոր է խափանել Սովետական Միության կողմից նյութվող համապարփակ ռազմական պլանը, և ես հույսով եմ,— հայտարարել է նա,— որ այդ գործին կմասնակցի ամբողջ աշխարհը՝ երրորդ աշխարհը, երկրորդը և նույնիսկ առաջին աշխարհը, այսինքն՝ Միացյալ Նահանգները»։



Պեկինը նախկինում ևս համաշխարհային ռեակցիայի բոլոր ուժերին քանիցս կոչ է արել համախմբվել ԱՄՆ-ի շուրջը, որպեսզի արևմտաեվրոպական երկրների ու Ճապոնիայի իմպերիալիստները ամրապնդեն իրենց ռազմական և քաղաքական համագործակցությունը։ Բայց այն ժամանակ դա լոկ մի կողմնակի ակնարկ էր, որ ինքը պատրաստ է գործել ԱՄՆ-ի հետ համատեղ՝ ՍՍՀՄ-ի, ամբողջ սոցիալիստական համագործակցության դեմ մղվող պայքարում։ Իսկ այժմ Դեն Սյաո-պինը այդ պատրաստակամությունը հայտնեց առանց որևէ բառախաղի։

Այսպիսով, «ամենալայն միջազգային միասնական ճակատը», ըստ էության, նույն իմպերիալիստական լագերն է՝ Միացյալ Նահանգների գլխավորությամբ, և դրան հարող զանազան երկրների ռեակցիան։ Նորն այստեղ միայն մի բան է, այսինքն՝ այն, որ մաոյական ղեկավարությունը, ըստ էության, ո՛չ միայն Չինական Ժողովրդական Հանրապետությունը ներքաշեց այդ լագերի մեջ, այլև ակնհայտորեն հույս ունի գոնե գաղափարական առաջնություն ունենալ այնտեղ։ Մաոյականության ժամանակակից վերսիան հստակորեն արտահայտում է Պեկինի՝ առաջնություն ունենալու հավակնությունը աշխարհի հակասովետական, հակասոցիալիստական ուժերի և ամենից առաջ՝ դրանցից առավել հզորագույնների շրջանում։

Պեկինի ռազմատենչ հեգեմոնիզմը բնական երկյուղածություն է առաջացնում Արևմուտքի առավել խելամիտ քաղաքագետների շրջանում։ Միաժամանակ իմպերիալիստական տերությունների ռեակցիոն շրջանները Մաոյի ժառանգորդներին որոշակիորեն համարում են որպես իրենց ռազմաքաղաքական դաշնակիցները՝ համաշխարհային սոցիալիզմի դեմ մղվող պայքարում։ Այդ մասին բավական պերճախոս վկայում է, մասնավորապես, Եվրոպայում ՆԱՏՕ-ի զինված ուժերի գլխավոր հրամանատար, ամերիկացի գեներալ Ա. Հեյգի հայտարարությունը։ «Ամենևին տրամաբանությունից զուրկ չէ ասել, որ Չինաստանը Հյուսիս-ատլանտյան դաշինքի տասնվեցերորդ անդամն է»,— հայտարարել է նա վերջերս։ Հանդիսանալով մաոյականության հակահեղափոխական էության օրինաչափ դրսևորումը, Պեկինի ներկայիս թեքումը դեպի ռազմաքաղաքական բլոկավորումը իմպերիալիստական ռեակցիայի հետ համոզիչ ապացույց է այն բանի, որ Մաոյի հետնորդները ո՛չ միայն շարունակում են իրենց ժառանգած սոցիալ-շովինիստական կուրսը, այլև այն կիրառում ավելի համառորեն, քան իրենց նախորդները։

Հանուն իրենց սեփական սոցիալ-շովինիստական նպատակների միանալով իմպերիալիստական լագերի հետ, մաոյականները և՛ օբյեկտիվորեն, և՛ սուբյեկտիվորեն ծառայում են մոնոպոլիստական բուրժուազիայի դասակարգային շահերին, այդ բուրժուազիային ակտիվ պայքարի ոգեշնչում սոցիալիստական համագործակցության, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի ուժերի դեմ։ Նրանք հույս ունեն ռազմական կոնֆլիկտ հրահրել, այդ կոնֆլիկտում իրար հետ գժտեցնել ԱՄՆ-ին և ՍՍՀՄ-ին, որպեսզի արյունաքամ անեն նրանց և նման «ամենակարճ ճանապարհով» Չինաստանը հասցնեն համաշխարհային տիրապետության։ Հենց այդ պատճառով էլ Մաոյի հետնորդներն առանձնահատուկ եռանդով պայքարում են միջազգային լարվածության թուլացման դեմ, ձգտում ամեն կերպ ամրապնդել Արևմուտքի այն ուժերի դիրքերը, որոնք վերջին ժամանակներս օգտագործում են «սովետական սպառնալիքի» մասին առասպելը՝ սպառազինությունների մրցավազքի հերթական տուրը բորբոքելու համար։ «Սովետական գերտերության ագրեսիվության» գրոտման գործում չինական պրոպագանդան այնքան է առաջադիմել, որ գրավել է նույնիսկ բավականին փորձված բուրժուական մամուլի ուշադրությունը։ Նշելով, որ «Վաշինգտոնը և Պեկինը ունեն մեկ նախադրույթ՝ սպառնալիքը Մոսկվայի կողմից», ամերիկյան «Կրիսչեն սայենս մոնիտոր» թերթը նշում է, որ «սովետական սպառնալիքի վերաբերյալ չինական տարբերակը մատուցվում է է՛լ ավելի լայնորեն ու բարձրաձայն, քան վաշինգտոնյան տարբերակը»։

Կազմելով իրենց հեռու գնացող պլանները, մաոյականներն ամեն կերպ արդարացնում են իմպերիալիզմը, հավատացնում, որ ոչ թե իմպերիալիզմի մեջ

է թարքնված ռազմական վտանգը, ոչ թե նա է մեղավոր ճնշման ու շահագործման համար, գանգատվում են, որ «սովետական սոցիալ-իմպերիալիզմը հարձակվում է, իսկ ամերիկյան իմպերիալիզմը պաշտպանվում»: Իրենց ռենեգատության մեջ հասնելով մինչև իմպերիալիզմի հետ ՉԺՀ-ի ամենասերտ մերձեցման «անհրաժեշտության» ընդունումը, նրանք դրանով իսկ հաստատում են, որ մաոյականությունը կարող է էվոլյուցիա ապրել միայն դեպի աջ, քանի որ իր բուն էությամբ այն և՛ որպես գաղափարախոսություն, և՛ որպես քաղաքականություն հակակոմունիզմի, մանրբուրժուական հեղափոխականության, ռեակցիոն նացիոնալիզմի տարատեսակությունն է:

Իրենց դիրքավորման պրոիմպերիալիստական բնույթը քողարկելու համար մաոյականներն ավելի ու ավելի լկտիորեն են ձեռնածություն անում «պրոլետարական ֆրազով», համաշխարհային զարգացման պրոբլեմների նկատմամբ կեղծ մարքսիստական մոտեցմամբ: Այդ նպատակով նրանք սոցիալիզմի դեմ մղվող պայքարի «ամենալայն միջազգային միասնական ճակատում» ներառել են անգամ կապիտալիստական երկրների պրոլետարիատին:

Եթե 60-ական թվականներին Պեկինը կտրականապես մերժում էր համաշխարհային ազատագրական պրոցեսում միջազգային բանվոր դասակարգի հեգեմոնիայի բուն միտքն անգամ, ապա այժմ, բավական է հավատալ նրա դեմագոգիային, և հարցը բոլորովին այլ բնույթ կստանա: Թե դրա ետևում ինչ է թաքնված, կարելի է գտնել «Ժենմին ժիբաո»-ի ծրագրային հոդվածից: «Միջազգային պրոլետարիատը,— ասված է այնտեղ,— այսօր պետք է առավելագույն ջանքեր գործադրի, որպեսզի պայքարի միջազգային միասնական ճակատ ստեղծի, ամրապնդի ու ընդլայնի ընդդեմ երկու հեգեմոնների» (այսինքն՝ բացառապես ընդդեմ ՍՍՀՄ-ի, սոցիալիստական համագործակցության երկրների) և «այդ ճակատի ներսում ամեն կերպ զարգացնի միջուկի իր դերը»:

Պեկինը ջանում է ո՛չ միայն միջազգային պրոլետարիատին ենթարկել իր մեծապետական-հեգեմոնիստական նպատակներին, նրան ներգրավել իր ռեակցիոն պրոիմպերիալիստական քաղաքականության մեջ, այլև նրան ամենասերտ համագործակցության մղել «հայրենական» բուրժուազիայի հետ, դարձնել վերջինիս դասակարգային դաշնակիցը՝ սոցիալիզմի աշխարհի դեմ մղած պայքարում: Իր «պրոլետարական» դեմագոգիայով Պեկինը ուղղակի միակցվում է միջազգային բանվորական շարժման շարքերում եղած բուրժուական գործակալության հետ, որը ձգտում է աշխատավորներին ու նրանց կազմակերպություններին հաշտեցնել կապիտալիստների հետ: Այդ գործակալության հետ միասին չինական ղեկավարները փորձում են կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը դարձնել ամենից առաջ ռեալ սոցիալիզմի դեմ ուղղված ագրեսիայի ու պատերազմի իմպերիալիստական քաղաքականության նախապատրաստման և իրականացման ակտիվ ուժ: «Իմպերիալիստական հայրենիքի» պաշտպանությունն, իսկ հետևաբար նաև պաշտպանության նախապատրաստումն, իբր, Սովետական Միության կողմից հնարավոր «ագրեսիայից», նրանք հայտարարում են որպես կապիտալիստական երկրների պրոլետարիատի «կարևորագույն դասակարգային պարտքը»: Գործնականորեն դա ենթադրում է ո՛չ միայն կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի կողմից Արևմուտքի ագրեսիվ շրջանների պաշտպանության ագիտացիա, այլև իմպերիալիստական լագերի ռազմական պոտենցիալի ըստ ամենայնի ուժեղացմանը նրա ամենաակտիվ մասնակցության քարոզ:

Պրոլետարներին ուղղված երկդիմի կոչը՝ բոլոր ուժերը նվիրել այդ «պարտքը» կատարելու համար, «Ժենմին ժիբաո» թերթի էջերից հնչեց հունվարի 18-ին՝ «Հայրենիքի պաշտպանության մասին լենինյան տեսության տեսակետից մոտենալ երրորդ աշխարհի երկրների ազգային անկախության պաշտպանության արդարացիության հարցին» բացահայտ կեղծարարական խորագիրը կրող հոդվածում: Սա նույն թերթի 1977 թվականի նոյեմբերի 1-ի խմբագրական հոդվածի՝ չինական մամուլում լույս տեսած առաջին մեկնաբանությունն էր, ուր ճշգրտվում և պարզաբանվում են «երեք աշխարհների բաժանման մասին նախագահ Մաո Ցզե-դունի տեսության» դրույթները: Այդ դրույթներին համա-



պատասխան, ռեալ սոցիալիզմը հայտարարվում է որպես միջազգային պրոլետարիատի գլխավոր թշնամի, իսկ պրոլետարիատը պարտավորվում է զոհաբերել իր դասակարգային շահերը՝ հանուն այդ «թշնամու» դեմ մղվող պայքարի:

Մաոյի փոխանորդները, «երեք աշխարհների տեսությունը» պրոպագանդելով որպես «միջազգային պրոլետարիատի ղեկավար գաղափար», իհարկե, ամենից ավելի քիչ են հույս դնում բանվոր դասակարգի կողմից իրենց արկածախնդրական ու շտրեյկբրեխերական քաղաքականության որևէ պաշտպանության վրա: Այստեղ գլխավոր նպատակը այլ է՝ արժանանալ մոնոպոլիստական բուրժուազիայի բարեհաճությանը, որը մտահոգված է իր իրավունքների համար պրոլետարիատի ծավալած դասակարգային մարտերի թափով, ապացուցել իր օգտակարությունը իմպերիալիզմի համար՝ որպես նրա կամակատարը երկու սիստեմների պատմական հակամարտության բոլոր ճակատներում: Պեկինը չի կարող հաշվի չառնել այն, որ այժմ բուրժուազիայի շրջանում ևս աճում է զենքի ուժով սոցիալիզմին ու նրա դաշնակիցներին իր կամքը պարտադրելու փորձերի անհեռանկարայնության ըմբռնումը: Ուստի, պատերազմի ու խաղաղության հարցերում մնալով հին, մաոյական դիրքերի վրա, շարունակելով շաղակրատել նոր համաշխարհային պատերազմի «բացարձակ անխուսափելիության» մասին, նա այժմ պատրաստակամություն է հայտնում ձգտել դրա «հետաձգման»: Ի՞նչ ճանապարհով: Բոլոր հնարավոր ուժերը Սովետական Միության, ամբողջ սոցիալիստական համագործակցության դեմ պայքարի մոբիլիզացման, մարդկությանը դեպի «սառը պատերազմի» ժամանակները ետ շպրտելու միջոցով՝ այդտեղից բխող բոլոր աննախատեսելի հետևանքներով:

Ներկայիս չինական ղեկավարները, ըստ էության, ժխտում են աշխարհի պառակտումը երկու հակադիր սոցիալական սիստեմների, այն նենգափոխելով «երեք աշխարհների բաժանման» հակագիտական, սուբյեկտիվիստական սխեմայով: Այդ սխեմայում ո՛չ միայն ինքնուրույն տեղ չճարվեց սոցիալիզմի համար, այլ, ավելին, պարզապես «ավելորդ» համարվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմի բուն գոյությունը: Եթե անցյալում, 1974 թվականին, մաոյականները սոցիալիստական լագերը հայտարարեցին որպես «գոյություն չունեցող», ապա այժմ նրանք է՛լ ավելի հեռուն են գնացել: Ինչպես պնդում է «Ժենմին ժիբաո»-ն, «պատմական պայմանները չեն թելադրում նորից սոցիալիստական լագեր ստեղծելու անհրաժեշտություն»:

Այս ամենը վկայում է, որ երկու համաշխարհային սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի, պատմական պայքարում չինական պարագլուխները անցան կապիտալիզմի կողմը: Մեր ժամանակի բոլոր առավել հրատապ հարցերում, ըստ էության, հանդես գալով համաշխարհային ռեակցիայի հետ միասին, վարելով պրոիմպերիալիստական կուրս, նրանք Չինաստանի քաղաքականությունը դարձրել են միջազգային լարվածության ուժեղացման, խաղաղության և սոցիալիզմի գործի վիժեցման առանձնահատուկ ակտիվ գործոն: Առավել ևս վտանգավոր գործոն, որովհետև դրա կերտողները հագնում են մարքսլենինյան դիմակ և կարող են մոլորեցնել անտեղյակ մարդկանց:

Պեկինի պարագլուխները գիտակցում են, որ միայն Մաոյի «գաղափարները» բավական չեն, որպեսզի քիչ թե շատ գիտականության տեսք տան իրենց կոնցեպցիաներին: Ուստի, ազդարարելով Մաոյի վերջին «գիտական տեսությունը», նրանք առանձին ջանասիրությամբ դիմում են մարքսիզմ-լենինիզմի հեղինակությունը չարաշահելու փորձված մեթոդին: Եթե ՉԿԿ XI համագումարում Խուա Գո-ֆենը «երեք աշխարհների» սխեման ներկայացնում էր բացառապես իբրև Մաոյի «ստեղծագործական ոգեշնչման» արգասիք, ապա «Ժենմին ժիբաո»-ի ծրագրային հոդվածի հեղինակներն արդեն փորձում են այն հիմնավորել որպես մարքս-լենինյան ուսմունքի «ստեղծագործական կիրառում» արդի պայմաններում: Որպեսզի «տեսականորեն սրբագործեն» իրենց մանևրները, որոնք ուղղված են հակահեղափոխության զանազան ուժերի օգտագործմանը՝ իրենց հեգեմոնիստական նպատակներին հասնելու համար, նրանք դիմում են գիտական կոմունիզմի ուղղակի կեղծարարությանը:

*Գեոպոլիտիկական՝ «երեք աշխարհների կոնցեպցիան», որն անտեսում է աշխարհի պառակտումը երկու սոցիալական սիստեմների, մաոյական «տեսաբանները» փորձում են ներկայացնել որպես, իբր, պետությունները իրենց «վերդասակարգային» շահերով խմբերի, «աշխարհների» բաժանելու՝ մարքսիստական մեթոդոլոգիայից բխող տարբերակ։ Նրանք ամեն կերպ սքողում են մեր դարաշրջանի հիմնական դասակարգային հակասությունը՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև եղած հակասությունը, բանն այնպես են ներկայացնում, թե, իբր, Վ. Ի. Լենինը աշխարհի պառակտումը երկու սիստեմների ամենևին չէր համարում նորագույն ժամանակի համաշխարհային զարգացման որոշիչ գործոն։ Վկայակոչելով նրա այն խոսքերը, որ «այժմ աշխարհում երկու աշխարհ կա—հինը՝ կապիտալիզմը..., և աճող նոր աշխարհը...» (Երկեր, հ. 33, էջ 164), և անցողակի նկատելով, որ այդ բնորոշումը, «իհարկե, արտացոլում է նոր հիմնական հակասությունը, որն աշխարհում առաջացել է Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո», նրանք իսկույն ևեթ հայտարարում են, որպես թե Լենինը երբեք չի համարել, որ, իբր, աշխարհում ուրիշ հիմնական հակասություններ չկան։ Խաբեբայական արարքն այստեղ պահանջվեց արդի աշխարհի բազմաթիվ հիմնական հակասությունների վերաբերյալ մաոյական հին գաղափարիկն անցկացնելու համար, որպեսզի բոլոր հակասությունները դասեն մի շարքում, իսկ հետո դրանք հանգեցնեն այն բանին, որը ձեռնտու է Պեկինի ստրատեգներին։*

*Մարքսիստները բոլոր երևույթներում միշտ միանգամայն հստակորեն առանձնացրել և առանձնացնում են մեկ հիմնական հակասություն՝ տվյալ երևույթին հատուկ հակասությունների ամբողջության մեջ։ Այդ հակասությունն առանձնացնելը կարևոր է հենց այն պատճառով, որ այն արտահայտում է երևույթի բուն էությունը։ Միանգամայն պարզ է, որ արդի դարաշրջանի հակասություններից ոչ մեկը, բացի հիմնականից, այսինքն՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև եղած հակասությունից, չի արտահայտում համաշխարհային զարգացման գլխավոր ուղղությունը, այն, որ մեր դարաշրջանը համաշխարհային մասշտաբով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջան է։*

*Իսկ մաոյականները շեշտը դնում են ամենքին ու ամեն ինչ «գերտերությունների հեգեմոնիզմին» հակադրելու վրա։ Պնդելով, որ, իբր, «երեք աշխարհների տեսությունը» և՛ սկզբունքով, և՛ մանրամասներով համապատասխանում է մարդկային հասարակության զարգացման վերլուծության նկատմամբ դիալեկտիկամատերիալիստական մոտեցման պահանջներին, նրանք դիմում են Մարքսի, Էնգելսի, Լենինի՝ կոնտեքստից պոկված դրույթների մեջբերման, խեղաթյուրում են գիտական կոմունիզմի հիմնադիրների միտքը։ Մասնավորապես, պատահական չէ, որ նրանք «աչքաթող են արել» Լենինի կարևորագույն մեթոդոլոգիական ցուցումը, որը պարունակվում է Կոմունիստական Ինտերնացիոնալի II կոնգրեսում տրված «Ազգային և գաղութային հարցերի հանձնաժողովի զեկուցում»։*

*Հենց այդ զեկուցման մեջ նշված է դարաշրջանի հիմնական հակասությունը, որն սկսվել է 1917 թվականի հոկտեմբերից հետո, և հեղափոխական պայքարի ամեն մի հարց, քաղաքական ամեն մի հարց հենց այդ հակասության տեսանկյունից դիտելու անհրաժեշտությունը։ «... Ժամանակակից համաշխարհային դրության պայմաններում, իմպերիալիստական պատերազմից հետո, ժողովուրդների փոխադարձ հարաբերությունները, պետությունների ամբողջ համաշխարհային սիստեմը որոշվում է իմպերիալիստական ազգերի փոքրաթիվ խմբի՝ պայքարով՝ ընդդեմ սովետական շարժման ու սովետական պետությունների, որոնց գլխավորում է Սովետական Ռուսաստանը։ Եթե դա մենք աչքաթող անենք, ապա չենք կարող ոչ մի ազգային կամ գաղութային հարց ճիշտ դնել, եթե անգամ խոսքը վերաբերեր աշխարհի ամենահեռավոր անկյունին։ Այս տեսակետից ելնելով միայն, կոմունիստական կուսակցությունները կարող են ճիշտ դնել ու լուծել քաղաքական հարցերը ինչպես քաղաքակրթված, այնպես էլ հետամնաց երկրներում»* (Երկեր, *հ. 31, էջ 290)։*

*Այս սկզբունքային մեթոդոլոգիական դրույթը կոնկրետ կիրառելով Արև-*



*ելքի ժողովուրդների հեղափոխական շարժման հարցերի նկատմամբ, Լենինը կանխագուշակել էր այն, ինչ իրականություն է դարձել մեր օրերում, երբ ընդհանրապես ոչնչացվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմը՝ իր կլասիկ ձևերով։ Այդ շարժումը, ասում էր Լենինը, կարող է հաջող զարգացում ստանալ «ոչ այլ կերպ, քան անմիջականորեն կապվելով մեր սովետական հանրապետության հեղափոխական պայքարի հետ՝ ընդդեմ միջազգային իմպերիալիզմի»* (Երկեր, *հ. 30, էջ 174)։*

*Պեկինի «տեսաբանները», խեղաթյուրելով մարքսիզմ-լենինիզմը, դիմում են ուղղակի կեղծիքների, խարդախումների և ննգափոխումների, որպեսզի այդ ճանապարհով թաքցնեն իրենց հակահեղափոխական պլատֆորմը։ Այդ խեղաթյուրումները նրանց անհրաժեշտ եղան, մասնավորապես, նրա համար, որ մարքսիզմ-լենինիզմի հեղինակությամբ ամրապնդեն իրենց այն թեզիսի «գիտական բնույթը», որ ամբողջ համաշխարհային զարգացումը, ողջ դասակարգային պայքարն արդի դարաշրջանում, իբր, որոշվում է «երկու գերտերությունների հեգեմոնիզմի» դեմ մղվող պայքարով և որ, իբրև հիմնական ուժ, այստեղ հանդես է գալիս պետությունների «ամենալայն ճակատը»՝ «սոցիալիստական և զարգացող Չինաստանից» մինչև ՆԱՏՕ-ի ագրեսիվ իմպերիալիստական բլոկի անդամ երկրները և Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ռեակցիոն վարչակարգերը։ Ընդ որում, ակնհայտորեն շեղվելով մեր ժամանակի բազմաթիվ հիմնական հակասությունների՝ իրենց սեփական դիրքից, «հեգեմոնիզմի և հակահեգեմոնիզմի» հակամարտությունը որակում են որպես համաշխարհային զարգացման առանցք, այսինքն՝ որպես միակ հիմնական հակասություն։*

*Սքողելով պրոլետարիատի և բուրժուազիայի միջև եղած դասակարգային հակասությունները, կոչ անելով դասակարգային պայքարի հարցերը դնել և լուծել «հեգեմոնիզմի» դեմ մղվող պայքարի տեսակետից, այսինքն՝ գլխավորապես հակասովետիզմի, հակակոմունիզմի տեսակետից, մաոյականները իմպերիալիստական պետությունների բանվոր դասակարգից, նրա քաղաքական կուսակցություններից պահանջում են՝ ըստ ամենայնի աջակցություն ցույց տալ ագրեսիվ շրջաններին և «դասակարգային պայքարի» ձևով ձգտել, որ սեփական երկրների կառավարությունները հրաժարվեն միջազգային լարվածությունը թուլացնելու կուրսից։*

*Ուշագրավ է այն փաստը, որ մաոյականները որպես պետությունների «սահմանազատման» չափանիշ առաջ են քաշում երկրները և ժողովուրդները, դասակարգերն ու մարդկանց՝ «մենք», «բարեկամներ» և «թշնամիներ» սկզբունքով բաժանելու մաոյական հին թեզիսը։ Վկայակոչելով «միջազգային դասակարգային պայքարում «իրադրության» բարդությունն ու փոփոխականությունը», նրանք հայտարարում են, որ «անհնար է մեկընդմիշտ սահմանել աշխարհի քաղաքական ուժերի սահմանազատման հավիտենական ու անփոփոխ բանաձև (այսինքն՝ միջազգային դասակարգային պայքարում թշնամիների, բարեկամների և մեզ սահմանազատելու բանաձև)»։ «Դոգմատիզմի» դեմ պայքարելու պատրվակով նրանք մերժում են աշխարհի քաղաքական ուժերի սահմանազատման դասակարգային չափանիշները, դրանք նենգափոխում վերը բերված սուբյեկտիվիստական բանաձևով։ Հենց թաքնվելով այդ բանաձևի ներքո, մաոյականները «դասակարգային պայքար» սանձազերծեցին բուն Չինաստանում, «կուլտուրական հեղափոխության» անվան տակ իրականացնելով հակահեղափոխական հեղաշրջում։ Նույն այդ քողի տակ էլ նրանք «երեք աշխարհների տեսության» մեջ կատարեցին երկրների ու ժողովուրդների համապատասխան «դասակարգում»՝ ի հուճույս միջազգային ասպարեզում իրենց ունեցած հեգեմոնիստական մտադրությունների։ Զարմանալի չէ, որ Պեկինի «բարեկամների» թվում հայտնվեցին նեոգաղութատերեր, իմպերիալիստական տերությունների ռազմաարդյունաբերական կոմպլեքսների պարագլուխներ, ՆԱՏՕ-ի գեներալներ, ֆաշիստներ, ռևանշիստներ, ամերիկյան «գիշատիչներ», բոլոր գույների ու երանգների հակասովետական տարրեր։*

*Մաոյականները այստեղ ևս սրբապղծություն են անում։ Սովետական Միության՝ որպես ամբողջ աշխարհի «№ 1 թշնամու» մասին իրենց թեզիսը նրանք*

նույնպես փորձում են ամրապնդել՝ վկայակոչելով Մարքսի, Էնգելսի և Լենինի այն աշխատությունները, որոնք վերաբերում են XIX դարի եվրոպական գործերում ցարիզմի կատարած դերի գնահատմանը։ Միտումնավոր կերպով համապատասխան ցիտատների ընտրություն կատարելով, նրանք ձգտում են այն տպավորությունն ստեղծել, թե, իբր, ՍՍՀՄ-ը շարունակում է իրականացնել այն քաղաքականությունը, որ վարում էր ցարական Ռուսաստանը։

Մաոյական «երեք աշխարհների կոնցեպցիան», որը առաջին հայացքից հանդես է գալիս որպես ռեակցիայի, ագրեսիայի և պատերազմի միջազգային ուժերի նկատմամբ Պեկինի քաղաքական և գաղափարական ղեկավարության հիմնավորում, իրականում ընդամենը միայն այն թզենու տերևն է, որը ծածկում է չինական ղեկավարության դիրքի փաստական պրոիմպերիալիզմը։ Մաոյականության և իմպերիալիզմի հակահեղափոխական նպատակների համընկնումը նրանց ամենևին հավասար պարտնյորներ չի դարձնում։ Մաոյականների պատվախնդրությունը ևս ուժերով նրանց չի հավասարեցնում իմպերիալիզմի հետ։ Վերջինս եղել է ու մնում է որպես սոցիալիզմի առավել հզոր հակառակորդ։ Իմպերիալիզմի շուրջը խմբավորվում, նրա վրա են հենվում մնացած բոլոր հակակոմունիստական ուժերը։ Բացառություն չեն կազմում նաև Պեկինի գործիչները։

Ոչ մեկի համար գաղտնիք չէ, որ մաոյականները դեռևս հույս են տածում արագացնել ժամանակակից ռազմարդյունաբերական պոտենցիալի ստեղծումը Արևմուտքի ողորմությունների օգնությամբ։ Ոչ մեկի համար գաղտնիք չէ նաև, որ ոչ թե իմպերիալիստներն են կանգնել մաոյականության դիրքերի վրա, այլ վերջինս է ամբողջովին համերաշխվել Արևմուտքի առավել անզուսպ հակակոմունիստական շրջանների պլատֆորմի հետ։ Ոչ մեկի համար գաղտնիք չէ, վերջապես, որ Արևմուտքն առայժմ այնքան էլ առատորեն չի վարձատրել Պեկինի հակասովետական ջերմեռանդությանը։

Պեկինի պարագլուխների՝ «երեք աշխարհների կոնցեպցիայի» նորագույն մեկնաբանման կապակցությամբ հաճոյակատարությունը մոնոպոլիստական բուրժուազիայի առջև այնքան հստակորեն է դրսևորվել նրանց գաղափարախոսության և քաղաքականության մեջ, որ դա քննադատություն առաջացրեց մաոյականության արտասահմանյան կողմնակիցների, այդ թվում և Ալբանիայի ղեկավարների կողմից։ «Նախագահ Մաո Ցզե-դունի տեսությունը երեք աշխարհների բաժանման մասին» Տիրանայում գնահատվում է որպես «ամերիկյան իմպերիալիզմի գլխավորած իմպերիալիզմի, միջազգային բուրժուազիայի և ռեակցիայի շահերի» պաշտպանության կոնցեպցիա, որպես դավաճանների, ռենեգատների, նոր օպորտունիստների պլատֆորմ, որոնց թեզիսները «ինչպես ջրի երկու կաթիլ նման են II ինտերնացիոնալի սոցիալ-շովինիստների թեզիսներին»։ «Զերի ի պոպուլլիտ» թերթը այդ կոնցեպցիայի կողմնակիցներին ուղղակի մեղադրում է այն բանում, որ նրանք պատերազմի սպառնալիքը չարաշահում են իմպերիալիզմի առջև իրենց կապիտուլյացիան և նրա հետ համաձայնողականությունը արդարացնելու համար, բարձրացնում հակահեղափոխության դրոշը։

Դեպի իմպերիալիզմ չինական ղեկավարության թեքումն ընդունում է չափազանց վտանգավոր բնույթ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործի համար։ Այդ վտանգը եևնում է ամենից առաջ այն բանից, որ պատերազմի ու ռեակցիայի ուժերն իրենց գործակիցներ են գտել հանձինս Մաոյի ժառանգորդների։ Վերջինները ոչ միայն եռանդով հանդես են գալիս միջազգային լարվածության թուլացման դեմ, այլև գործնականորեն օգնում են իմպերիալիզմին՝ ազգային և սոցիալական ազատագրության ուժերի դեմ նրա ծավալած գործողություններում։ Ավելի ու ավելի հաճախակի դրսևորվող այդ վտանգը առավել հրամայական է դարձնում կոմունիստների, խաղաղության և մարդկության առաջադիմության բախտը, ժողովուրդների ազատությունն ու անկախությունը բարձր գնահատող բոլոր մարդկանց պայքարը մաոյականության՝ որպես իմպերիալիզմի ռեզերվի, գաղափարախոսության և քաղաքականության դեմ։

«Коммунист» № 5, 1978.

---

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ԼԵՆԻՆԻ ՔՈՒՅՐՆ ՈՒ ԶԻՆԱԿԻՑԸ

ԱՆՑՅԱԼ ԴԱՐԻ վաթսունական թվականներն էին։ Ողջ Ռուսաստանում մոլեգնում էին խռովությունները ու ապստամբությունները, հնչում էր Չերնիշևսկու ազատականչ ձայնը, Գերցենի «Колокол»-ն արթնացնում էր ժողովրդի ինքնագիտակցությունը, ըմբոստ ոգին... Ցարը վախեցած մանիֆեստ արձակեց. մանիֆեստ, որով մեռածներին արտոնվեց ազատություն, իսկ ողջերին՝ բանտ։

Այդ տարիներին Պենզայում իր մանկավարժական գործունեությունն էր սկսում Լոբաչևսկու լավագույն աշակերտներից մեկը՝ ֆիզիկայի ավագ դասախոս Իլյա Նիկոլաևիչ Ուլյանովը։ Այստեղ նա հանդիպեց Մարիային՝ ներքին մեծ կուլտուրայի տեր, երաժշտասեր, բարի, գործունյա... հոր Անտիգոնեն էր Մաշենկան։

Պենզայում, բարձրադիր մի սարի վրա, այժմ փռված է քաղաքի հանգստի ու կուլտուրայի պարկը, որտեղ վեր է բարձրանում Իլյա Նիկոլաևիչի անվան աստղադիտարանի աշտարակը։ Այդ սարի վրա Իլյա Նիկոլաևիչը սեր խոստովանեց իր ընտրյալ Մարիին։

Ստեղծվեց Ուլյանովների ընտանիքը։ Իմ առջև է այդ ընտանիքի լուսանկարը՝ ձվաձև շրջանակում։ Ահա նրանք՝ Մարիա Ալեքսանդրովնան և Իլյա Նիկոլաևիչը՝ երեխաներով. կանգնած են վաղամեռիկ Օլգան, շիկահեր, գեղեցիկ Սաշան և առաջնեկը՝ Աննան։ Ձեռքերը հենած հոր ծնկներին, նստած են, աջից՝ Վոլոդյան, ձախից՝ Դմիտրին։ Մարիա Ալեքսանդրովնայի գրկին մեկամյա Մանյաշան է՝ կրտսերը—վեցերորդը։

Խաղաղ, լուսավորչական-կուլտուրական աշխատանքին էր ամբողջովին նվիրված առաջադեմ գաղափարներով համակված ժողովրդական ուսուցիչը. Նա ժողովրդին էր հասցնում գիտության լույսը և հույս ուներ, որ այդ լույսն է փրկության ճանապարհը։

Երեխաները մեծանում էին՝ ժամանակի առաջադեմ գաղափարներով համակված։ Նրանց հոգին լի էր ատելությամբ բռնության, շահագործման դեմ, սիրով՝ տառապող ժողովրդի նկատմամբ։

Ալեքսանդրն ընտրեց պայքարի ուղին և...

Վոլոդյան առանձնում էր... ուշի-ուշով նա զննում էր, թափանցում ժամանակի իրադարձությունների խորքը՝ հասկանալու այդ ամենի էությունը, ուղիներ, ելք որոնելու... Հոր ճանապարհը տարավ դեպի փակուղի։ Իլյա Նիկոլաևիչը տեսավ իր գաղափարների խորտա-

պատակին է ծառայում լենինյան «Искра»-ն, որի անխոնջ գործակալներից է դառնում Մարիա Իլյինիչնան, որ այդ ժամանակ աքսորված էր Սամարա. 1902 թ. այդտեղ տեղի է ունենում «Իսկրա»-ի աշխատողների համագումարը. «Իսկրա»-ի ռուսական կազմակերպության նորընտիր կենտրոնական բյուրոյի անդամ է ընտրվում Մարիա Իլյինիչնան: Բոլշևիկյան լրագրի ստեղծման առաջին իսկ օրից նա եղել է դրա ամենաակտիվ աշխատակիցը, մշտապես, բոլոր հանգամանքներում վառ է պահել, բորբոքել այն կայծը, որից հետագայում պիտի բռնկվեր բոցն ու տարածվեր ողջ Ռուսաստանով մեկ: Նա կապ է հաստատում հեղինակների հետ, տարածում թերթը, կազմում թղթակցություններ, կատարում Իլյիչի բոլոր պատվերներն ու խնդրանքները: Նրա նամակներն ուշանում են. Իլյիչն անհանգիստ է.

«Թանկագին Մանյաշա,— գրում է նա 1909 թ. ապրիլին,— հուսով եմ, հիմա արդեն ինքդ կարող ես կարդալ և համարյա առողջ ես: Անասելի երկար ձգձգվեց հիվանդությունդ: Բայց գլխավորն այն է, որ չկրկնվի: Այդ հիվանդությունից հետո ամենավտանգավորը հոգնությունը և նյարդային հուզմունքն է... երբ լրիվ առողջ կլինես, խզբզիր ինձ մի երկու խոսք...

Ամուր գրկում եմ և ցանկանում լավ առողջանալ:

Քո Վ. Ուլյանով»

Հաջորդ նամակով խնդրում է անպայման գալ Ժնև. «Միասին կզբոսնենք: Ճիշտ չէ՞: Շատ լավ կլինի, եթե մայրիկը նույնպես կարողանա գալ: ... Եկե՛ք»:

Մանյաշան հիվանդ է, հոգնած... Եվ մեկնում է եղբոր մոտ: Առողջանալուց հետո Փարիզում քննություններ է հանձնում և ստանում ֆրանսերենի ուսուցչուհու իրավունք: Նա շտապում է Ռուսաստան, Մոսկվա՝ նետվելու հեղափոխական գործունեության բուռն ասպարեզը: Դժվար է բաժանվել Նադյայից, Ելենա Վասիլևնայից... «Ամենից շատ ափսոսում եմ բաժանվել Վոլոդյայից,— գրում է նա քրոջը՝ Աննային,— նրան ես միշտ սիրել եմ: Բայց հիմա, հատկապես, ինչ-որ շատ ենք ընտելացել: Հիվանդության ժամանակ սաստիկ շատ է զբաղվել ինձնով. ես պատկերացնել իսկ չէի կարող, թե նա ընդունակ է դրան»:

Մարիան կրկին Մոսկվայում է, ապա մեկնում է Սարատով, որտեղ բոլշևիկյան կազմակերպությունը գրեթե կազմալուծվել էր: Մեծ եռանդով նա ձեռնամուխ է լինում այդ կազմակերպության վերականգնմանը: Մարիա Իլյինիչնայի գլխավորությամբ այն շուտով դառնում է Ռուսաստանի ամենախոշոր ու ակտիվ կազմակերպություններից մեկը:

Հոգեկան ու ֆիզիկական ուժերի գերագույն լարում պահանջող աշխատանք, անդուլ պայքար, խուզարկություններ, բանտարկություն, տարագրություն... Այս անգամ աքսոր 3 տարով՝ Վոլոգդայի նահանգը: Բայց այստեղ ևս նա հանգիստ մնալ չի կարող. այս անգամ նրա բոլշևիկյան գործունեության ասպարեզը երկաթուղայինների շրջանն է:

Վոլոգդա, աքսկա մոտ է գալիս Մարիա Ալեքսանդրովնան: Կրակովից, Պորոնինից Վոլոգդա են թռչում Իլյիչի նամակները՝ Նադյայի և նրա մոր՝ Ելենա Վասիլևնայի ջերմ բարևներով:

Կուսակցության՝ Պետերբուրգի կոմիտեի, Վասիլեօստրովյան կոմիտեի քարտուղարն էր Մարիա Իլյինիչնան ռուսական առաջին հեղափոխության ժամանակ: Իսկ երբ Իլյիչը գալիս է Ռուսաստան, նա օգնում է եղբորը կազմակերպական բոլոր գործերում: Միաժամանակ Իլյիչի հանձնարարությամբ նա թարգմանում է Կ. Մարքսի նամակները Լ. Կուգելմանին և Ֆ. Զորգեին, որ լույս են տեսնում Լենինի փայլուն առաջաբանով:

Իլյիչը Ցյուրիխում է և փետրվարյան հեղափոխության մասին իմանում է դրանից մի քանի օր անց: Արտասահմանյան թերթերը հայտնում էին, որ Պետրոգրադում հաղթանակել է հեղափոխությունը, պետական դումայի անդամները կազմել են Ժամանակավոր կոմիտե, ցարական մինիստրները ձերբակալված են: Պետրոգրադում կազմակերպված է բանվորական ու զինվորական դեպուտատների խորհուրդ: Գահընկեց է եղել Ռոմանովների կայսրությունը: Մարտի 5-ին, երեքամյա հարկադիր լռությունից հետո, վերստին հընչում է բոլշևիկյան կենտրոնական օրգան «Պրավդա»-ի խրոխտ ձայնը: Մարիա Իլյինիչնան մտնում է «Պրավդայի» խմբագրության կազմի մեջ, դառնում նրա քարտուղարը: Տասներկու տարի շարունակ, մինչև 1929 թվականը, լրագրի անընդմեջ պատասխանատու քարտուղարը, կազմակերպական, ստեղծագործական աշխատանքների եռանդուն կազմակերպիչն է նա, «Պրավդա»-ի ոգին:

«Ընկե՛ր բանվորները, ընկե՛ր զինվորները, ընկե՛ր գյուղացիները,— ազդարարում է վերածնված լրագրի առաջնորդողը,— բոլոր նրանք, ովքեր կարդացել ու պաշտպանել են «Պրավդան», այն կդիմավորեն որպես հին բարեկամի»: Խմբագրության անդամներ Վ. Մ. Մոլոտովի, Մ. Ի. Կալինինի, Կ. Ս. Երեմեևի, Մ. Ս. Օլմինսկու հետ միասին Մարիա Իլյինիչնան ամեն ինչ անում է բոլշևիկյան այդ ղեկավար օրգանը մասսաների լավագույն կազմակերպիչը դարձնելու համար: Հեռվից «Պրավդա»-ն ղեկավարում էր Վլադիմիր Իլյիչը:

Ռուս բոլշևիկ էմիգրանտներին ամբողջովին համակել էր մի միտք—գալ, ինչ գնով էլ լինի մեկնել Ռուսաստան: Իլյիչը «Պրավդա»-ին է ուղարկում իր «Նամակներ հեռվից»-ը: Առաջին նամակում Լենինը խոր հեռատեսությամբ գրում է, որ Միլյուկովի, Կերենսկու կեղծ ու պատիր ճառերին չպետք է հավատա Ռուսաստանի պրոլետարիատը. նրա դաշնակիցներն են Ռուսաստանի բնակչության մեծամասնությունը և ամբողջ աշխարհի պրոլետարիատը:

«Պրավդա»-ի էջերում այդ տարիներին տպագրվում են Իլյիչի 170 հոդվածները, նշանավոր **Ապրիլյան թեզիսները,** նրա ելույթները, որոնք զինում էին աշխատավորներին սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարի ծրագրով, համախմբում բանվոր դասակարգին կոմունիստական կուսակցության շուրջը:

***

Ռուսաստանը նման էր ժայթքելու պատրաստ հրաբխի. Իլյիչը Ցյուրիխից գրում էր. «Ինչպիսի՜ տանջանք է մեզ բոլորիս համար այսպիսի ժամանակ նստել այստեղ»:

1917 թվականի մարտի 27-ին (ապրիլի 9-ին) Ցյուրիխից դուրս եկավ և դեպի Պետրոգրադ ուղղվեց տարագիրներին բերող առաջին գնացքը: Հուլիսյան օրեր, ընդհատակ, բանտ, տարագրություն, հիվանդություններ...

Ռուսաստանում հաղթանակում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Կարճատև ժամանակավոր կառավարության օրոք բազում անուններ փոխած «Պրավդա»-ն հեղափոխությունից հետո կրկին վերստացավ իր անունը և սկսեց լույս տեսնել որպես ՌՍԴ(բ)Կ Կենտկոմի օրգան, ինչպես միշտ մասսաների շրջանում տարածելով ճշմարտությունն ու լույսը, սովորեցնելով հաղթահարել դժվարությունները, բացահայտել ու մերկացնել ներքին ու արտաքին թըշնամիների դավերը, ապրել ու կառուցել...

Առանց մասսաների լայն մասնակցության՝ մամուլը մեռյալ է, գտնում էր Մարիա Իլյինիչնան: Ինքը՝ ժողովուրդը, բանվորներն ու գյուղացիները պետք է լինեն իրենց թերթի թղթակիցները, հեղինակները: Եվ նա դառնում է բանգյուղթղթակցական շարժման կազմակերպիչն ու ոգեշնչողը: Նրա նախաձեռնությամբ 1924 թ. լույս է տեսնում «Բանվոր-թղթակից» երկշաբաթյա ժուռնալը, որը 1925-ից մինչև 1941 թվականը լույս է տեսնում «Բանգյուղթղթակից» անունով: Մարիա Իլյինիչնան սովորեցնում էր աշխատել սրտով, ավյունով, որպեսզի աշխատավորները մշտապես զգան, որ «Պրավդա»-ն իրենց թերթն է, սրտամոտ բարեկամն ու խորհրդատուն: Մի քանի օտար լեզուների հմուտ գիտակը Լենինի պես անսահման սիրում էր մայրենի լեզուն, անողոք պայքարում դրա անաղարտության համար: Խմբագրական աշխատանքում ամենից շատ նրան զայրացնում էին անփութությունը, հոդվածի անորակ մշակումը: Խմբագրական կյանքում աշխատանքի լենինյան ոճի, նորմերի մարմնացումն էր Մարիա Իլյինիչնան, որն իր վտիտ ուսերին էր կրում խմբագրության աշխատանքի ծանրագույն բեռը: Զուր չի անցնում նրա անդուլ, մեղվաջան աշխատանքը: 1927 թվականին «Պրավդա»-ի բանգյուղթղթակիցների թիվը հասնում է չորս հարյուր հազարի: Գրում են երկրի տարբեր ծայրերից. գրում են իրենց հետաքրքրող, հուզող հրատապ հարցերի մասին... ««Պրավդա»-ին, բանգյուղթղթակցական աննախընթաց շարժման զարգացմանն ու ծավալմանը նվիրված տարիները,— գրել է Վ. Ա. Կարպինսկին,— հիանալի բոլշևիկ Մարիա Իլյինիչնայի գլխավոր սխրանքն են»:

Այդ տարիներին առավել չափով է բացահայտվում նրա ժուռնալիստական մեծ տաղանդը: «Պրավդա»-ի խմբագրությունում նա աշխատում էր գիշեր-ցերեկ, խմբագրում էր, նյութեր պատվիրում, նամակներին պատասխանում, հերթապահում: Գրող Դմիտրի Զորինը, ակադեմիկոս Բ. Կեդրովը (որ այն ժամանակ թերթի տեխնիկական քարտուղարն էր), Ն. Պոգոդինը և ուրիշներ ջերմ սիրով են հիշում իրենց աշխատանքային տարիները՝ տաղանդավոր կազմակերպչի, բազմակողմանի զարգացած ժուռնալիստի, սրտացավ ու հոգատար, խստապահանջ ընկերոջ ղեկավարությամբ: **«Պրավդա»-ի քարտուղարը—Մ. Ի. Ուլյանովան** ժողովածուում համակողմանի վերհանված է հեղափոխության անխոնջ, հաստատակամ ու հետևողական, եռանդուն, բայց միշտ համեստ գործչի արգասալի գործունեությունը, որն այսօր ևս լավագույն օրինակ կարող է լինել մեր մամուլի աշխատողների, պետական ու հասարակական բոլոր գործիչների համար:

... Ծանր հիվանդ է պրոլետարիատի մեծ առաջնորդը, սոցիալիստական առաջին երկրի հիմնադիրը՝ Մանյաշայի ամենասիրելի Վոլոդյան: Եվ այդ ժամանակ միայն ընդհատվում է նրա աշխատանքը:

Թերևս տակավին ոչ-ոք չի ունեցել այնպիսի հոգատար ու քնքուշ հիվանդապահուհիներ, ինչպիսին Վլադիմիր Իլյիչը՝ հանձին Նադեժդա Կոնստանտինովնայի և Մարիա Իլյինիչնայի: Բայց ծանր, անհանգիստ, փոթորկահույզ հեղափոխական գործունեությունը, լարված գերմարդկային աշխատանքը, նենգ մահափորձն անողոքաբար կարճել էին առաջնորդի կյանքը: Երկիրը, որ դեռ նորնոր էր ոտքի կանգնում՝ առնանալու, հարըստանալու, շատ անժամանակ զրկվեց իր նավավարից: Ամենուր, ամեն ինչում այնպե՜ս զգալի էր նրա իմաստուն խոսքի, ակտիվ, գործնական միջամտության կարիքը: Իսկ նա չկար... Բայց պետք էր ապրել, շարունակել նրա գործը:

Եվ նա շարունակում է գործել... Դժվար էր առանց նրա և պետք էր ապրել միշտ նրա հետ... Մարիան՝ բոլոր երկրների պրոլետարների մեծ առաջնորդի ամենահարազատ մարդկանցից մեկը, կատարում է պարտքը իր երկրի, աշխարհի աշխատավորների հանդեպ: Նրա հիշողությունները եղբոր՝ Լենինի մասին, Վ. Ի. Լենինին նվիրված հուշագրությունների ամենաբովանդակալից ու մեծարժեք գանձերից են. փաստական հարուստ նյութի, անմիջական տպավորությունների միջոցով նա կերտել է ամենամարդկային մարդու հմայիչ, հարազատ կերպարը:

Արժանավոր եղբոր արժանավոր քույրն էր Մարիա Իլյինիչնան: Սովետական մարդիկ երախտապարտ են նրան՝ անաղարտ պահելու համար մեծ Լենինի կերպարը: Նա սիստեմավորեց և կազմեց, տպագրության պատրաստեց Իլյիչի նամակները հարազատներին: Ուլյանովների ընտանիքի կրտսերը դարձավ այդ ընտանիքի լավագույն տարեգիրը. նրա գրչին են պատկանում և **Վլադիմիր Իլյիչ Լենինի հայրը՝ Իլյա Նիկոլաևիչ Ուլյանովը** գիրքը, **Վլադիմիր Իլյիչ Լենինի մայրը՝ Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովան** կենսագրական ակնարկը, **Ալեքսանդր Իլյիչ Ուլյանովի հիշատակին** հոդվածը և շատ այլ գործեր: Իսկ իր նամակներից հառնում է գաղափարական հեղափոխականի, բոլշևիկի, մեծ մտավորականի ու մարդու հմայիչ կերպարը:

Մարիա Իլյինիչնան եղել է ՀամԿ(բ)Կ VI, XIII, XVII համագումարների պատգամավոր, ՀամԿ(բ)Կ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի անդամ, կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի նախագահության անդամ, բանվորագյուղացիական տեսչության ժողովրդական կոմիսարիատի կոլեգիայի անդամ: 1932 թ. ղեկավարել է ՍՍՀՄ և ՌՍՖՍՀ բանվորագյուղացիական տեսչության ժողկոմատի՝ բողոքների միացյալ բյուրոն, XVII համագումարում ընտրվել ՍՍՀՄ ժողկոմխորհին կից սովետական վերահսկողության հանձնաժողովի անդամ: 1933 թվականին նա պարգևատրվում է Լենինի շքանշանով. 1935-ին ընտրվում է ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամ:

Անխոնջ աշխատավոր, բյուրեղյա մաքրությամբ մարդ էր նա, հոգեկան ազնվության, սրտացավության մարմնացում, նա երբեք չի խնայել իր ուժերը հանուն հեղափոխության, կուսակցության գործի. նրա ողջ կյանքը եղել է նվիրում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերին: Ո՛ւր էլ եղել է, ինչպիսի՛ հասարակական ու պաշտոնական դիրքում, միշտ էլ ընդօրինակել է սիրելի եղբորը, շարունակել խորհրդակցել նրա հետ, անընդհատ կարդալով նրա գործերը, նրա նման անաչառ պայքարելով ամեն տեսակ թերությունների, մարդկային արատների դեմ, միշտ խրախուսելով լավը, առաջադիմականը, հասարակության առաջընթացին խթանողը: Բայց և միշտ մնացել է նույն հոգատար ու մարդամոտ, ամենքին հասնող ու փոքր-ինչ ամաչկոտ Մանյաշան:

1937 թ. հունիսի 12: Մոսկվայի կուսկազմակերպության կոնֆերանսն էր: Կարևոր գործով պետք է դուրս գար Մարիա Իլյինիչնան և դիմեց կողքին նստած Ելենա Ստասովային.

— Խնդրում եմ, այսօր տուն ուղեկցեք Նադյային, ես անհետաձգելի գործ ունեմ:

Ու գնաց իր աշխատասենյակը: Սկսվեց սոսկալի գլխացավի նոպան. անցավ, բայց նորից կրկնվեց ու... հենց աշխատասենյակում, արյան զեղումից վախճանվեց Ուլյանովների ընտանիքի հիանալի կանանցից մեկը՝ Մարիա Իլյինիչնա Ուլյանովան:

«Մ. Ի. Ուլյանովայի կյանքը,— կարդում ենք «Պրավդա»-ի՝ հունիսի 13-ի համարում,— նրա նվիրվածությունը Լենինի կուսակցության գործին և զգայուն, հոգատար վերաբերմունքը աշխատավորների նկատմամբ, հանուն կոմունիզմի մղված անձնվեր պայքարի օրինակ են կուսակցական և անկուսակցական բազում բոլշևիկների համար»:

**ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ**

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՎԵՐԺ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԸ ՄԵԶ ՀԵՏ ԵՆ ՄԻՇՏ

**ՄՈՏԵՆՈՒՄ Է ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ** փոթորիկներում ծնված, դասակարգային գոտեմարտերում կոփված լենինյան կոմերիտմիության վաթսունամյակը: Հավատարիմ լենինյան պատգամներին՝ կոմերիտմիությունը միշտ էլ եղել է կոմունիստական կուսակցության վստահելի օգնականը, անձնվիրությամբ կատարել իր պարտքը սոցիալիստական հայրենիքի հանդեպ:

Պրոլետարական հեղափոխության այդ երիտասարդ ասպետները տարբեր ազգության, տարբեր տարիքի ու խավի մարդիկ են, որոնք, միաձույլ համախմբված Լենինի դրոշի ներքո, նվիրվել են աշխատավորության երջանկության համար մղվող պայքարին:

«Հայաստան» հրատարակչությունը թարգմանաբար լույս է ընծայել Կոմերիտական առաջամարտիկները[1] ժողովածուն. գրքի հերոսները նրանք են, որ քաղաքացիական պատերազմի թեժ տարիներին կոմերիտական մարտական ջոկատները գրոհի են տարել թշնամու դեմ՝ հանուն սովետների, սոցիալիստական շինարարության դժվարին ժամանակաշրջանում գլխավորել են երիտասարդական բրիգադները, ակտիվ մասնակցել ժողովրդական տնտեսության վերականգնմանը, կառուցել գործարաններ ու էլեկտրակայաններ, ջրանցքներ, վերափոխել գյուղը: Երիտասարդ բոլշևիկները միշտ աներեր պաշտպանել են կուսակցության լենինյան գիծը:

***

Ելիզավետա (Լիզա) Պիլաևային է նվիրված գրքի առաջին ակնարկը: Եղբոր՝ Գեորգիի, գաղափարական ազդեցությամբ նա դառնում է երիտասարդական առաջադիմական շարժման մասնակիցը, ապա Մարիա Իլյինիչնա Ուլյանովայի երաշխավորությամբ որդեգրվում բոլշևիկյան կուսակցությանը և ընդմիշտ նվիրվում պրոլետարիատի ազատագրման համար մղվող պայքարին: Լիզան տարածում է հեղափոխական գրականություն, թռուցիկներ փակցնում մայրաքաղաքի շենքերին... Լ. Պիլաևան, Ի. Սկորինկոն, Վ. Ալեքսեևը լինում են արդյունաբերական ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, կազմակերպում երիտասարդների ժողովներ ու հավաքներ, իրենց ոգեշունչ խոսքով կոչ անում պատանիներին ու աղջիկներին՝ ստեղծելու երիտասարդական սոցիալիստական միություն:

1917 թվականի օգոստոսին տեղի է ունենում սոցիալիստական բանվորական երիտասարդական միության Պետրոգրադի համաքաղաքային առաջին կոնֆերանսը, որի պատգամավորները Վ. Ի. Լենինին ուղղված կոչում հավաստիացնում են, որ պատրաստ են տապալված իշխանության փլատակների վրա կառուցելու նոր Ռուսաստան, պրոլետարական Ռուսաստանը:

Ակնարկի հեղինակներ Վ. Զուբկովը և Յու. Մեդվեդևը ներկայացրել են Լիզայի, նրա ամուսնու՝ Արևելյան, ապա Արևմտյան ռազմաճակատների հրահանգիչ Վլադիմիր Պավլովի, մասնակցությունը քաղաքացիական կռիվներին: Լիզան գործում է և՛ որպես բուժքույր, և՛ որպես ջոկատի քարտուղար: Իսկ երբ հարկ է լինում, զենքը ձեռքին մարտի է գնում թշնամու դեմ, անձնական քաջությամբ ոգեշնչում մարտական ընկերներին:

Քաղաքացիական պատերազմից հետո Լ. Պիլաևան ավարտում է բանֆակը, ստանալով տեխնիկական կրթություն և՝ առանց ընդունելության քննության բուհերն ընդունվելու արտոնություն. նա ակտիվ մասնակցում է երկրի ժողովրդական տնտեսության վերականգնմանը: Համառ պայքարն ու զրկանքները ծանր էին անդրադարձել Լիզայի առողջության վրա: 1926 թ. մարտի 18-ին դադարեց բաբախել

[1] Կոմերիտմիության առաջամարտիկները, «Հայաստան» հրատ., 1977 թ.:

կոմերիտմիության ազնիվ ու կռովի դստեր՝ Ելիզավետա Պիլենկայի սիրտը:

***

Զրկանքներով լի են եղել Բ. Ձնելաձեի մանկությունն ու պատանեկությունը: Փոքր տարիքում կորցնելով ծնողներին, նա եղբոր հետ թափառաշրջիկ կյանք է վարել Արևմտյան Վրաստանում, ծանր աշխատանքով վաստակել օրվա հացը: Տասնյոթ տարեկանում Բորիսը ՌՍԴԲԿ Թիֆլիսի կազմակերպության անդամ էր, կուսակցության հանձնարարությամբ ագիտացիոն աշխատանք էր տանում երիտասարդության շրջանում՝ նրանց բոլշևիկների շուրջը համախմբելու նպատակով: 1917 թվականի աշնանը Թիֆլիսում ստեղծվում է երիտասարդ-սոցիալիստ ինտերնացիոնալիստների «Սպարտակ» միությունը: Հետագայում նման կազմակերպություն է հիմնվում նաև Հայաստանում: Բ. Ձնելաձեն կրակոտ ելույթներ է ունենում երիտասարդության ժողովներում, բուռն բանավիճում մենշևիկների հետ, պրոպագանդում լենինյան գաղափարները:

Մենշևիկյան կառավարության որոշմամբ բանտարկում են Բորիսին, արտաքսում Վրաստանից: Բայց նա մշտապես հավատարիմ է իր քաղաքական դավանանքին. անցնում է ընդհատակ, աներեր շարունակում պայքարը: Երիտասարդ բոլշևիկն իր խիզախությամբ վայելում է ո՛չ միայն պատանիների ու աղջիկների, այլև ավագ ընկերների սերն ու համակրանքը: Այս առիթով ակնարկի հեղինակ Ի. Մուխաձեն տեղին է մեջ բերել Միխա Ցխակայայի խոսքերը. «Այդ զարմանալի պատանին՝ Բորիսը, 1918 թվականին իմ աչքի առաջ այնքան մեծացավ և առնականացավ, այնքան զարգացան նրա ընդունակությունները, որ նա մեր այն ժամանակ ձեռնարկած անլեգալ աշխատանքի բոլոր քաղաքական-կազմակերպական միջոցառումները հասկանում էր ապշեցուցիչ արագությամբ և արժանացել էր այնպիսի վստահության, ինչպես բազմամյա պայքարում կոփված հեղափոխականը»:

Կուսակցության հանձնարարությամբ Բ. Ձնելաձեն ծպտված, որպես հողաչափ Դնի Բախտաձե, Թիֆլիսից գնացքով հասնում է Բաքու, գտնում Սերգո Մարտիկյանի արհեստանոցը (Անդրկովկասի բոլշևիկների ընդհատակյա հանդիպման վայրը): Այստեղ Բորիսին սպասող Վիկտոր Նանեյշվիլին ու Միրզա Դավուդ Հուսեյնովը կասկածանքով են ընդունում անծանոթին: Բայց երբ Ձնելաձեն հանում է կեղծամը, թավ մորուքը, տանտերը հյուրին ընդունում է գրկաբաց ու վստահ: Ձնելաձեն նրանց հայտնում է իր գալու նպատակը:

«Սպարտակի» ողջ պատմությունն առնչվում է Բ. Ձնելաձեի գործունեության հետ: Նրա ղեկավարությամբ է տեղի ունենում Վրաստանի կոմերիտմիության համագումարը: Բորիսը մասնակցում է կոմերիտմիության համառուսաստանյան III համագումարին, լսում Վ. Ի. Լենինի ծրագրային ճառը: Ողջունելով համագումարին, նա Վրաստանի կոմունիստական երիտասարդության անունից հայտարարում է, որ հեռու չէ այն օրը, երբ այլևս չի լինի մենշևիկյան Վրաստանը, շուտով կհառնի սովետական կարմիր Վրաստանը:

Իրականանում է Վրաստանի կոմերիտմիության ստեղծողի ու ղեկավարի իղձը, շուտով Վրաստանում հաստատվում են սովետական կարգեր: Ընդհատակյա պայքարում կոփված և կազմակերպչական մեծ ձիրք ունեցող Բ. Ձնելաձեն նշանակվում է կուսակցության քաղաքային կոմիտեի երկրորդ քարտուղար, ՌԿԵՄ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի անդամ: Բայց անհետևանք չէին անցել մենշևիկյան բանտերում անցկացրած տարիները, և կարճատև եղավ նրա կյանքը: Բորիսը վախճանվեց քըսաներեք տարեկանում, թոքախտից:

Թբիլիսիի Կոմունարների այգում կանգնեցված հուշարձան-կոթողը հավերժացնում է Բ. Ձնելաձեի հիշատակը, որը ներշնչել է Եղիշե Չարենցին՝ գրելու այսպիսի տողեր.

Հոկտեմբերի հրդեհն իր բիբերում՝
Նա նայում է հեռուն,
Հեռուն,
Ուր ծագում է մի նոր, անեզրական արփի:
Նա կանգնել է հաստատ, այդ պատանին,—
Բրոնզապատ, որպես երիտասարդ տիտան.—

***

Թիֆլիսի հեղափոխական երիտասարդության ականավոր գործիչներից է եղել Ռաֆայել Խիտարովը (Խիտարյան): Նա ծնվել է ունևոր ընտանիքում, բայց աշակերտական նստարանից չի հանդուրժել անարդարությունը:

Հեղափոխական մկրտությունն ստացել է Թիֆլիսում: Ընդհատակյա աշխատանք, ձերբակալություններ, կարմիր գվարդիական ջոկատների կազմակերպում, ցույցեր... Վրաստանի մենշևիկյան կառավարության կողմից հետապնդվող Ռ. Խիտարովը փախչում է Գերմանիա, բանվորություն անում հանքահորերում: Այստեղ նա ակտիվ մասնակցում է Գերմանիայի երիտասարդական հեղափոխական շարժմանը, ապա ներգրավվում քաղաքական պայքարի ոլորտը:

Վտարանդիության մեջ հինգ ամիս մնալուց հետո Ռ. Խիտարովը լուր է ստանում, որ Վրաստանում հաստատվել են սովետական կարգեր, նորից վերադառնում է ծննդավայրը և ներգրավվում կոմերիտական ղեկավար աշխատանքներում: Թիֆլիսի քաղկոմի ագիտպրոպբաժնի վարիչն է նա, ապա՝ ՌԿԵՄ Երկրային կոմիտեի անդամը. գործունեության նոր, լայն ասպարեզ է բացվում Խիտարովի համար: Երիտասարդության կոմունիստական ինտերնացիոնալի գործկոմի որոշմամբ նա մեկնում է Գերմանիա՝ կոմերիտական ղեկավար աշխատանքի: Ռուդոլֆ Մարտին ծածկանվամբ նա սկզբում գործում է իբրև Գերմանիայի կոմերիտմիության Ռուրի պրոպագանդիստ, ապա ընտրվում Ռուրի և Հռենոսի մարզկոմի քարտուղար, հետո նշանակվում ԳԿԵՄ Կենտկոմի կազմբաժնի վարիչ:

Հինգ տարի Ռ. Մարտինը մնում է Գերմանիայում: Այդ տարիներին նա Գերմանիայի կոմերիտմիության ականավոր գործիչների՝ Ռիխարդ Հյուպտների, Հենրիխ Դյուտցի, Կոնրադ Բլենկի, Էրիխ Վիսների և այլոց հետ մեծ ջանքեր է գործադրում երիտասարդական շարժումը բոլշևիկյան հունով տանելու: Ամենուրեք Ռուդոլֆը վայելում է երիտասարդության սերն ու համակրանքը: Եվ երբ Ռ. Խիտարովը վերադառնում է Մոսկվա՝ երիտկոմինտերնի գործկոմում շարունակելու իր գործունեությունը, Գերմանիայի կոմերիտմիությունը նրան ընտրում է իր պատվավոր անդամը:

Քսանական թվականների վերջերին Չինաստանում տեղի էին ունենում փոթորկոտ իրադարձություններ: Ուխանը հայտարարվել էր հեղափոխական Չինաստանի մայրաքաղաք: ԵԿԻ գործկոմի որոշմամբ Ռ. Խիտարովը մեկնում է Չինաստան՝ «Ի. Գ. Ֆարբենինդուստրի» կոնցեռնի «ներկայացուցչի» վկայաթղթով: Սակայն ճանապարհին նա իմանում է, որ Չան Կայ-շին հակահեղափոխական հեղաշրջում է կատարել Շանհայում ու Նանկինում: Նանկինում կազմակերպվել էր աջ-գոմինդանական կառավարություն: Չնայած այդ ամենին, Խիտարովը գալիս է Չինաստան, կոմերիտական ժողովներում համակողմանի պարզաբանում կոմինտերնի քաղաքականությունը և իր միսիան հաջողությամբ ավարտելուց հետո վերադառնում Մոսկվա:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ Ռ. Խիտարովը փոխադրվում է կուսակցական աշխատանքի: Մագնիտոգորսկի մետալուրգիական կոմբինատի շինարարությունում կուսակցական-քաղաքական աշխատանքի ղեկավարման համար պարգևատրվում է Լենինի շքանշանով:

***

Գյուղական կոմերիտական աշխատողից մինչև ՀամԼԿԵՄ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ահա այն ուղին, որ անցել է Նիկոլայ Չապլինը: Կենսագրական այս ակնարկի հեղինակը ՀամԼԿԵՄ Կենտկոմի նախկին քարտուղար Ա. Միլչակովն է: Անձնական հուշերի, արխիվային նյութերի հիման վրա հեղինակը ճշմարտացի ներկայացրել է այն գործերը, որ կատարել է այդ բյուրեղյա բոլշևիկը, աներեր լենինյանը՝ կոմունիստական շինարարության մոտ երկու տասնամյակներում:

Սմոլենսկի մարզի Ռոգնեդինո գյուղի քահանայի որդի Նիկոլայի նախաձեռնությամբ 1918 թվականին տեղում կազմակերպվում է կոմերիտական բջիջ: Մեկ տարի հետո տասնյոթ տարեկան Նիկոլայն ընտրվում է Սմոլենսկի Նահանգաքաղաքային երիտասարդության միության քարտուղար:

ՌԿԵՄ Կենտկոմի որոշմամբ Ն. Չապլինը 1920 թվականին փոխադրվում է Տյումեն և ընտրվում կոմերիտմիության գավառային կոմիտեի քարտուղար: Այնուհետև աշխատանքի է անցնում նահանգային կոմիտեում, ուր Իվան Շոստինի հետ մեկտեղ զգալիորեն խթանում, առաջ է տանում կոմերիտական գործը:

Քսանական թվականների սկզբներին Չապլինը Անդրկովկասում է, ՀամԼԿԵՄ Անդրերկրկոմի քարտուղարը: Նա միշտ ջերմությամբ է հիշել այդ տարիները, իր աշխատակցությունը Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս. Մ. Կիրովի հետ՝ Մ. Օրախելաշվիլու, Ալ. Մյասնիկյանի համակողմանի օգնությամբ: Կոմերիտական աշխատանքային ընկերների՝ Վ. Դարախվելիձեի, Հ. Վարդանյանի, Տ. Ռախմանովի հետ մեկտեղ նա երիտասարդությանը դաստիարակել է լենինյան պատգամներին հավատարիմ մնալու ոգով: 1924 թվականի ապրիլին Ն. Չապլինն ընտրվում է ՀամԼԿԵՄ Կենտկոմի գլխավոր քարտուղար:

Ն. Չապլինը եղել է հմայիչ հրապարակախոս: Իր բեղմնավոր գործունեության ժամանակաշրջանում նա թողել է գրական նշանակալի ժառանգություն: Նրա գրչին են պատկանում՝ Կոմերիտմիությունը սոցիալիստական շինարարության ժամանակաշրջանում, Կոմերիտմիության լենինյան ուղին, Ընդդեմ կոմերիտմիության մեջ օպորտունիստական վտանգի և այլ գրքույկներ:

Շուտով նա դառնում է ՀամԿ(բ)Կ Անդրերկրկոմի երկրորդ քարտուղարը, այնուհետև անցնում տնտեսական պատասխանատու աշխատանքի: Ամենուրեք այդ կենսուրախ, մասսաների կողմից սիրված բյուրեղյա բոլշևիկը դրսևորել է իր նվիրվածությունը կոմունիզմի վեհ գործին:

***

Ուսման ճարավը Գանի Մուրատբաևին Կազանլինսկից հասցնում է Տաշքենդ: Այստեղ նա ընդունվում է կոմերիտմիության շարքերը և ակտիվ մասնակցում տեղի մանկավարժական ուսումնարանի կոմերիտբջջի կազմակերպմանը:

Գ. Մուրատբաևը կապ է հաստատում թուրքեստանյան ռազմաճակատի քաղվարչության հետ: Ռազմահեղափոխական խորհրդի անդամ Վ. Վ. Կույբիշևի հանձնարարությամբ նա ակտիվ մասնակցում է տեղական բնակչության շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքին:

Ներգրավվելով ակտիվ քաղաքական գործունեության ոլորտը՝ Գանին դուրս է գալիս ուսումնարանից, նշանավոր գրող, կարմիր բանակի ականավոր քաղաքական գործիչ Դ. Ֆուրմանովի հանձնարարությամբ գնում է Սեմիրեչիե և տեղի կոմերիտական կազմակերպիչներ Ճ. Յարմուխամեդովի, Դ. Բենդյուկովի հետ մասնակցում հակահեղափոխական խռովության ճնշմանը:

Սպիտակգվարդիականների ու բասմաչների դեմ մղվող պայքարում կոփվում է Գ. Մուրատբաևը, դառնում փորձված կոմերիտական գործիչ, քաղաքական հմուտ աշխատող: Թուրքեստանի կոմերիտմիության Կենտկոմը Գանին նշանակում է Կիրգիզական և Ղազախական երիտասարդության բյուրոյի ղեկավար: 1922 թվականին, երբ ստեղծվում է ՌԿԵՄ Միջինասիական բյուրո, որը միավորում է Թուրքեստանի, Խիվայի, Բուխարայի միութենական կազմակերպությունները, ՌԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար Վ. Վ. Կույբիշևի առաջարկությամբ Գ. Մուրատբաևն ընտրվում է բյուրոյի անդամ:

... Գանի Մուրատբաևը մեկն էր նրանցից,— գրում է ակնարկի հեղինակ Ս. Ասկյարովը,— որն իր քաղաքացիական պարտքն էր համարում բացատրել լենինյան գաղափարների վեհությունն Արևելքի բազմամիլիոն հասարակ մարդկանց... Գանին գործունյա էր, անխոնջ, չէր հանգստանում, իր օրինակով ոգեշնչում էր մյուսներին:

Գ. Մուրատբաևի ղեկավարությամբ կոմերիտական շարժումը ծավալվում է և Թուրքեստանում, Ուզբեկստանի տափաստաններում:

Տարիների տառապալի կյանքը, ցրտաշունչ ու զրկանքներով լի պայքարի օրերը քայքայում են երիտասարդ Գանիի առողջությունը: Առողջարանում բուժվելիս նա տեղեկանում է, որ ինքը պարգևատրվել է ԽՍՍՀ-ի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով: Կառավարական բարձր պարգևը ավելի է ոգեշնչում Գ. Մուրատբաևին, և նա կարողանում է հաղթահարել հիվանդությունը, կրկին ոտքի կանգնել ու շարունակել հեղափոխական գործունեությունը, այս անգամ արդեն երիտկոմինտերնի գործկոմում, որպես արևելյան բաժնի վարիչ...: Սակայն հիվանդությունն (թոքախտ) անողոք էր: Սովետական Արևելքի լավագույն բոլշևիկներից մեկը վախճանվեց քսաներեք գարուն չբոլորած:

***

Տասը տարեկան էր Սաշան, երբ ոտք դրեց գործարան, ճաշակեց պրոլետարի կյանքի դառնությունը:

... Բոլշևիկների գլխավորությամբ Մոսկվայում սկսված հեղափոխության օրերին,— գրում է ակնարկի հեղինակը,— Կոսարևին կարելի էր հանդիպել և՛ ցուցարարների շարքերում, և՛ բարիկադների վրա, և՛ Բլագուշենյան շրջանի հեղափոխական կոմիտեում...

Թշնամու կրակե օղակի մեջ է Պետրոգրադը: Վտանգ է սպառնում հեղափոխության օրրանին: Մոսկվայի մի խումբ երիտասարդների հետ այնտեղ է և Սաշան, կարմիրգվարդիականների շարքերում մարտնչում է հակահեղափոխականների դեմ: Արյունալի կռիվներում նա վիրավորվում է: Ապաքինվելուց հետո երեք ամիս սովորում է Պետրոգրադի կոմիտեին կից քաղդպրոցի դասընթացներում, վերադառնում Մոսկվա, ընտրվում կոմերիտմիության Բաումանի շրջկոմի քարտուղար:

ՀամԼԿԵՄ Կենտկոմի երաշխավորությամբ Ա. Կոսարևը 1924 թվականի նոյեմբերին ընտրվում է կոմերիտմիության Պենզայի նահանգային կոմիտեի քարտուղար: Նա վայելում էր երիտասարդության համակրանքն ու սերը: Ա. Կոսարևը պատասխանատու աշխատանք է կատարում ՀամԼԿԵՄ Կենտկոմում, 1926 թ. ընտրվում կոմերիտմիության Մոսկվայի կոմիտեի քարտուղար:

Գործերով խիստ ծանրաբեռն, Ա. Կոսարևը ժամանակ է գտնում զբաղվելու ինքնակրթությամբ, հարստացնելու իր քաղաքական-տեսական գիտելիքները, լայնացնելու մտահորիզոնը... Իր հռետորական բոցաշունչ խոսքով նա կարողանում էր ոգևորել երիտասարդությանը:

1929 թվականին Ա. Կոսարևն ընտրվում է ՀամԼԿԵՄ Կենտկոմի գլխավոր քարտուղար: Այդ զուգադիպում է առաջին հնգամյա պլանի կենսագործման տարիներին: Կենտկոմը վերածվում է շինարարական մարտական շտաբի: Ամենուրեք կազմակերպվում են երիտասարդական բրիգադաներ, որոնք մեծ խանդավառությամբ մեկնում են էլեկտրակայանների ու ջրանցքների կառուցման վայրերը, Մագնիտոգորսկի, Գորկու—Ամուրի, Կոմսոմոլսկի շինարարական հրապարակները:

Եռանդուն, անխոնջ աշխատանքի համար Ա. Կոսարևը պարգևատրվում է Լենինի շքանշանով:

Մոսկվայում, մի առիթով, Սաշան հանդիպում է հին բոլշևիկ Վ. Նանեյշվիլու դստերը՝ Մարուսյային: Ջահել աղջիկը հմայիչ էր, գերող: Հեռավորությունը, ժամանակը չեն մարում նրա սրտում բորբոքված զգացմունքը, որը փոխադարձ էր: Նրանք ամուսնանում են, և արժանավոր զույգն ստեղծում է սիրով լի, ջերմ, օրինակելի ընտանիք:

***

Հետաքրքրությամբ է կարդացվում Յու. Կոսաչի և Ա. Իգնատենկոյի ակնարկը Ուկրաինայի կոմերիտմիության ականավոր գործիչ Ալեքսանդր Բոյչենկոյի մասին:

Կիևի երկաթուղային երկրորդ կայարանի արհեստանոցի մոնտյորի օգնական Սաշկոն տասնյոթ տարեկանում ընդունվում է կոմերիտմիության շարքերը, ընտրվում բջջի քարտուղար, ապա՝ շրջկոմի քարտուղար: Հետագայում, իր հուշերում Բոյչենկոն գրում է.

—... Դա ամենաերջանիկ օրն էր իմ կյանքի տասնվեց տարվա ընթացքում: Այդ ժամանակ շատ դժվար էր: Քաղաքացիական պատերազմ էր, բլոկադա, սով, ցուրտ, համաճարակ, ընտիպված էինք շատ աշխատել, մասնակցել շաբաթօրյակներին...

1926 թվականին Ա. Բոյչենկոն ընտրվում է կոմերիտմիության Կիևի օկրուգկոմի քարտուղար, իսկ երեք տարի հետո՝ ՈւկԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար: Նրա տարերքը կենդանի, կազմակերպչական աշխատանքն էր. մշտապես երիտասարդության հետ էր նա՝ և՛ Դոնեցկի ավազանում, և՛ Դնեպրոգէսի կառուցում, և՛ գյուղական շրջաններում, և՛ մետաղաձուլական գործարաններում... Կոմերիտականները, հանձին Բոյչենկոյի, տեսնում էին հմուտ ու զգայուն ղեկավարի:

... Ցստով նա ծանր հիվանդանում, գամվում է անկողնուն: Բայց նա հոգեպես իրեն առողջ է զգում, միշտ անբաժան կոմունիզմ կառուցողներից: Ընկերներին նա միշտ ասում է.

—... Մենք պետք է ապրենք եռանդուն կյանքով, հանուն հայրենիքի, կուսակցության, ապրենք որպես կոմունիզմ կառուցողների բանակի անձնվեր մարտիկներ:

Ա. Բոյչենկոն հավատարիմ մնաց իր խոսքին: Իր ամենասիրած հերոսի՝ Պավել Կորչագինի նման գրիչ վերցրեց, անկողնում կամ քառանիվ սայլակի վրա, կնոջ՝ Ալեքսանդրայի օգնությամբ գրեց, հաջորդ սերունդներին թողեց Երիտասարդություն պատմվածքը, որտեղ վառ կերպով արտացոլել է Սովետական Ուկրաինայի երիտասարդության հերոսական սխրանքները, իր աշխատանքային տարիների տպավորությունները:

***

Մեզ թվում է, հրատարակչությունը, նման գրքեր հրապարակելիս, երբեք չպետք է անտեսի այն հանգամանքը, որ «Նշանավոր մարդկանց կյանքը» մատենաշարը, որի նախաձեռնողը Մաքսիմ Գորկին էր, ավելի քան պարտավորեցնում է բարձր որակով լույս ընծայել դրանք, որի համար հրատարակչությունն ունի համապատասխան ուժեր:

Մինչդեռ հայերեն հրապարակված այս գրքում, ցավոք, առկա են թարգմանական սխալներ, աղավաղված նախադասություններ ու արտահայտություններ, որոնք ստվերարկում, բայց չեն նսեմացնում ժողովածուի դաստիարակչական նշանակությունը:

Կոմերիտմիության առաջամարտիկները կենսագրական ակնարկները ո՛չ միայն առանձին գործիչների կյանքն ու աշխատանքը պատկերող դրվագներ են, այլև սաք սովետական երիտասարդության սխրանքների մասին: Կարդալով այս գիրքը՝ հին սերնդի կոմերիտականները վերապրում են իրենց անցյալի բուռն օրերը, իսկ երիտասարդությունը տոգորվում է կոմունիստական շինարարությանն ակտիվ մասնակցելու ոգով:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



գացման մարքս-լենինյան էտապը Հայաստանում (1900—1973)», բաղկացած է երկու բաժիններից: Առաջին բաժնում տրված է Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի... գեղագիտական հայացքների ընդհանուր բնութագիրը, որոնք զգալի դեր են խաղացել Հայաստանում մարքսիստական գեղագիտության ձևավորման գործում, արվեստի կուսակցականության սկզբունքի և էության մշակման ոլորտում:

Երկրորդ բաժնում ցույց է տրվում, որ Սովետական Հայաստանում գեղագիտական մտքի զարգացման էական առանձնահատկությունը մարքս-լենինյան գեղագիտության տարածումից դրա տեսական մշակմանն անցնելն է (էջ 260): Հեղինակներն առաջարկում են Սովետական Հայաստանի գեղագիտական մտքի հետևյալ նախնական պարբերացման ուրվագիծը՝ 1. 20—30-ական թվականները, 2. Մեծ հայրենական պատերազմի տարիները (1941—1945) և 3. Հետպատերազմական տարիները (էջ 261): Մեզ թվում է, թե ավելի նպատակահարմար է այս շրջանը բաժանել երկու հիմնական փուլի. 1. 1920-ից մինչև 1940-ական թվականները, երբ գեղագիտության հարցերը շոշափվում և մշակվում էին գրականության և արվեստի հարցերի հետ և 2. 1940-ական թվականներից մինչև մեր օրերը, երբ ուղղակի հետազոտության առարկա են դառնում գեղագիտության տեսության և պատմության պրոբլեմները: Այս փուլն իր կազմավորման և զարգացման ընթացքում է: Այստեղ թվարկվում են նաև հայ գեղագետների հիմնական աշխատությունները, որոնք գրվել են այս ժամանակամիջոցում: Հատուկ ուշադրության են արժանացել Արշակ Ադամյանի գործունեությունն ու ստեղծագործությունը:

Գիրքն ամբողջությամբ թողնում է լավ տպավորություն՝ իր լեզվական կուլտուրայով, գիտական ապարատով, ոճի և մեթոդաբանական սկզբունքների հետևողականությամբ, շարադրանքի տրամաբանական միասնականությամբ, հնարավորությունների սահմաններում գեղագիտության պատմությունը հասարակության սոցիալ-տնտեսական փոփոխությունների հետ կապելու իր միտումով:

Անտարակույս, գրախոսվող ժողովածուն արժեքավոր ներդրում է հայ ժողովրդի գեղագիտական մտքի պատմության լուսաբանման գործում:

Կ. Ա. ՄԻՐՈՒՄՅԱՆ

---



Адрес редакции: 375033. Ереван 33. Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04676 Պատվեր 1069 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.900 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 2/VI—1978 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎ— Մալայա Զեմլյա: *«Հայաստան» հրատ., 1978:*

ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎ— Վերածնունդ: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ— Պետական կառավարման լենինյան սկզբունքները: *«Հայաստան» հրատ., 1978:*

Շ. ՊՈՂՈՍՅԱՆ— Լենինյան վերահսկողությունը գործողության մեջ: *«Հայաստան» հրատ., 1978:*

Հ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— Աշխատանքի լենինյան ոճը: *«Հայաստան» հրատ., 1978:*

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակությունների մատենագիտություն: *1969—1973 թթ. Ե., ԳԱ հրատ., 1978:*

Հ. ԳՅՈՒԼԻՔԵՎԽՅԱՆ— Ընտրանի: *Ե., «Սովետական գրող» հրատ., 1978:*

Ինժեներական աշխատանքը սոցիալիստական հասարակության մեջ: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Գիտատեխնիկական առաջադիմությունը գյուղատնտեսության մեջ: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ռ. ԵԶԵԿՅԱՆ— Սկզբնական կուսկազմակերպությունները և արդյունաբերության ղեկավարումը *(1970—1976 թթ.): «Հայաստան» հրատ., 1978:*

Օ. ԱՂԱԽԱՆՅԱՆ— Պամիրում: *Դեսբոտանիկի նոթեր: «Հայաստան» հրատ., 1978:*

**В. И. ЛЕНИН — Избранные произведения.** В 3-х томах. Том. I. II. III. М., Политиздат, 1978.

**В. НОВИКОВ — Ленин и деятельность искровских групп в России. 1900—1903.** М., «Мысль», 1978.

**М. УЛЬЯНОВА—О Владимире Ильиче Ленине в семье Ульяновых.** М., Политиздат, 1978.

**Л. И. БРЕЖНЕВ — Советские профсоюзы в условиях развитого социализма.** М., Политиздат, 1978.

**А. ВАХРАМЕЕВ — Рост могущества и влияния мира социализма— важнейший фактор социального прогресса человечества.** М., «Знание», 1978.

**В. БУДНИКОВ — Большевистская печать — важнейшая идеологическое оружие партии.** М., «Мысль», 1978.

**А. КОВАЛЕВ — Коллектив и социально-психологические проблемы руководства.** Изд. второе, доп. М., Политиздат, 1978.

**Комитет народного контроля и его актив,** М., «Колос», 1978.

**В. ЛОСЬ — Человек и природа.** Социально-философские аспекты экологических проблем. М., Политиздат, 1978.

**Э. НОВИКОВА, В. ЯЗЫКОВА и З. ЯНКОВА — Женщина. Труд. Семья.** Социологический очерк. М., Профиздат, 1978.

**Эффективность научно-технического прогресса.** Вопросы управления. М., «Наука», 1978.

**В. ДИДОД — Экономия и бережливость — дело каждого.** М., Профиздат, 1978.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՏԵՐՐՈՖԵՆԸ՝ ՎԻՐՈՒՍԻ ԴԵՄ

*Օրջոնիկիձեի անվան քիմիադեղագործական համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները հայտնագործել են քիմիական մի միացություն (տերրոֆեն), որն ակտիվ հակազդում է գրիպի վերուսին: Տերրոֆենի հակավիրուսային ակտիվությունն ու բուժական արդյունավետությունն ստուգված են Հելմհոլցի անվան աչքի հիվանդությունների գիտահետազոտական ինստիտուտում, Մոսկվայի № 1, Լենինգրադի, Օդեսայի և Կրասնոդարի բժշկական ինստիտուտների ակնաբուժական կլինիկաներում, ուր բուժում են աչքի վիրուսային հիվանդությունները: Հաստատվել է նաև դեղանյութի արդյունավետ ներգործությունը մաշկի, բերանի խոռոչի լորձաթաղանթի վրա, վիրուսային հիվանդությունների ժամանակ: Առավել ակնհայտ է տերրոֆենի բուժիչ հատկությունը գրիպի դեմ: Այն կանխարգելում է $A_2$ և B վիրուսների հարուցած գրիպը:*

## ԲՈՒԺԻՉ ԿԵՐԱՏԵՍԱԿ

*Խտացրած կերով սնվող անասունների մարսողական համակարգը հաճախ է խանգարվում: Չնայած դրան, բուլղար գիտնականներն առաջարկում են չհրաժարվել նման կերից, որն ընդհանրապես ավելացնում է անասունների, հատկապես հորթերի քաշը: Նրանք խորհուրդ են տալիս միայն անասնակերի բաղադրությանն ավելացնել սնդարար խառնուրդ, որի ռեցեպտը պատենտավորվել է Ֆրանսիայում, Իսպանիայում, Իրանում և այլուր: Գաղտնիքը պարզ է. մատղաշին կերակրում են եգիպտացորենի աղացած կոթերի և ցողունների, ցորենի մանրացրած ծղոտի խառնուրդով: Դա աչքի է ընկնում ցելյուլոզայի առատ պարունակությամբ և, չնայած համարվում է կոշտ կեր, սակայն կարգավորում է որոճող անասունների մարսողությունը:*

## ՊՈԼԻՄԵՐԸ՝ ԿԱՌԼԻՆԻ ՀԵՏ

*Պլաստմասսաներից ամենաշատ մնացուկներ ստացվում են պոլիվինիլքլորից: Այրել դրանք՝ վտանգավոր է թունավոր գոլյացության պատճառով, իսկ հողում թաղել հարմար չէ:*

*Ճապոնացի ինժեներները գտել են հին պլաստմասսաների օգտակար կիրառման եղանակ: Պոլիվինիլքլորի թափոններից պատրաստվել են հատակապատման սալիկներ՝ քիմիական արտադրության մեջ օգտագործելու նպատակով, որոնք ամուր են, հրակայուն, չեն քայքայվում թթուներից ու հիմքերից: Սալիկներն ստացվում են հետևյալ կերպ. պոլիմերային թափոնները նախ փոշիացվում են, խառնվում կառլինին, իսկ հետո մամլվում տաքացված մետաղյա կաղապարներում:*

## ԽՆՁՈՐԻ ՄԵՔԵՆԱՅԱՑՎԱԾ ԲԵՐՔԱՀԱՎԱՔ

*Սարատովի գյուղատնտեսության մեքենայացման ինստիտուտում պրոֆեսոր Ա. Ուլյանովի ղեկավարությամբ ուսանողներն ու ասպիրանտները պատրաստել են խնձոր հավաքող յուրատիպ մեքենա: Հայտնի է, որ քամու ուժից թափվում են պտուղները: Օգտվելով այդ սկզբունքից, նրանք շասսիի վրա տեղադրել են հզոր հողհարիչ, որի լայն բացվածքից ուժգնորեն օդ է մղվում: Հոսանքի ուղղվածությունն ինքնին բավականաչափ արդյունավետ չէ դեռ. այն միայն թեքում է ծառի սաղարթամասը, և ոչ բոլոր խնձորներն են թափվում: Գյուտարարները հոսքը դարձրին ընդհատումներով, և ճյուղերը տարուբերվելով՝ սկսեցին թափել ավելի շատ խնձորներ: Նման պնևմատիկ մեքենա կարելի է պատրաստել նույնիսկ կոլտնտեսային արհեստանոցներում:*

*Արդյունաբերական մշակման ենթակա խնձորների հավաքիչը արդեն պատրաստ է: Այն բարդ չէ: Անվավոր տրակտորի առջևում պտտվում է ասեղներով թմբուկը: Ասեղները ծակծկում են թափված խնձորները, թմբուկը դրանք բարձրացնում է, ապա սանդերքը հավաքում է պտուղները և առաքում ընդունման բունկեր:*